ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

# ՓԱՐԻԶԻ ՔՈՄԻՒՆԸ, ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

## ՄԱՐՔՍԻՍԹԱԿԱՆ-ԱՆԱՐՇԻՍԹԱԿԱՆ ԸՆԹԵՐՑՈՒՄ ՄԸ

(Փարիզի Քոմիւնի 145-ամեակին առիթով)

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Դ.

ԳԱՀԻՐԷ
2016

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

# ՓԱՐԻԶԻ ՔՈՄԻՒՆԸ, ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՀԱՅՈՑ ՅԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

## ՄԱՐՔՍԻՍԹԱԿԱՆ-ԱՆԱՐՇԻՍԹԱԿԱՆ ԸՆԹԵՐՑՈՒՄ ՄԸ

(Փարիզի Քոմիւնի 145-ամեակին առիթով)

*ՁԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ Դ.

ԳԱՀԻՐԷ
2016

Ես աւելի իմաստուն եմ քան այդ մարդը։ Հաւանաբար մեր երկուքէն ոչ մէկը որեւէ արժանի բան գիտէ, բայց ան կը կարծէ թէ գիտէ մինչդեռ չի գիտեր, իսկ ես չեմ գիտեր եւ չեմ կարծեր որ գիտեմ։ Հետեւաբար, ամէն գնով կը թուի թէ այս փոքրիկ առումով ես աւելի իմաստուն եմ, քանի որ չեմ կարծեր թէ գիտեմ ինչ որ չեմ գիտեր։

**ՍՈԿՐԱՏԷՍ**

(Plato, ‘Apology’, *The Dialogues of Plato*, Volume 1, translated and comment by R. E. Allen, New Haven and London: Yale University Press, 1984, p. 84)

Ես խոստումներ չեմ կատարեր։ Կը դիմեմ ուխտի։ Կը նշանակէ՝ թէ ես կը վախնամ վստահութենէն, այնպէս ինչպէս դուն կը վախնաս անվստահութենէն։ Կը նշանակէ՝ որ անվստահութենէն զատ ոչինչ կայ վստահ։ Եթէ կաշկանդեմ ապագան՝ կաշկանդած կ'ըլլամ իմ կամքս։ Եթէ կաշկանդեմ կամքս՝ հեղձամահ ըրած կ'ըլլամ արարչութիւնը։

**ՃՈՐՃ ՊԵՌՆԱՐՏ ՇՕՈՒ**

(Bernard Shaw, *Back to Methuselah*, New York: Brentanos, 1921, p. 19)

Այնքան ժամանակ որ մաթեմաթիքի առաջադրութիւնները վերաբերին իրականութեան՝ չեն կրնար վստահ ըլլալ, իսկ այնքան ժամանակ որ անոնք վստահ են՝ չեն կրնար վերաբերիլ իրականութեան։

**ԱԼՊԵՐԹ ԱՅՆՇԹԱՅՆ**

(Albert Einstein, ‘Geometry and Experience’, *The Collected Papers of Albert Einstein*, Volume 7, Princenton and Oxford: Princenton University Press, 2002, p. 233)

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

Մարդկային կենդանի կենսագրութեան մէջ ոչինչ կայ վերջնական, վճռական, բացարձակ ու անթափանցելի։ Ասկէ պատեհապաշտները պիտի ծագեցընեն հետեւեալ հարցումը՝ կասկածելի՞ է ուրեմն հայոց ցեղասպանութիւնը։ Հարցադրումը պարզապէս անհասկնալի է, քանի որ նմանապէս կարելի է հարցնել՝ կասկածելի՞ են արդեօք Խորենացին, Շեքսփիրը, Պեթհովէնը, Կոմիտասը, կասկածելի՞ են արդեօք Աւարայրի եւ Սարդարապատի ճակատամարտները կամ Ֆրանսական յեղափոխութիւնը։

Բայց, իրապէս, ինչպէ՞ս կրնանք «փաստել» այս բոլոր անձերուն եւ գործողութիւններուն գոյութիւնները։ Շատ դիւրին է բարձրաձայնել, օրինակ, որ Աւարայրի ճակատամարտը Եղիշէի հնարածն է՝ փոխան Մամիկոնեաններու վարձատրութեան (այսօրուան բառապաշարով՝ կաշառքին)։ Քիչ մը աւելի դժուար, բայց անկարելի չէ «փաստել» որ Կոմիտաս հայերուն կողմէ ստեղծուած զեղծարարութիւն մըն է, իր ձեռագիրները դիտաւորեալ կեղծուած են հայերուն կողմէ, իր գործերը անծանօթի մը կողմէ այստեղէն-այնտեղէն ընդօրինակուած բանագողութիւններ են՝ մանաւանդ ժողովրդական եղանակներէ, եւ այլն, եւ այլն։ Եւ եթէ Կոմիտասը հերքողը (անձ, կազմակերպութիւն, պետութիւն) իր տրամադրութեան տակ ունենայ լրատուական հզօր մեքենայ եւ հանրային կարծիքին վրայ իշխելու կարողութիւն, զայն իրապէս կրնայ վերածել մտացածին գոյութեան։ Այս թատերագրութիւնը, անշուշտ, որեւէ ըմբռնումէ եւ հասողութենէ վեր է, բայց, հաւատացէ՛ք, կարելի է։ Ճիշդ այնպէս, ինչպէս կարելի եղած է մէկ ու կէս միլիոն հայերու ծրագրուած սպանութեան հերքումը՝ ուժային խումբերու կողմէ։ Եթէ Կոմիտասի՝ *մէկ* անձի մը, գոյութեան հերքումը իրապէս որեւէ ըմբռնումէ վեր է, *մէկ ու կէս միլիոն* անձերու ոչնչացումին հերքումը դաղրած է ըմբռնումէ վեր ըլլալէ։ Նոյնիսկ մենք՝ հայերս, մեծ ջանք թափելով հերքել այս հերքումը, հետեւաբար՝ ցեղասպանութեան հերքում հասկացողութիւնը անընդհատ կրկնելով, հերքումին գաղափարը դադրեցուցած ենք ըմբռնումէ վեր դասելէ։

Մանաւանդ, ընդունելով ՄԱԿ-ի ցեղասպանական հռչակագիրը՝ կազմուած ընդամէնը հինգ (*միայն* հինգ) կէտերէ, կը փորձենք հայկական ցեղասպանութիւնը «փաստել»-ու համար (կամ անոր հերքումը հերքելու համար)՝ այդ ահռելի փորձառութիւնը նսեմացնելով, կմախքայնացնելով եւ ճղճիմացնելով տեղաւորել հինգ (*միայն* հինգ) նախասահմանեալ կէտերու մէջ։ Հինգ կէտ եւ ոչ թէ վեց, հարիւր, հազար կամ անհաշուելի։ Եւ ճիշդ այս է որ կը կոչուի վճռականութիւն։ Վճռականութիւն ո՛չ թէ որովհետեւ ցեղասպանութիւնը գործուած է եւ կը պնդենք որ ան գործուած է, այլ որովհետեւ այդ անսահմանելին[1] կ՚ուզենք սահմանել հինգ հակիրճ, չափագրուած ու կտրուկ կէտերու ընդմէջէն։ Ցեղասպանութիւնը կը դառնայ վճռական։ Մինչդեռ ցեղասպանութիւն մը՝ ժողովուրդի մը կենդանի փորձառութիւնը, անկարելի ու անհնար է մեկնաբանել հինգ կէտերով, ոչ ալ կէտեր աւելցնելով։ Ցեղասպանութեան անսահման ենթակայականութիւնը վերածելով առարկայական հինգ կէտերու, որոշած կ՚ըլլանք անոր վճռականութիւնը։

Աւարայր, Սարդարապատ, Հայոց Ցեղասպանութիւն, Խորենացի, Կոմիտաս շրջանցած են ըլլալ-չըլլալու «գիտական» սահմանները եւ դարձած համընդհանուր ու համակեցական մտածողութեան մը բաղադրիչները, իրենց իմաստները ստանալով գոյապաշտական (existential), գոյաբանական (ontological), բներեւութապաշտական (phenomenological), մարդաբանական (anthropological), մշակութաբանական (culturological), փիլիսոփայական փոխկապակից կեցութիւններէ եւ ոլորտներէ։ Ցեղասպանութեան պարագային հինգ կէտերը կը սպաննեն այս իմաստային ոլորտները, կը խզեն անոնց փոխկապակցութիւնը։ Իսկ եթէ այս բոլորը (գոյապաշտութիւն, գոյաբանութիւն եւ միւսները) շատոնց արդէն կը հանդիսանան հայոց ցեղասպանութեան մեկնաբանութիւններուն եւ վերլուծութիւններուն հիմքը, եթէ այս բոլորին միջոցով արտայայտուած իմաստները շատոնց արդէն դարձած են կարելիութիւններ, ուրեմն արդէն ինքնաբերաբար «փաստուած» է հայոց ցեղասպանութիւնը։ Ցեղասպանութեան «փաստ»-ը կը գտնուի այս իմաստներու *կարելիութեան* մէջ։ Եթէ այս իմաստները կարելիութիւններ են, ուրեմն ցեղասպանական իրադարձութիւնը իրականութիւն մըն է (բնականաբար մեծ վերապահութեամբ գործածելով «իրականութիւն» բառը՝ զայն չշփոթելու համար անոր տրուած առօրեայ գռեհկացուած ու իմաստազրկուած իմաստին հետ)։

[1] Ցեղասպանութեան անսահմանելիութեան մասին տե՛ս՝ Marc Nichanian, ‘Catastrophic Mourning’, *Loss: The Politics of Mourning*, edited by David L. Eng and David Kazanjian, Berkeley, Los Angeles, London: University of California Press, 2003։

Ի՞նչ արժէք կը ներկայացնէ ուշադրութիւն դարձնել ուժային դիրքերէ հրահրուած «հերքում»-ներուն վրայ։ Հերքումէն կարելի է վախնալ՝ եթէ ան կարողանայ իր մէջ ընդունիլ յիշեալ իմաստային շերտաւորումները։ Բայց քանի որ հերքումը կեղծ իրականութեան մը պատկերումն (representation) է, ան չէ մտած, եւ չի կրնար մտնել այդ իմաստային շերտերէն ներս։ Վտանգն այն է, որ հերքումին հերքումով, հայերը եւս ներդրում կրնան ունենալ ցեղասպանութեան ապաիմաստաւորումին։ Հերքումին հերքումը նոյնպէս կը սպաննէ յիշեալ իմաստները, հարցը վերադարձնելով զէռոյի դրութեան։ Եւ տակաւին կրնայ յառաջանալ հերքումի (թրքական կողմ) հերքումին (հայկական կողմ) հերքումը (վերստին թրքական կողմ)...։

Հինգ կէտային ցեղասպանական վճռականութեան անյարիր է գրութիւնս, եւ այս վճռականութիւնն է զոր կը հերքուի այստեղ։ Փոխարէնը, ցեղասպանութիւնը տարբեր՝ ոչ այնքան ընդունուած տեսանկիւններէ մեկնաբանելու փորձ մըն է ասիկա, փորձ մը՝ որ բաց է վերանայումներու եւ վերապատշաճեցումներու առջեւ, փորձ մը՝ որուն հերքումի պարագային պիտի թելադրուի առաջարկել փոխ- կամ հակա- առարկութիւններ, հեռու գաղափարախօսական ամբողջատիրութիւններէ։

Փորձիս հիմքը ինքնին ցեղասպանութեան ուժային-դրամատիրական դիրքերու քննադատութիւնն է՝ դիտուած դասական մարքսիսթական տեսանկիւններէ, ինչպէս նաեւ ցեղասպանութեան իմաստներուն, հետեւանքներուն եւ պայմանական լուծումներուն դիտարկումն է հակաուժային ու անարշիսթական դիրքերէ, հակաուժային՝ ոչ միայն հայկական (քանի որ ուժի միակողմանի թօթափումը վտանգաւոր անկարելիութիւն մըն է), այլ ամբողջ աշխարհի կեցութեան համակարգի առումով։ Իսկ այս տեսակ ոչ-ուժային, հակաուժային, ուրեմն՝ համակեցական ու անարշիսթական նմոյշը պիտի ընդունիմ Փարիզի Քոմիւնը, ոչ իբրեւ վերջնական ու միակ մտատիպար, այլ ընդամէնը իբրեւ ինքնակազմակերպութեան նշանակալի փորձ, որմէ կարելի է մեծապէս օգտուիլ։ Գրութիւնս զերծ պիտի չըլլայ ուժային համակարգներու հանդէպ սուր քննադատութենէ։ Ան ուժային վճռականութեան հակաթէզ մըն է։

Վերջապէս, գրութիւնս չի հերքեր ուրիշ գաղափարներ, ոչ ալ կը հաստատէ իր գաղափարները։

## ՓԱՐԻԶԻ ՔՈՄԻՒՆԸ ԵՒ ԻՐ ՀԱՄԱՅՆՔԱՅՆՈՒԹԻՒՆԸ

1871 Մարտ 18-ին, Փարիզի որոշ ռազմական բաժանմունքներ կը փորձեն գրաւել Ազգային Պաշտպանութեան (ֆրանսերէն՝ La garde nationale) մօտ պահուող քանի մը թնդանօթ։ Ասիկա շուտով կը վերածուի Փարիզի աշխատաւորական թաղամասերու բնակիչներու ինքնաբուխ զօրաշարժին, որուն դիմաց զօրքը կը նահանջէ եւ կառավարութիւնը կը փախչի Վերսայ։ Կը ծնի Փարիզի Քոմիւնը։

Մայիս 21-ին, Վերսայի զօրքը, կամ ֆրանսական բանակը, դաժան յարձակում կը սկսի Փարիզի Քոմիւնի դէմ, զայն վերջնականապէս ջախջախելով Մայիս 28-ին։

Ընդամէնը 72 օր տեւած Փարիզի Քոմիւնը կը մնայ արդի պատմութեան բացառիկ էջերէն մէկը իբրեւ բարձր մակարդակով ինքնակազմակերպուած համայնք եւ իբրեւ ժողովուրդի իրական մասնակցութեան նմոյշ մեծ ու փոքր որոշումներու կայացումին եւ գործադրութեան մէջ։

Քոմիւն կը նշանակէ համայնք։ Անուանումը բնաւ պատահական չէր։

Քոմիւնի ժամանակակից մը՝ Վիլիէ տը Լ’իլ Ատամ, նկարագրած է Քոմիւնի խաղաղ ու աշխոյժ իրավիճակը. «Մարդիկ կը մտնեն, կը մեկնին, կը շրջագային, կը հաւաքուին։ Փարիզեան երեխաներու խնդուքը կը միջամտէ քաղաքական վիճաբանութիւնները։ Մօտեցիր խումբերուն եւ մտիկ ըրէ։ Ամբողջ ժողովուրդ մը զբաղուած է խորունկ խնդիրներու արծարծումով։ Առաջին անգամ ըլլալով կարելի է լսել աշխատաւորները՝ որոնք իրենց կարծիքները կը փոխանակեն ցարդ փիլիսոփաներուն բնազաւառը հանդիսացող հարցերու վերաբերեալ։ Վերահսկողութեան ոչ մէկ հետք կը գտնուի, ոչ մէկ ոստիկան կը կանգնեցնէ անցորդներուն անցումները։ Ապահովութիւնը կատարեալ է։»[1]

Նկարիչ Կիւսթաւ Քորպէ՝ որ ապրած է ամբողջ Քոմիւնի փորձառութիւնը, Փարիզէն իր ծնողքին ուղարկած 1871 Ապրիլ 30 թուակիր նամակին մէջ կը գրէ. «Իրական դրախտ մըն է Փարիզը։ Ոչ մէկ ոստիկան, ոչ մէկ յիմարութիւն, ոչ մէկ տեսակ հարստահարութիւն, ոչ մէկ բանավէճ։ Փարիզ միս մինակ կ’ընթանայ սայլակի նման։ Պէտք է միշտ այսպէս մնալ։ Մէկ բառով, իրական բերկրանք մըն

[1] Villiers de l’Isle Adam-ի վկայութիւնը քաղած եմ հետեւեալ գիրքէն. Alain Badiou, *Polemics*, translated and with an Introduction by Steve Corcoran, London, New York: Verso, 2006, p. 261:

է։ Բոլոր պետական մարմինները հաստատուած են արհմիութիւններու ձեւով եւ կը պատկանին անոր։»[2]

Ժամանակակից փիլիսոփայ Ալէն Պատիու կը շեշտէ Քոմիւնի համայնքայնութիւնը.

«Այս ամբողջ ընթացքին (Մարտի վերջաւորութենէն մինչեւ Մայիսի կէսը), Փարիզի բնակիչները ստեղծարար եւ խաղաղ կերպով կը շարունակեն իրենց կեանքը։ Աշխատանքի, կրթութեան, կիներու եւ արուեստներու հետ կապուած ամէն տեսակ հասարակական ձեռնարկումները կը ներկայացուէին վիճաբանութեան, որոնց հիման վրայ կը կայանային որոշումները։ Գաղափար մը տալու համար խնդիրներու առաջնութեան մասին, նշենք, օրինակ, որ Մայիս 18-ին (կառավարական բանակը *զանգուածային* մուտք պիտի գործէր Փարիզ Մայիս 21-ին) քուէարկութիւն կատարուեցաւ նախակրթական դպրոցներու մէջ ստեղծուելիք դասարաններուն քանակը որոշելու համար։

«Իրականութեան մէջ, Փարիզ անմիջապէս դարձաւ խաղաղ եւ արտակարգօրէն քաղաքականացուած։»[3]

Չենկ Չի-Ցու կը ցուցադրէ քանի մը օրինակ այս համայնքային կեանքէն. «Զանգուածները կը հանդիսանային Փարիզի Քոմիւնի իրական տէրերը։ Մինչ Քոմիւնը տակաւին կը կազմաւորուէր, զանգուածները ընդարձակ ծաւալով կազմակերպուեցան եւ իրենց համապատասխան կազմակերպութիւններուն մէջ քննարկեցին կարեւոր պետական խնդիրներ։ Ամէն օր շուրջ քսան հազար աքթիւիսթներ կը մասնակցէին ակումբային հաւաքոյթներու, ուր առաջարկներ կ՚ընէին կամ քննադատական կարծիքներ կը յայտնէին մեծ ու փոքր հասարակական եւ քաղաքական հարցերու վերաբերեալ։ Անոնք իրենց ցանկութիւններն ու պահանջները կը յայտնէին յօդուածներ եւ նամակներ ուղարկելով յեղափոխական լրագիրներուն եւ հանդէսներուն։ Զանգուածներու այս յեղափոխական խանդավառութիւնը եւ նախաձեռնութիւնը կը հանդիսանար Քոմիւնի ուժին աղբիւրը։»[4]

---

[2] 'Gustave Courbet sur la Commune, le 30 avril 1871: Paris est un vrai paradis! Point de police, point sottise', *SlateFR*, 30 avril 2014, http://www.slate.fr/culture/85987/des-lettres-courbet-en-defense-de-la-commune:

[3] Alain Badiou, *Polemics*, translated and with an Introduction by Steve Corcoran, London, New York: Verso, 2006, p. 260:

[4] Cheng Chih-Szu, 'The Great Lessons of the Paris Commune', *Dialectical Anthropology*, Vol. 1, 1976, Amsterdam, p. 387:

Քոմիւնը ժողովրդավարութեան բացառիկ օրինակ մըն էր։ Տոննի Կլուքսթայն կը գրէ. «Քոմիւնի անդամներուն տենչերը անսահման էին եւ բուռն էր իրենց հաւատքը հասարակական արդարութեան, հաւասարութեան եւ միջազգային համակեցութեան նկատմամբ։ Ծնած էր կառավարութեան նոր ձեւ մը հիմնուած զանգուածի աշխոյժ ժողովրդավարութեան վրայ։ Ծնած էր առաջին աշխատաւորական պետութիւնը։»[5]

«Փարիզ ազատ էր», ինչպէս կ՚ըսէ Ճոն Մերրիման։[6] Երաժշտութիւն, ընկերային հաւաքոյթներ պարտէզներու եւ փողոցներու մէջ։ «Քոմիւնը տեսակ մը «մըշտական տօն» մըն էր սովորական մարդոց համար, որոնք իրենց ազատութիւնը նշեցին իւրացնելով Փարիզի փողոցները եւ հրապարակները։»[7] Զարգացան արուեստները, կարեւոր ազատութիւններ ստացան կիները։ Մարդիկ դարձան «իրենց անձնական կեանքին տէրերը։»[8]

1965-ին հրատարակած իր աշխատութեան մէջ (*La Proclamation de la commune: 26 mars 1871*), Անրի Լըֆեպր Քոմիւնը ատակօրէն կը նկարագրէ իբրեւ տօնականութիւն.

«Փարիզի Քոմի՞ւնը։ Ան հաստատապէս ընդարձակ, դիւցազնական տօնականութիւն մըն էր, տօնականութիւն մը զոր Փարիզի ժողովուրդը՝ որ կը հանդիսանայ ֆրանսացի ժողովուրդին, եւ ընդհանրապէս բոլոր ժողովուրդներուն, էութիւնն ու խորհրդանիշը, պարգեւեց թէ՛ ինքզինքին եւ թէ՛ աշխարհին։ Cité-ին մէջ գարնանային տօնականութիւն մը, ժառանգազուրկերու եւ բանուորներու տօնականութիւն մը, յեղափոխական տօնականութիւն մը եւ Յեղափոխութեան տօնականութիւնը, ընդհանուր տօնականութիւն մը՝ արդի ժամանակներուն ամենամեծը, որ նախ բացայայտուեցաւ շքեղութեամբ եւ ցնծութեամբ։»[9]

Քոմիւնի ժամանակ, «ցիրուցան եղած եւ բաժնուած քաղաքը վերածուեցաւ գործողութիւններու համայնքի մը», իսկ «Տօնակատարութեան ընթացքին, համայնքը դարձաւ հաւատակցութիւն [communion] մը՝ այդ ժամանակուայ ըմբռ-

---

[5] Donny Gluckstein, *The Paris Commune: A Revolution in Democracy*, London: Bookmarks Publications, 2006, p. 7:

[6] John Merriman, *Massacre: The Life and Death of the Paris Commune of 1871*, New Haven and London: Yale University Press, 2014, p. 66:

[7] Անդ, էջ 67:

[8] Անդ, էջ 66-96:

[9] Henri Lefebvre, *Key Writings*, edited by Stuart Elden, Elizabeth Lebas and Eleonore Kofman, New York, London: Continuum, 2003, p. 188:

նելի ամենէն ընդարձակ ծաւալով»։ Քոմիւնի ժամանակ նաեւ «մարդիկ ողջունեցին օտարացած եւ օտարացնող աշխատանքի խորհդանիշները՝ ճնշող ուժի անկումը եւ օտարացումի աւարտը, [...] ողջունեցին աշխատանքի աշխարհը, այսինքն՝ աշխատանքը իբրեւ աշխարհ եւ աշխարհներու արարիչ»։ Վերջապէս, «այս անհուն տօնականութեան ընթացքին բան մը կը պառակտէ սովորական հասարակական կեանքի աղօտ քօղերը, կը ծագի խորքէն, կը ճեղքէ անշարժին եւ անյայտին կուտակուած շերտերուն ընդմէջէն, կու գայ լոյսին եւ կը բացուի։ Ի՞նչ բան էր ասիկա։ Հիմնական կամք մը փոխելու աշխարհը եւ կեանքը ինչպէս որ կայ, եւ իրերը ինչպէս որ կան, բարձրագոյն միտքը փոխանցելու ինքնաբերութիւն մը, ամբողջական յեղափոխական ծրագիր մը։ Ընդհանուր եւ խելացնոր «ամէնը կամ ոչինչ»։ Կենսական եւ բացարձակ գրաւ մը կարելիին եւ անկարելիին հանդէպ...։»

Այսինքն, «Յեղափոխութիւնը իբրեւ գործողութիւն պիտի համընկնէր Յեղափոխութեան արդիւնքներուն հետ։ Մարդ մէկ ոստումով պիտի ցատկէր կոյր անհրաժեշտութենէն դէպի Ազատութեան զուարթ իշխանութիւնը, դէպի մեծ տօնականութիւն մը առանց աւարտի։ Միաժամանակ, ծնունդ առնելիք ազատ աշխատանքը պիտի դառնար խաղ մը, մեծ խաղ մը բազուկներու հետ, կեանքի եւ մահուան հետ։»[10]

Քոմիւնը յատուկ ուշադրութիւն դարձուց մամուլին իբրեւ ազատագրուած տարածք։ Ժիւլ Լըմոնիէ կը թուարկէ Քոմիւնի ժամանակ լոյս տեսած 103 լրագիրներու անուններ,[11] որոնցմէ 70-ը հիմնուած էին Քոմիւնի ժամանակ։[12] Ի՞նչ կը նշանակէ այս առատութիւնը։ Կը նշանակէ՝ որ կայ միտք, գաղափար, համոզում եւ գիտելիքի անվերջանալի տարբերակումի գիտակցութիւն, պահանջ եւ փափաք։ Կը նշանակէ՝ թէ արհեստականութիւն մըն է լրագրութեան զարգացումը կապել առեւտուրի ենթադրեալ զարգացումի հետ։ Առեւտուրի զարգացումը իր հետ *կրնայ* բերել մամուլի գոյութիւն։ Բայց մամուլը դիւրութեամբ *կրնայ* գոյութիւն ունենալ նաեւ նուազագոյն դրամի առկայութեան պայմաններով, եթէ նպատակը ոչ թէ շուկայական տարածումն է այլ գիտելիքներու շրջանառութիւնը։ Շուկայով կը պարտադրես քու որոշած գիտելիքիդ տարածումը, բայց անկարող կ'ըլլաս շրջանառութեան մէջ դնել համընդհանուր շահերուն հետ կապուած գիտելիքը։ Շրջանառութիւն կը նշանակէ գիտելիքային փորձա-

[10] Անդ, էջ 189։

[11] J. Lemonnyer, *Les Journaux de Paris pendant La Commune*, Paris: J. Lemonnyer, 1871, pp. 81-84:

[12] Անդ, էջ 87-89։

ռութեան փոխանցում, փոխանցում՝ ոչ իբրեւ օտարացած ու քարացած առարկայ, այլ լիովին գիտակցուած ու փորձուած իրադարձութիւն: Մենք՝ հայերս, քաջութիւն ունի՞նք արդեօք ընդունելու՝ որ առեւտրական գոյութեան ուղղակի արդիւնք հանդիսացող հայերէն առաջին լրագիրը՝ *Ազդարար* (Մադրաս, 1794), կը հանդիսանայ հայկական պահպանողական լրագիրներէն մէկը:

Մէկ կողմ նետենք ներկայ մտայնութեան բնորոշ շքեղ, մաքուր տպագրութեան մը տարօրինակ պարտադրանքը: Մոռնանք «մեծ» հասկացողութեան կիրքը, ըստ որուն «մեծագոյն» ըլլալու համար անհարժեշտ է որ օրաթերթը բաղկացած ըլլայ «մեծագոյն» քանակութեամբ էջերէ՝ 80, 100, 120, ուր առարկաներու առատութիւն մը պէտք է գտնուի, պայմանով որ այդ ենթադրեալ առատութիւնը լիովին վերահսկուած ըլլայ իշխանականներուն կողմէ, պայմանով որ այդ առատութեան մէջ բացակային ժողովուրդը, ժողովրդական պահանջները, ժողովրդական յոյզերն ու մտածումները, աշխատաւորներուն ու պաշտօնեաներուն իրական զանգատները, ճնշուած զանգուածներու իրավիճակներուն բացայայտումը, սպառողական զանգուածէն դուրս մնացած միլիաւոր մարդոց ապրուստի պայմաններուն ներկայացումը, պայմանով որ աղքատութիւնը մեկնաբանուի իբրեւ տգիտութեան եւ ոչ թէ մեծ դրամատէրերու շահամոլութեան արդիւնք: Այս բոլոր բացակայութիւններուն համար, բայց 80 միանպատակ էջերու գոյութեան համար անհրաժեշտութիւն կայ հոյլ մը լրագրողներու, ուրեմն՝ դրամի:

Եթէ այս բոլոր առեւտրականացումները հանենք մեր հաշուարկումներէն, լրագիր մը կրնայ հրատարակուիլ նուազագոյն նիւթական պայմաններու գոյութեամբ: Երբ մէկ «մեծ» լրագիրի մը փոխարէն գտնուին տասը «փոքր» լրագիրներ, խնդիրը բոլորովին այլ հարթութեան վրայ պիտի դրուի: Երբ մէկ հսկայ դրամագլուխի մը փոխարէն գտնուին անհամար փոքր դրամագլուխներ, գիտելիքը պիտի դառնայ շատ աւելի բազմազան ու հետաքրքրական, շատ աւելի որակաւոր ու գրաւիչ: Երբ լրագիրներու տեսակներուն քանակը, եւ ոչ թէ տպաքանակը, ըլլայ շատ ու բազմադիմի, կարելի պիտի ըլլայ ներկայանցել եւ ընդունիլ կարծիքներու այլազանութիւն եւ խուսափիլ գիտելիքային կեդրոնամէտ վիճակէն: Փոխանակ հազար ընթերցող կարդալու մէկ լրագիր, հազար ընթերցող պիտի կարդայ հարիւր լրագիր: Ընթերցողը պիտի ունենայ ընտրութեան լայն հնարաւորութիւն: Եթէ լրագիրներու բաշխումին պայմանները ըլլան նոյնը, բոլոր հրատարակիչները իրաւասութիւն պիտի ունենան իրենց լրագիրները հաւասարապէս տեղադրել որեւէ տեղ եւ ամէն տեղ, վերացնելով շուկայացումի արդի ճնշող միջոցները, ջնջելով շուկայի հետ կապուած «ուժեղ»-ի վտանգաւոր հոգեբանութիւնը:

Քոմիւնի լրագիրներուն առատութիւնը փորձ մը, ձգտում մըն էր դէպի այս տեսակ բազմազանութիւնը։ Բայց անիկա առատութիւն մըն էր յառաջդիմական գաղափարներով, եթէ յառաջդիմութիւնը հասկնանք իբրեւ ժողովրդական լայն շերտերու բարեկեցիկութիւն, հասարակական հաւասարութիւն, գիտելիքի հանրայնացում եւ նման բաներ։

«Հանրապետութիւնը կ'ուզէ ոչ թագաւոր, ոչ պապ, ոչ բռնապետ, ոչ փրկիչ, ոչ կուռքեր, ոչ մարգարէներ. ան կ'ուզէ կառավարել ինքն իրեն։ Ասիկա իր իրաւունքն է եւ ան չի թաքցներ իր մտածմունքը», գրած է *Le Prolétaire*-ը 1871 Մայիսին։[13]

*La Fédération communale* լրագիրը կը յայտարարէ սահմանադրութեան ծրագիր մը՝ «հիմնուած հետեւեալ տեսութեան վրայ. որ ժողովուրդը ինքնիշխան է, իր ինքնիշխանութիւնը անկորնչելի է եւ անփոխանցելի, եւ որ պաշտօնատարները կը նշանակուին ժողովուրդին կողմէ եւ միշտ յետս կոչելի են, միշտ վերահսկելի են, միշտ պատասխանատու, ի տարբերութիւն փոխանորդներուն, այսինքն՝ բռնապետներուն, որոնք կը պատուիրակեն ժողովուրդի ինքնիշխանութեան փոխարէն։»[14]

Այսպէս, Քոմիւնի մամուլը կարեւոր մաս մըն էր ստեղծուած համայնքային տնտեսութեան։

Քոմիւնին բացառիկ կարեւորութիւն տուին իր ժամանակակից ընկերվարականները իրենց երկու ճիւղերով՝ ժամանակաւոր պետութեան կողմնակից Մարքս-Էնկէլսը (դասական մարքսիզմը) եւ պետութիւնը անմիջապէս վերացնելու կողմնակից անարշիսթները։

Ահաւասիկ Մարքսի կարծիքը.

«Արդարեւ, Փարիզի մէջ Քոմիւնի գործած փոփոխութիւնը հրաշալի էր։ Այլեւս ոչ մէկ հետք կը գտնուէր Երկրորդ Կայսրութեան սնոտի Փարիզին։ Փարիզ այլեւս դադրեցաւ բրիտանացի եւ իռլանտացի կալուածատէրերու, ամերիկացի նախկին ստրկատէրերու եւ թափթփուք մարդոց, ռուս նախկին ճորտատէրերու եւ վալաքեան պոյարներու ժամադրավայրը ըլլալէ։ Այլեւս ոչ մէկ դիակ դիարանին մէջ, ոչ մէկ գիշերային աւազակութիւն, հազիւ քանի մը գողութիւն։ Իրականութեան մէջ, առաջին անգամ ըլլալով 1848 Փետրուարէն սկսեալ, Փարիզի փողոցները ապահով էին՝ առանց որեւէ տեսակ ոստիկանութեան։

[13] *Le Prolétaire*, mai 1871, քաղուած J. Lemonnyer-ի յիշեալ գիրքէն, էջ 64։

[14] *La Fédération communale*, քաղուած J. Lemonnyer-ի յիշեալ գիրքէն, էջ 27։

««Մենք», ըսաւ Քոմիւնի անդամ մը, «այլեւս չենք լսեր սպանութեան, գողութեան եւ անձի վրայ յարձակումի մասին։ Արդարեւ, կը թուի՝ թէ ոստիկանութիւնը իր Պահպանողական ընկերներուն քաշքշեց դէպի Վերսայ։»

«Խառնակեցիկ կիները [*cocottes*] հեռացան իրենց պաշտպաններուն՝ ընտանիքի, կրօնքի եւ, նախ եւ առաջ, սեփականութեան այդ պահակներուն, ոտնահետքերով։ Անոնց փոխարէն, դարձեալ մակերես ելան Փարիզի իրական կիները՝ հերոսական, ազնուական եւ նուիրական, նման հին ժամանակներու կիներուն։ Աշխատող, մտածող, պայքարող, արիւն թափող Փարիզ մը (որ զբաղուած ըլլալով նոր հասարակութիւն մը բեղմնաւորելու գործով, գրեթէ մոռցաւ իր դարպասներուն կանգնած մարդակերները)՝ լուսաշողուած իր պատմական նախաձեռնութեան խանդավառութեան մէջ։»[15]

Բնականաբար, Քոմիւնի ժամանակակից անարշիսթները ջերմօրէն պիտի ընդունէին զայն։ 1880-ին Փիոթր (Փիէռ) Քրոփոթքին այսպէս պիտի սկսէր Քոմիւնի մասին իր յօդուածը.

«1871 Մարտ 18-ին, Փարիզի ժողովուրդը կ'ապստամբի արհամարհելի ու զարշելի կառավարութեան դէմ, եւ քաղաքը կը յայտարարէ անկախ, ազատ եւ ինքն իրեն պատկանող։

«Կեդրոնական ուժի այս տապալումը տեղի ունեցաւ առանց յեղափոխութեան սովորական փուլային հետեւանքներուն, առանց հրացանաձգութեան, առանց արիւնահոսութեան ընդդիմարգելքներուն [barricades] վրայ։ Երբ զինուած ժողովուրդը փողոց իջաւ, իշխողները փախչեցան, ռազմախումբերը դուրս քաշուեցան քաղաքէն, քաղաքացիական պաշտօնեաները հապճեպով հեռացան դէպի Վերսայ՝ իրենց հետ տանելով ինչ որ կրնան։ Կառավարութիւնը շոգիացաւ, ինչպէս գարնանային զեփիւռէն շոգիացող լճացած ջրաւազան մը, եւ Մարտ 19-ին, հազիւ քանի մը կաթիլ արիւն թափելէ ետք, փարիզեան մեծ քաղաքը ինքզինք ազատ կը գտնէ ապականող պղծութենէն։

«Այսուհանդերձ, այս իրագործուած յեղափոխութիւնը կը բանայ յեղափոխութիւններու շարքի նոր ժամանակաշրջան մը, որուն միջոցով ժողովուրդները կը քալեն ստրկութենէ դէպի ազատութիւն։ ՓԱՐԻԶԻ ՔՈՄԻՒՆ անունին տակ նոր *գաղափար* մը ծնաւ՝ որ կոչուած էր դառնալու ապագայ յեղափոխութիւններու սկզբնակէտը։

[15] Karl Marx, 'The Civil War in France', Marx & Engels, *Collected Works*, Volume 22, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 341:

«Ինչպէս բոլոր մեծ գաղափարները,ան չէր հանդիսանար փիլիսոփայի կամ անհատի մը յղացումներուն արդիւնքը։ Ան ծնաւ հաւաքական տրամադրութե-նէն եւ բխեցաւ ամբողջ ժողովուրդի սիրտէն։»[16]

Ուրիշ յայտնի անարշիստ մը՝ Միխայիլ Պաքունին, 1871-ին կը գրէր.

«Ես Փարիզի Քոմիւնի կոմնակից մըն եմ, որ, հակառակ միապետական եւ կղերական յետադիմութեան պատճառով կրած ամբողջ արիւնահեղութեան, Եւրոպայի բանուորներու սիրտերուն եւ միտքերուն մէջ դարձաւ աւելի տոկուն եւ աւելի ուժեղ։ Ես անոր կողմնակիցն եմ, նախ եւ առաջ որովհետեւ անիկա հանդիսացաւ պետութեան յանդուգն, յստակ ձեւակերպուած ժխտումը։»[17]

Հասկնալի է, որ Քոմիւնի խիստ կարճատեւ գոյութիւնը կարելի չէ անվերա-պահօրէն ներկայացնել վիպապաշտականացուած եղանակով եւ վարդագոյն երանգով։ Ան ստիպուած էր բազում ներքին ու արտաքին հարցեր դիմագրաւել, գլխաւորաբար Վերսայի ուժերուն սպառնալիքները եւ խոչընդոտումները։ Բայց այն ինչ կարողացաւ իրագործել 72 օրուայ ընթացքին՝ շնորհիւ համայնքային կազմակերպուածութեան, կը հանդիսանայ արդի պատմութեան ամենէն ուսա-նելի երեւոյթներէն մէկը։

Փարիզի Քոմիւնը շատեր հիմնաւոր կերպով համեմատած են 2011 Յունուար 25-Փետրուար 11-ի Գահիրէի Թահրիր հրապարակի յեղափոխական վիճակին հետ, ուր ինքնաբերաբար ծաղկեցան արուեստները՝ կրաֆիթին ստացաւ մեծ թափ, մակերես ելան ընդհատակեայ երաժշտական խումբեր, գրուեցան ժո-ղովրդական բանաստեղծութիւններ, իսկ համայնքն ամբողջութեամբ հանդէս եկաւ մէկ նպատակով՝ ազատագրել մարդը իշխանական մտաւոր, բարոյական ու մարմնական ճնշումներէն։

Դրամատիրութիւնը մենաշնորհում է, ընկերվարութիւնը (իր իսկական իմաստով) համաշնորհում է։ Համաշնորհումով՝ ինչպէս Փարիզի Քոմիւնը, մարդիկ կ'ունենան հաւասար իրաւունքներ, մինչդեռ մենաշնորհումով մարդոց մէկ տոկոսը կ'իշխէ 99 տոկոսին վրայ։ Մենաշնորհումը պէտք է քանդեր համա-շնորհումը։

---

[16] 'La Commune de Paris', *Le Révolté*, Organe socialiste, deuxième année, No. 2, 20 mars 1880, p. 1:

[17] Michail Bakunin, 'The Paris Commune and the Idea of the State', *Bakunin on Anarchy: Selected Works by the Activist-Founder of World Anarchism*, edited, translated and with an introduction by Sam Dolgoff, New York: Vintage Books, 1972, pp. 263-264:

## ՓԱՐԻԶԻ ՔՈՄԻՒՆԻՆ ՈՂԲԵՐԳԱԿԱՆ ԱՒԱՐՏԸ ԻԲՐԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԵՒ ԱՅԼ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՆԱԽԱՏԻՊ

Վերսայ ապաստանած զօրքերը Ատոլֆ Թիէրի (Adolphe Thiers) առաջնորդութեամբ 1871 Մայիս 28-ին կը վերագրաւեն Փարիզը, կատարելով ահաւոր ջարդ մը եւ գործադրելով առաւելագոյն վայրագութիւն եւ բռնութիւն: Ահաւասիկ ականատեսի կը վկայութիւնը.

«Քսանհինգ հազար մարդ, կին եւ երեխայ սպաննուեցան ճակատամարտի ընթացքին կամ անկէ ետք, նուազագոյնը երեք հազար անձ մահացաւ բանտերու, կամրջանաւերու, ամրոցներու մէջ կամ իրենց գերութեան ժամանակ վարակուած հիւանդութիւններով, տասներեք հազար եօթը հարիւր դատապարտեալ՝ մեծամասնութիւնը ցմահ, եօթը հազար կին, երեխայ եւ տարիքաւոր մարդիկ զրկուած իրենց բնական հոգատար անձերէն եւ կամ նետուած Ֆրանսայէն դուրս, նուազագոյնը հարիւր տասնըմէկ հազար զոհ, ահաւասիկ պուրժուական վրէժխնդրութեան հաշուեկշիռը Մարտ 18-ի յեղափոխութեան:»[18]

Այսպիսի յեղաշրջումով վերջ գտաւ ֆրանսական վերջին յեղափոխութիւնը՝ Փարիզի Քոմիւնը:

Մարքս Ատոլֆ Թիէրը անուանած է «հրէշային գաճաճ»[19] իսկ Քոմիւնի ջախջախումը համարած է «արդի ժամանակներու ամենէն սարսափելի պատերազմը»:[20]

Քոմիւնի աւերակներուն վրայ կը խոյանայ Ֆրանսայի Երրորդ Հանրապետութիւնը, ուր անմիջապէս կը վերականգնուին դրամատիրական կորսուած յարաբերութիւնները, պանքային շահարկումները եւ դասակարգային շահագործող իրավիճակը: Այս յարաբերութիւնները Ֆրանսայի մէջ կը շարունակուին մինչեւ այսօր:

Բնականաբար, արիւնալի յեղաշրջումէն ետք, Երրորդ Հանրապետութիւնը ամէն ջանք պիտի գործադրէր նաեւ ջնջելու Քոմիւնի յիշողութիւնը,[21] օգտագործելով այն միեւնոյն միջոցները, որոնք մինչեւ այսօր վարպետօրէն կը գործադրեն աշխարհի բոլոր յաջողած հակայեղափոխութիւնները՝ յեղափոխականնե-

---

[18] Lissagaray, *Histoire de la commune de 1871*, Bruxelles: Librairie Contemporaine de Henri Kistemaeckers, 1876, p. 511:

[19] Karl Marx, նշ. աշխ.ը, էջ 314:

[20] Անդ, էջ 353:

[21] Colette E. Wilson, *Paris and the Commune 1871-78*, Manchester and New York: Manchester University Press, 2007:

րու անունի վարկաբեկում, յեղափոխութիւնը ներկայացնելով իբրեւ կործանիչ արարք ու բանադրանք, եւ ապա այդ յեղափոխական շրջանը դարձնելով արգիլուած պատմութիւն կամ հակայեղափոխութիւնը ներկայացնելով իբրեւ յեղափոխութիւն:

2007 Սեպտեմբեր 10-ին, Եէյլ Համալսարանին մէջ, Փարիզի Քոմիւնին նուիրուած իր դասախօսութեան մէջ, Ճոն Մերրիման կ'ըսէ. «Պիտի եզրակացնեմ, որ ան [իմա՝ Փարիզի Քոմիւնի կոտորածը, Հ.Ա.] պիտի հանդիսանար ամենէն ընդարձակ ջարդը՝ որ նախորդեց ԺԹ. դարու վերջին տարիներուն, ինչպէս նաեւ Համաշխարհային Առաջին Պատերազմի (1915-ին) ժամանակ կատարուած հայկական ջարդերը, ցաւալիօրէն կանխատեսելով Ի. դարու սարսափի տեսարանները: '*À Paris tout le monde était coupable*' [Փարիզի մէջ ամէն մարդ յանցաւոր էր]: Դուն յանցաւոր ես որովհետեւ մնացիր Փարիզի մէջ, որովհետեւ շատ աղքատ էիր հեռանալու համար:»[22]

2014-ին, Մերրիման նոյն գաղափարը կ'ամրագրէ իր գիրքին մէջ. «Վերսայցիներուն կողմէ գործադրուած սպանդը իր նմանը չունեցաւ մինչեւ Առաջին Համաշխարհային Պատերազմի (1915) վայրագութիւնները հայերուն դէմ:»[23]

Այս գաղափարը կը պնդէ նաեւ 2015-ի հարցազրոյցին մէջ. «Օրինազանց գլխատութիւններուն ընթացքին մարդիկ սպաննուեցան իրենց այդպէս ըլլալնուն համար: Կամ Փարք Մոնսոյի, Շաթըլէի կամ Լուքսանպուրկի Պարտէզներու Զինուորական Ատեաններուն առջեւ 10-15 երկվայրկեան տեւած «դատավարութիւններ»-էն ետք մարդիկ գլխատուեցան, պարզապէս որովհետեւ անոնք ունէին Փարիզի ռամկական թաղամասերու (մասնաւորապէս՝ Մոնմարթր, Պէլվիլ, Մենիլմոնթան, Շարոն, եւ այլն) աշխատաւորական դասակարգի առոգանութիւն, կամ որովհետեւ օտարներ էին (մասնաւորապէս լեհեր, որոնցմէ շատեր պայքարեցան Քոմիւնի համար), կամ որովհետեւ ունէին աշխատանքային կոշտ ձեռքեր, կամ որովհետեւ կարգ մը Վերսայի սպաներու դիմեցին ընդունուած ձեւով՝ «դուն», կամ citoyen՝ քաղաքացի: Ասիկա ցաւալի եւ տագնապալի կերպով ինծի կը յիշեցնէ յետագային գալիքը՝ թուրքերուն կողմէ հայերուն ընդարձակածաւալ կոտորածները 1895-ին եւ 1915-ին, կամ հրեաներուն (նաեւ ուրիշներուն, համայնավարներուն, ընկերվարականներուն) կոտորածնե-

[22] Դասախօսութիւնը կարելի է դիտել YouTube-ի մէջ՝ John Merriman, *The Paris Commune and Its Legacy*: Անոր գրառումը կարելի է կարդալ՝ http://oyc.yale.edu/transcript/355/hist-276:

[23] John Merriman, *Massacre: The Life and Death of the Paris Commune of 1871*, New Haven and London: Yale University Press, 2014, p. 252:

րը Բ. Համաշխարհային Պատերազմին։ Դուն յանցաւոր էիր ըլլալու համար ինչ որ էիր։»[24]

Կ'արժէ ցեղասպանական նախատիպարի այս խնդիրը ճանչնալ արդի պետութեան բնաբանին մէջ։ Եւ այս նպատակով հարցնենք. եթէ Քոմիւնի ջարդը տեղի չունենար, տեղի պիտի ունենա՞ր արդեօք հայոց ցեղասպանութիւնը։ Անշուշտ՝ այո՛։ Հարցումը քիչ մը միամիտ էր։ Հարցնենք այսպէս. եթէ Քոմիւնը ո՛չ միայն յաջողէր, այլ իր օրինակը, կամ ընդհանրապէս ընկերվարական հասարակութեան օրինակը, հասնէր Օսմանեան Կայսրութիւն, տեղի պիտի ունենա՞ր արդեօք հայոց ցեղասպանութիւնը։ Մեծ հաւանականութեամբ՝ ո՛չ։ Ինչո՞ւ։ Հետեւեալ երեք ենթագլուխներուն մէջ պիտի փորձեմ այս հարցը բացատրել դասական մարքսիզմի լոյսին տակ։

## ՊԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ - ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏՈՒԹԻՒՆ

Մարքսի համար Պետական իշխանութիւնը ունի «կատարելապէս ճնշիչ բնոյթ»։ «Արդի արդիւնաբերութեան յառաջդիմութիւնը զարգացուց, ընդարձակեց եւ ուժեղացուց դրամագլուխի ու աշխատանքի միջեւ հակամարտութիւնը։ Ասոր համահունչ աստիճանով, Պետական իշխանութեան նկարագիրը աւելի ու աւելի ուժեղացաւ իբրեւ դրամագլուխի ազգային իշխանութիւն աշխատանքին վրայ, իբրեւ հասարակական ստրկացումի համար կազմակերպուած հասարակական ուժ, իբրեւ դասակարգային բռնապետութեան ծառայող գործիք։»[25]

Քոմիւնը անգոյ դարձուց Պետական իշխանութիւնը։ Ինչպէ՞ս։ Դարձեալ Մարքս կու տայ ասոր պատասխանը.

«Քոմիւնի առաջին հրամանագիրը [...] ջնջեց գոյութիւն ունեցող բանակը եւ զայն փոխարինեց զինուած ժողովուրդով։

«Քոմիւնը կազմուած էր թաղապետական խորհուրդի անդամներէ՝ որոնք ընդհանուր քուէարկութեամբ ընտրուած էին քաղաքի զանազան վարչական բաժիններուն մէջ։ Անոնք պատասխանատու էին կարճ ժամանակի համար եւ ենթակայ էին չեղարկումի։ Բնականաբար, խորհուրդի անդամներուն մեծա-

---

[24] Mark Karlin, 'Interview: Execution of Paris Communards Foreshadowed Mass Murders of 20th Century', 1 February 2015, *truthout*, http://www.truth-out.org/news/item/28813-execution-of-paris-communards-foreshadowed-mass-murders-of-20th-century:

[25] Karl Marx, նշ. աշխ.ը, էջ 329:

մասնութիւնը աշխատաւոր մարդիկ էին՝ աշխատաւոր դասակարգի ճանչցըւած ներկայացուցիչներ։ Քոմիւնը պէտք է ըլլար աշխատանքային, եւ ոչ թէ խորհրդարանային, մարմին մը՝ միաժամանակ թէ՛ գործադիր եւ թէ՛ օրէնսդրական։ Փոխանակ ըլլալու Կեդրոնական Կառավարութեան գործակալը, ոստիկանութիւնը անմիջապէս դադրեցաւ ունենալ քաղաքական վերագրումներ եւ դարձաւ Քոմիւնին պատասխանատու գործակալը՝ որ որեւէ ժամանակ ենթակայ էր չեղարկումի։ Նոյնն էր նաեւ Վարչութեան միւս ճիւղերու պաշտօնատարներուն պարագան։ Քոմիւնի անդամներէն սկսեալ մինչեւ ներքեւ, հասարակական ծառայութիւնը պէտք է կատարուէր *աշխատաւորական աշխատավարձքով*։ Պետութեան բարձրաստիճան ներկայացուցիչներուն մնայուն շահերը եւ ներկայացուցչական արտօնութիւնները անհետացան, իրենց հետ անհետանալով նոյն ինքը բարձրաստիճան ներկայացուցիչները։ Հանրային գործառնութիւնները դադրեցան Կեդրոնական Կառավարութեան գործիքներուն մասնաւոր սեփականութիւնը ըլլալէ։ Ոչ միայն թաղապետական վարչութիւնը, այլ Պետութեան կողմէ ցարդ գործադրուած ամբողջ նախաձեռնութիւնը անցաւ Քոմիւնի տնօրինութեան տակ։»[26]

Պետական իշխանութեան երկու գործիքները՝ բանակը եւ ոստիկանութիւնը, կը դադրին ճնշողի դեր խաղալէ, դառնալով Քոմիւնի բաղկացուցիչ մասը։ Իսկ Քոմիւնը հեռու է կեդրոնացուած ըլլալէ, այնտեղ կարեւոր դեր կը խաղան թաղական վարչականութիւնները։ Եւ այս բոլորը լիովին վերահսկուած վարէն՝ ժողովուրդէն։

Մարքսի եւ Էնկէլսի համար, պետութիւնը ինքնաբերաբար եւ աստիճանաբար կ'անհետանայ ընկերվարական հասարակարգի մը մէջ։ Ահաւասիկ Էնկէլսի կարծիքը.

«Երբ վերջապէս [պետութիւնը] դառնայ ամբողջ հասարակութեան իրական ներկայացուցիչը, կը վերանայ անոր պիտանիութիւնը։ Երբ այլեւս չգտնուի հպատակութեան տակ պահուող որեւէ հասարակական դասակարգ, երբ վերանայ դասակարգային գերակայութիւնը, վերանայ գոյութեան համար անհատի մղած պայքարը՝ իբր հետեւանք մեր ներկայ արտադրութեան անիշխանական վիճակին, ինչպէս նաեւ վերանան ասոնցմէ ծագած բախումներն ու անկարգութիւնները, ոչինչ կը մնայ ճնշելու համար իսկ յատուկ ճնշող ուժ մը՝ պետութիւն մը, այլեւս կը կորսնցնէ իր անհրաժեշտութիւնը։ Այն առաջին գործողութիւնը՝ որուն շնորհիւ պետութիւնը իրապէս կը հաստատէ ինքզինքը իբրեւ ամբողջ հասարակութեան ներկայացուցիչ, այսինքն՝ երբ յանուն

[26] Անդ, էջ 331։

հասարակութեան կը տիրանայ արտադրամիջոցներուն, կը հանդիսանայ, միաժամանակ, իր վերջին ինքնուրոյն գործողութիւնը իբրեւ պետութիւն։ Բոլոր բնագաւառներու հասարակական յարաբերութիւններուն մէջ պետութեան միջամտութիւնը կը դառնայ աւելորդ, եւ ապա ինքն ըստ ինքեան կ՚անհետանայ, ուր մարդոց կառավարումը կը փոխարինուի իրերու վարչականութեամբ եւ արտադրութեան գործարկութիւններու առաջնորդումով։ Պետութիւնը չի «վերացուիր»։ *Ան կ՚անհետանայ*։»[27]

Քոմիւնը կը ներկայացնէր այս անցումը, անցում մը՝ որ պիտի կատարուէր բանուորական բռնատիրութեան (dictatorship of the proletariat) կողմէ։ «Դրամատիրական եւ համայնավարական հասարակարգերուն միջեւ կը գտնուի յեղափոխական վերափոխութեան շրջանը մէկէն դէպի միւսը», 1875-ին կը գրէ Մարքս. «Ասոր համապատասխան կը գտնուի նաեւ քաղաքական անցումի շրջանը՝ ուր պետութիւնը ուրիշ բան չէ եթէ ոչ *բանուորներուն յեղափոխական բռնատիրութիւնը*։»[28]

Եթէ Մարքս ուղղակիօրէն Քոմիւնը չէ անուանած բանուորական բռնատիրութիւն, 1891-ին Էնկէլսը անուանած է. «Շատ լաւ, պարոններ, կ՚ուզէ՞ք գիտնալ այս բռնատիրութիւնը ինչ բանի կը նմանէր։ Նայեցէ՛ք Փարիզի Քոմիւնին։ Ան էր որ կը հանդիսանար Բանուորներուն Բռնատիրութիւնը։»[29]

Բռնատիրութիւն (dictatorship) բառին իմաստը կարելի չէ ընդունիլ այսօրւան բացասական իմաստով։ Բոլորովին անիմաստ է՝ որ Մարքս, ջնջելու համար Պետական իշխանութիւնը եւ անոր ճնշիչ համակարգը, դիմէր ուրիշ դասակարգի մը բռնատիրութեան։ Հալ Տրափըր կը գրէ՝ թէ «տասնիններորդ դարու կէսերուն տակաւին կը պահպանուէր դարեր շարունակ գործածուող «բռնատիրութիւն» բառին հին իմաստը, որ հոմանիշ չէր բռնակալութեան, դաժանութեան, բացարձակապաշտութեան կամ ինքնակալութեան, ու նախ եւ առաջ չէր հանդիսանար ժողովրդավարութեան հակակշիռը։»[30] Ան կ՚աւելցնէ՝

---

[27] Frederick Engels, ‘Anti-Dühring: Herr Eugen Dühring’s Revolution in Science’, Marx & Engels, *Collected Works*, Volume 25, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 268:

[28] Karl Marx, ‘Critique of the Gotha Programme’, Marx & Engels, *Collected Works*, Volume 24, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 95:

[29] Frederick Engels, ‘Introduction [to Karl Marx’s The Civil War in France]’, Marx & Engels, *Collected Works*, Volume 27, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 191:

[30] Hal Draper, *The ‘Dictatorship of the Proletariat’ from Marx to Lenin*, New York: Monthly Review Press, 1987, p. 11:

թէ «Մարքս ընդամէնը այս հին քաղաքական եզրը վերաբերեց դասակարգի մը քաղաքական ուժին։»[31]

Ի տարբերութիւն անարշիստներուն, որոնք կը հաւատային պետութեան անմիջապէս վերացումի կարելիութեան, դասական մարքսիզմը համոզուած էր անոր աստիճանական վերացումի գործընթացին։ Նկատի առնենք, որ այս պետական համակարգը որուն մասին կը խօսէին բոլորը կը հանդիսանար ազգային պետութիւնը (nation-state)՝ անմիջական արտադրանքը դրամատիրութեան։ Այս ազգային պետութեան մէջ էր ուր կը գտնուէր Պետական իշխանութիւնը իր ճնշիչ բնոյթով։

Բայց ի՞նչ է ազգային պետութեան եւ դրամատիրութեան յարաբերութիւնը։ Քրիս Հարման կը բացատրէ.

«Գոյութիւն ունեցող ազգային պետութիւնները ծագեցան արտադրութեան զարգացող դրամատիրական կազմակերպութեան ընդմէջէն՝ իբրեւ գերկառուցւածքներ։ Բայց անոնք փոխադարձաբար սնեցին այդ կազմակերպութիւնը, օգնելով սահմանելու իր ընթացքը եւ ուղղութիւնը։»

Դրամատիրութիւնը զարգանալու համար պէտք ունի տարածութեան։ Այդ տարածութիւնը պետութիւնն է։ Իսկ պետութիւնը կուռ ու գերիշխելի տարածութիւն դարձնելու լաւագոյն միջոցը ազգային պետութիւնն է, որ եկաւ փոխարինելու կայսրութիւններուն եւ նախկին թագաւորական-աւատատիրական պետութիւններուն.

«Որեւէ արտադրական դրամագլուխ կ՚աճի մասնաւոր տարածութեան մը սահմաններուն մէջ, միւս քոյր դրամագլուխներուն [իմա՝ ապրանքային դրամագլուխի եւ դրամական դրամագլուխի, Հ.Ա.] հետ միասին (այս դրամագլուխները, ինչպէս Մարքս կը նկարագրէ, կը հանդիսանան «անհաշտ եղբայրներ»)։ Արտադրական դրամագլուխը եւ մասնաւոր տարածութիւնը աղբիւրներու, ֆինանսի եւ շուկաներու առումով փոխադարձաբար կախեալ են իրարմէ։ Եւ անոնք միասնաբար կը գործեն որպէսզի փորձեն ձեւաւորել այդ տարածութեան հասարակական եւ քաղաքական պայմանները՝ զանոնք յարմարցնելով իրենց սեփական նպատակներուն։

«Ասիկա կը ներգրաւէ փորձ մը՝ աշխատանքը «ազատելու» ուրիշ դասակարգերու վերահսկողութենէն, վերացնելու իրենց արտադրանքներուն վաճառքը խանգարող արգելքները, ստեղծելու իրենց պահանջներուն յարմարող ենթակառոյց մը (նաւահանգիստներ, փողոցներ, ջրանցքներ, երկաթուղիներ), հաստատելու իրենց միջեւ յարաբերութիւնները կանոնաւորող շարք մը

---

[31] Անդ, էջ 14։

օրէնքներ (պուրժուական սեփականութեան օրէնքներ) եւ ստեղծելու զինուած ուժ մը՝ որ պիտի պաշտպանէ իրենց սեփականութիւնը թէ՛ տեղական եւ թէ՛ արտաքին սպառնալիքներէ։ Այս բոլոր ջանքերուն իրականացումը պիտի դիւրանայ՝ եթէ կարողանան տեղական բարբառներու եւ լեզուներու զանգուածը փոխանակել խօսակցական եւ գրաւոր միակ կազմութեամբ մը։ Մէկ խօսքով, իրենց նպատակն է ստեղծել ազգային պետական ուժ մը, հետեւաբար՝ ազգային գիտակցութիւն եւ լեզու։»[32]

Փարիզի Քոմիւնը կամ բանուորական բռնատիրութիւնը (իր ոչ-բռնատիրական իմաստով)՝ պետութիւնը ձերբազատելով Պետական իշխանութենէն եւ արտադրական դրամագլուխէն, վերացուց ազգային պետութեան ազգային կողմը։

Ազգային պետութեան վերացումին խնդիրը Քոմիւնի մէջ արծարծած է Քրիսթին Ռոս.

«Համատեղաբար մտածելով հասարակական ձեւաւորումի բնագաւառներուն մասին՝ զորս պուրժուազին ուխտած էր պահել իրարմէ անջատուած (յատկապէս՝ քաղաք եւ գիւղ, բայց նաեւ տեսութիւն եւ գործադրութիւն, մտաւոր եւ ձեռային աշխատանք), Քոմիւնի անդամները փորձեցին ֆրանսական պատմութիւնը վերսկսիլ բոլորովին ուրիշ հիմքի վրայ։ Արդարեւ, այդ հիմքը եւ այդ պատմութիւնը իր շրջագիծին մէջ այլեւս կարելի չէ ընդունիլ իբրեւ ճիշգրտօրէն «ֆրանսական» կամ ազգային։ Ան միաժամանակ աւելի փոքր էր եւ շատ աւելի ընդարձակ։ Քոմիւնական երեւակայութիւնը գործեց տեղական ինքնավար միաւորի նախընտրեալ աստիճանով՝ միջազգային հորիզոնի մը ընդմէջէն։ Քիչ տեղ կար ազգին համար, կամ, այս իմաստով, շուկային կամ պետութեան համար։»[33]

Իսկ ո՞ւր կը գտնուէր արդեօք Օսմանեան Կայսրութիւնը այս բոլորին մէջ։

## ՕՍՄԱՆԵԱՆ ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆԸ ԺԹ. ԴԱՐՈՒ ԴՐԱՄԱՏԻՐԱԿԱՆ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Օսմանեան Կայսրութեան համար ԺԹ. դարը եւս դրամատիրական յարաբերութիւններու հաստատումի դանդաղ բայց անկանոն ու տարածութիւններու

[32] Chris Harman, 'The State and Capitalism Today', *International Socialism*, 2:51, Summer 1991։

[33] Kristin Ross, *Communal Luxury: The Political Imaginary of the Paris Commune*, London, New York: Verso; 2015։

առումով խիստ անհաւասար կազմաւորումի շրջանն էր։ Դրամատիրութիւնը ի ծնէ չէր կազմուած Կայսրութեան մէջ, ան եւրոպական իմփերիալիսթական տնտեսութեան արդիւնքն էր, որուն պատճառով Կայսրութեան մէջ կատարուածը ծայրամասային դրամատիրութիւն մըն էր։

Դրամատիրութեան մուտքը Թուրքիա բազում ուսումնասիրութիւններու նիւթ դարձած է։ Նիւթիս կարողութենէն դուրս է անոնց քննարկումը։ Կը բաւարարուիմ քանի մը դիտարկումով։

Յետահայեաց պարզագոյն մօտեցումով մը կարելի է հաստատել՝ որ այնտեղ ուր կը գտնուի կազմակերպուած բանուորական-աշխատաւորական շարժում, դրամատիրական յարաբերութիւնները կարելի է հաստատուած համարել։ Օսմանեան Կայսրութեան պարագային, Պարան Տուրալ եւ Ունէր Էրթէմ այդ թուականը կը նշեն 1872. «Հակասական կարծիքներ կան՝ թէ Օսմանեան Կայսրութեան մէջ աշխատաւորները ո՞ւր առաջին անգամ իրենց առաջին հանդիպումը կազմակերպեցին պաշտպանելու համար իրենց զանազան իրաւունքները եւ շահերը։ Մինչ որոշ աղբիւրներ կը պնդեն՝ թէ աշխատաւորական առաջին գործողութիւնը հանդիսացաւ Պէյօղլուի Հեռագրական Վարչութեան աշխատաւորներուն գործադուլը 1872 Փետրուարին, ուրիշ աղբիւրներ կը գրեն՝ թէ առաջին գործադուլը տեղի ունեցաւ նոյն տարին Քասիմփաշայի Նաւաշինարարութեան աշխատաւորներուն կողմէ։»[34]

Անշուշտ դրամատիրութիւնը Օսմանեան Կայսրութիւն մուտք գործած է այս թուականէն շատ աւելի առաջ, բայց 1872-ը պարզապէս անոր հասունացումի եւ վերջնական տիրակալութեան շրջանը կարելի է համարել տուեալ տարածութիւններուն վրայ։ Ուրիշ բառերով, երբ դրամագլուխի նախասկզբնական կուտակումը փոխարինուած է դրամատիրական կուտակումով։

Բնականաբար, նախասզբնական կուտակումի յարմարագոյն բացատրութեան համար պէտք է դիմել Մարքսի կոթողային աշխատութեան՝ *Դրամագլուխ*ին.

«Մենք տեսանք, թէ ինչպէս դրամը կը փոխուի դրամագլուխի, ինչպէս դրամագլուխի միջոցով կ'արտադրուի յաւելեալ արժէք եւ յաւելեալ արժէքի միջոցով կ'աւելնայ դրամագլուխը։ Բայց դրամագլուխի կուտակումը կ'ենթադրէ յաւելեալ արժէք, յաւելեալ արժէքը կ'ենթադրէ դրամատիրական արտադրութիւն իսկ դրամատիրական արտադրութիւնը կ'ենթադրէ դրամագլուխի եւ աշխատուժի զգալի զանգուածներու նախագոյութիւնը ապրանք արտադրողներուն ձեռքը։

[34] A. Baran Dural and Uner Ertem, 'Development of the Worker Class in the Ottoman Empire', *European Scientific Journal*, May Edition, Vol. 8, No. 11, p. 217:

Հետեւաբար, այս ամբողջ շարժումը կը թուի շրջիլ փոխադարձ շրջագիծի մը մէջ, որմէ կրնանք դուրս գալ միայն ենթադրելով նախասկզբնական կուտակումի մը (Ատամ Սմիթի նախկին կուտակումը) գոյութիւնը՝ որ նախորդած է դրամատիրական կուտակումին, կուտակում մը՝ որ կը հանդիսանայ ո՛չ թէ արտադրութեան դրամատիրական եղանակին հետեւանքը այլ անոր ելակէտը։»[35]

Նախասկզբնական կուտակումը «ոչ այլ ինչ է քան արտադրողին անջատումը արտադրական միջոցներէն։ Ան կը յայտնուի իբրեւ նախասկզբնական որովհետեւ կը կազմէ դրամագլուխի եւ իրեն համապատասխանող արտադրական եղանակի նախապատմական փուլը։»[36]

Նախասկզբնական կուտակումին ժամանակը կը գտնուի աւատատիրական հասարակարգին մէջ, մանաւանդ աւատատիրականէ դէպի դրամատիրութիւն անցումի երկարատեւ ժամանակաշրջանին, անցում մը՝ որ սկսաւ Արեւմտեան Եւրոպայէն, աստիճանաբար տարածուելով ամբողջ աշխարհի։ Մինչդեռ աւելի ուշ, երբ բուն դրամատիրական կուտակումը արմատաւորուեցաւ, տարբեր տարածութիւններու վրայ տակաւին կարելի էր գտնել նախասկզբնական ու դրամատիրական կուտակումները, բուն դրամատիրութիւնը միշտ ձգտելով իր մէջ վերցնել ու ոչնչացնել նախասկզբնականը։ Ժամանակներն ու տարածութիւնները մեծապէս կախուած էին տարածաշրջանէն եւ դրամագլուխի շրջանառութեան պայմաններէն։

Օսմանեան Կայսրութեան մէջ, վերոյիշեալ 1872-ի աշխատաւորական գործադուլները կրնան ուղեցուցել՝ որ յիշեալ տարածութիւններուն վրայ դրամագլուխի նախասկզբնական կուտակումը արդէն փոխարինուած էր բուն կուտակումով։

Այս առումով, հետաքրքրական մօտեցում մը կը ցուցաբերէ Իմմանուէլ Վալլըրսթայն 1979-ին գրած յօդուածին մէջ.

«Իմ խնդիրս պարզ է։ Ժամանակի մէջ կը գտնուէր որոշ կէտ մը՝ ուր Օսմանեան Կայսրութիւնը դուրս էր դրամատիրական աշխարհի-տնտեսութենէն [world-economy]։ Աւելի ուշ ժամանակի մէջ կը գտնուէր ուրիշ կէտ մը՝ ուր Օսմանեան Կայսրութիւնը միաձուլուած էր դրամատիրական աշխարհի-տնտեսութեան մէջ։ Ինչպէ՞ս կարելի է գտնել այս կէտերը ժամանակի մէջ։»[37]

---

[35] Karl Marx, *Capital*, Volume 1, Marx & Engels, *Collected Works*, Volume 35, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 704։

[36] Անդ, էջ 705-706։

[37] Immanuel Wallestein, 'The Ottoman Empire and the Capitalist World-Economy: Some Questions for Research', *Review* (Fernand Braudel Center), Vol. 2, No. 3, Winter 1979, p. 389։

Վալլըրսթայն այս հարցումին պատասխանը չունի, այլ կը փորձէ առաջարկել զայն պատասխանելու եղանակներ.

«Աշխարհի-կայսրութիւնը [world-empire] եւ աշխարհի-տնտեսութիւնը [world-economy]՝ իրենց տնտեսվարութեան, քաղաքականութեան եւ մշակութային արտայայտութիւններուն առումներով, կը ներկայացնեն հասարակական համակարգներու երկու խիստ տարբեր տեսակներ։ Աշխարհի-կայսրութիւնը կը սահմանուի իբրեւ մէկ հասարակական տնտեսութիւն (աշխատանքի բաժանում)՝ կամարաձեւ քաղաքական կառուցուածքով։ Աշխարհի-տնտեսութիւնը կը սահմանուի իբրեւ մէկ հասարակական տնտեսութիւն՝ որ կը պարունակէ բազմակի պետական կառուցուածքներ։ Այս երկու համակարգները ունին տարբեր արտադրութեան եղանակներ։ Աշխարհի-կայսրութիւնը կը գործածէ վերաբաշխային/հարկային եղանակ, ուր դրամատիրական կուտակումը առաւելագոյնի չէ հասցուած եւ ուր հիմնական վերաբաշխումը կը հանդիսանայ քաղաքական որոշումներուն գործառնութիւնը։ Աշխարհի-տնտեսութիւնը կը գործածէ դրամատիրական եղանակը, ուր դրամատիրական կուտակումը *ինքնին* կը հանդիսանայ հասարակական գործողութեան վերահսկիչ նկատառութիւնը եւ այս նպատակը կը հետապնդուի շուկային ընդմէջէն, որ արդարեւ մեծ մասամբ լոկ *մասնակիօրէն* «ազատ» է քաղաքական եւ հասարակական հարկադրանքէ։»[38]

Դրամատիրական շարժումին մէջ, աշխարհի-տնտեսութիւնը ի վերջոյ իր մէջ կ'ընդելուզէ աշխարհի-կայսրութիւնը, ստեղծելով կեդրոնի՝ աշխարհի-տնտեսութեան համար ծայրամասային գօտիներ։

«Ինծի համար յստակ է՝ որ 1750-1873-ի ժամանակաշրջանին, դրամատիրական աշխարհի-տնտեսութիւնը իբրեւ ծայրամասային գօտիներ իր շրջապատին մէջ ընդգրկեց Ռուսաստանը, Օսմանեան Կայսրութիւնը, Հնդկաստանը, Արեւմտեան Ափրիկէն եւ հաւանաբար ուրիշ տարածութիւններ (կամ Ռուսաստանի պարագային՝ կիսածայրամասային գօտիներ)։»[39] Օսմանեան Կայսրութեան պարագային, իր վարած աշխարհի-կայսրութեան աղօտ ու դանդաղ ենթարկուածութիւնը դրամատիրական աշխարհի-տնտեսութեան կրնայ սկսած ըլլալ ԺԷ. դարէն սկսեալ, բայց իր վերջնագիծը կարելի է համարել Վալլըրսթայնի 1873 թուականը, որ մէկ տարի տարբերութեամբ կը համապատասխանէ Տուրալի եւ Էրթէմի աշխատաւորական կազմակերպուած գոյութեան թուականին։

[38] Անդ, էջ 389-390։

[39] Անդ, էջ 392։

«Ամէն պարագայի, քիչեր կրնան չհամաձայնիլ՝ որ ԺԹ. դարուն Օսմանեան Կայսրութիւնը ոչ մէկ կերպ կը հանդիսանար ինքնա-բովանդակ հասարակական տնտեսութիւն մը։ Ան յստակօրէն դարձած էր ծայրամասային տարածութիւն», դիտել կու տայ Վալլըրսթայն։[40]

Երկու բառեզրային փոխանակում։ Թէեւ Վալլըրսթայնի աշխարհի-կայսրութիւն եզրը իբրեւ տնտեսական եղանակ լիովին կը համապատասխանէ Օսմանեան Կայսրութեան դրութեան, բայց զայն իր աւելի ընդհանուր (ոչ միայն Օսմանեան) իմաստով կարելի է համաձանեցնել Մարքսի նախասկզբնական կուտակումին հետ, իսկ աշխարհի-տնտեսութիւնը՝ դրամատիրական գլխաւոր կուտակումին հետ։ Որով յստակ կը դառնայ Կայսրութեան ուղղութիւնը դէպի ազգային պետութիւն։

Բայց ըլլալով ծայրամասային դրամատիրութիւն, Կայսրութիւնը ինքը ենթարկուած պիտի ըլլար ուրիշ՝ արեւմտեան «կեդրոնական» դրամատիրութիւններու ազգային պետութիւններու նկրտումներուն։

Մինչդեռ Կայսրութիւնը ինքը կ'ընթանար դէպի ազգային պետութիւն՝ որուն ամենաբացայայտ ու ամենավերջին արտայայտութիւնը մարմնաւորուեցաւ հայոց ցեղասպանութեամբ, ինքը եւս եւրոպական դրամատիրութեան եւ անկէ ծագած ազգային պետութիւններու կազմաւորումին պատճառով ենթարկուեցաւ կազմալուծումի։

Ահաւասիկ Օսմանեան Կայսրութեան ԺԹ.-Ի. դարերու իրադարձութիւններէն քանի մը թուական.

- 1813՝ սերպիացիներուն ապստամբութիւնը։
- 1821՝ Յունական Անկախութեան Պատերազմին սկիզբը։
- 1830՝ ֆրանսացիները կը գրաւեն Ալճերիան։
- 1832՝ յունական անկախութիւնը կը պաշտօնականացուի։
- 1862՝ կը հաստատուի միացեալ ռումանական ինքնավար պետութիւնը։
- 1878՝ Սան Սթեֆանոյի դաշնագիրը կը ճանչնայ ռումանական եւ սերպիական անկախութիւնը եւ կը հաստատէ պուլկարական ինքնավարութիւնը։
- 1878՝ Բրիտանիա կը գրաւէ Կիպրոսը։
- 1881՝ Թունիս կը դառնայ ֆրանսական գաղութ։
- 1882՝ Եգիպտոս կը դառնայ բրիտանական հովանաւորութեան տակ։
- 1885՝ Արեւելեան Ռումելա կը փոխադրուի պուլկարական իրաւասութեան տակ։
- 1908՝ Պուլկարիա կը դառնայ լրիւ անկախ։

[40] Անդ, էջ 397-398։

- 1908՝ Աւտրօ-Հունգարիան կ'անջատէ Պոսնիան։

- 1912՝ իտալացիները կը գրաւեն Լիպիան, վերջ տալով Օսմանեան Կայսրութեան 340-ամեայ գոյութիւնը Ափրիկէի մէջ։

- 1912՝ Ալպանիա կը յայտարարէ իր անկախութիւնը։

- 1912՝ Առաջին պալքանեան պատերազմին պատճառով, Օսմանեան Կայսրութիւնը կը կորսնցնէ եւրոպական տարածքներուն մեծամասնութիւնը։

- 1914՝ Բրիտանիա կ'անջատէ Կիպրոսը։

- 1915՝ Հայոց ցեղասպանութիւնը։[41]

Ընհանուր գիծերով, այս ցուցակը տնտեսական-աշխարհագրականօրէն կարելի է բաժնել երեք մասի.

ա.- Եւրոպական տարածութիւններու կորուստը, կատարուած եւրոպական երկիրներուն կողմէ, այդ տարածութիւններուն վրայ ստեղծելու կեդրոնական ազգային պետութիւններ եւ դրամատիրութեան կեդրոններ։

բ.- Հիւսիսային Ափրիկէի կորուստը, որ կատարուեցաւ հիւսիսային միջերկրականի կեդրոնական ազգային պետութիւններու եւ կեդրոնական դրամատիրական երկիներու (Ֆրանսա, Իտալիա, Բրիտանիա) գաղութատիրութեան միջոցով, այդ տարածքներուն վրայ ստեղծելով ծայրամասային ազգային պետութիւններ եւ ծայրամասային դրամատիրական համակարգներ։

գ.- Առաջին Համաշխարհային Պատերազմը (ԱՀՊ) իբրեւ թրքական ազգային պետութեան կազմաւորումի վերջնական ճանապարհ, որուն բնաբանին տակ կատարուեցաւ հայոց ցեղասպանութիւնը Թուրքիոյ արեւելեան տարածքներուն (Արեւմտեան Հայաստան) վրայ։

Այս երեք կէտերն ալ կ'ամփոփուին իմփերիալիզմի հովանիին տակ եւ իրենց իմաստը կը ստանան անկէ։ Իմփերիալիզմը՝ որ սկսած է ԺԸ. դարու վերջաւորութեան, իր գագաթնակէտային հանգոյցը գտաւ ԱՊՀ-ի ընդմէջէն։

1914-ին, տակաւին ԱՀՊ-ի սկիզբը, Հերման Կորթէր այս պատերազմը դիտած էր իմփերիալիսթական պատերազմներու բնաբանին տակ։ Նախապատերազմական դարաշրջանի իմփերիալիսթական պատկերը տուած է այսպէս.

«Դրամագլուխի հսկայական աճը՝ որ յառաջացած է ԺԹ. դարու արտադրական ուժերու ընդլայնումով, կը հանդիսանայ իմփերիալիզմի աղբիւրը։ Իմփերիալիզմը բոլոր ուժեղ պետութիւններու ձգտումն է զաւթելու նոր տարածութիւններ, մասնաւորապէս Ասիոյ եւ Ափրիկէի մէջ։

«Այնպէս ինչպէս տնտեսական բնագաւառին մէջ ազատ մրցակցութիւնը ստիպուած էր տեղի տալ տրեստերու եւ քարթէլներու մենատիրութեան, այն-

[41] 'Timeline of the Ottoman Empire', *Wikipedia*։

պէս ալ քաղաքական բնագաւառին մէջ իւրաքանչիւր ուժեղ դրամատիրական պետութիւն կը ձգտի մենաշնորհեցնել հողը եւ շահագործել օտար երկիրները։

«Նոր իմփերիալիզմի առաջին շարժումը՝ անոր ծննդեան պահը, կը հանդիսանայ Անգլիոյ գրաւումը Եգիպտոսին։ Ապա կու գայ Չինական-Ճափոնական Պատերազմը եւ Քորէայի նուաճումը, Սպանիական-Ամերիկեան Պատերազմը եւ Քուպայի ու Ֆիլիփիններու գրաւումը, Հիւսիսային Ափրիկեան Պատերազմը, եւրոպական արշաւը Չինաստանի դէմ եւ Ռուս-Ճափոնական Պատերազմը։

«Այդ ժամանակ արդէն աշխարհը ամբողջապէս բաժնուած էր։ Ազատ երկիր գրեթէ չէր մնացած, նոյնիսկ Ափրիկէի մէջ։

«Յետոյ մէկ ճգնաժամին կը փոխարինէ ուրիշը։ Զանազան մեծ ուժերը եռանդագին կերպով կը տենչային տիրանալ փոխադարձ ունեցուածքներուն։

«Մարոքի Ճգնաժամը կը սպառնար երեք տարբեր առիթներով խորտակել Եւրոպայի խաղաղութիւնը, Պալքանի Ճգնաժամը՝ երկու առիթներով։ Ապա կարգը կը հասնի Թրիփոլիի համար մղուած Իտալական-Թրքական Պատերազմին, ինչպէս նաեւ սերպիական, պուլկարական եւ յունական պատերազմներուն՝ որոնք ջանացին կորզել Թուրքիոյ տարածութենէն մաս մը։

«Այսպէս, լարուածութիւնները աստիճանաբար դարձան աւելի լուրջ։ Թուրքիոյ քայքայումը սանձազերծեց տիրապետելու հանդէպ բոլոր մեծ ուժերուն ունեցած կիրքերը, ագահութիւնը եւ ծարաւը։ Գերմանիան կ՚ուզէր գրաւել Փոքր Ասիան, Միջագէտքը, Պելճիքական Քոնկոն, Ֆրանսական Քոնկոն, Հոլանտական Արեւելեան Ինտիան, փորթուկալական գաղութները՝ միացեալ ափրիկեան կայսրութիւն մը որ կը տարածուի ցամաքամասի արեւելքէն մինչեւ արեւմուտք, Մարոք, եւ հաւանաբար նաեւ կարգ մը անգլիական գաղութներ։ Ֆրանսան կ՚ուզէ պահպանել անցեալ դարուն զաւթած իր ընդարձակ գաղութային կայսրութիւնը եւ, եթէ կարելի է, զայն ընդարձակել մինչեւ Սուրիա, Փոքր Ասիայէն մաս մը եւ Ափրիկէի գերմանական տարածաշրջանները։

«Իտալիան կը ձգտի ընդարձակել իր տարածութիւնները Ափրիկէի մէջ եւ, եթէ կարելի է, արեւելեան Միջերկրականի մէջ եւս։ Անգլիան կ՚ուզէ պահել ինչ որ ունի եւ Ափրիկէն վերածել անգլիական ցամաքամասի։ Ան կ՚ուզէ միացեալ կայսրութիւն մը՝ որ կը տարածուի Բարեյուսոյ Գլուխէն մինչեւ Եգիպտոս, եւ Սուէզի Ջրանցքի ընդմէջէն դէպի Միջագէտք, Պարսկաստան, Աֆղանիստան եւ Հնդկաստան։

«Գերմանիա, Ֆրանսա, Ռուսաստան, Անգլիա եւ Ճափոն բոլորն ալ կը ձգտին գրաւել Չինաստանը։

«Հոլանտան կ՚ուզէ պահպանել Հոլանտական Արեւելեան Ինտիան: Պելճիքան եւ Փորթուկալը նոյնը կ՚ուզեն Քոնկոյի եւ Փորթուկալի ափրիկեան գաղութներուն առնչութեամբ:

«Աւստրօ-Հունգարիան կ՚ուզէ Ադրիականի արեւելեան ծովեզերքը, Սերպիան կ՚ուզէ Մակեդոնիայէն մաս մը եւ անցք դէպի Եգէական Ծով:

«Ռուսաստան կ՚ուզէ Պալքանները, Թուրքիան, Փոքր Ասիան, Պարսկաստանը, Մոնկոլիան եւ թերեւս նաեւ Խաղաղական Ովկիանոսի վրայ նաւահանգիստներ:»[42]

Իմփերիալիզմի այս իրերամէջ, իրերայաջորդ եւ իրերամերժ յարաբերութիւններուն մասին այսպէս կը դիտէ Հենք Վեսելինք.

«Պատմութեան դասագիրքերուն մէջ 1871-1914-ը յայտնի է իբրեւ իմփերիալիզմի դարաշրջան: Այս շրջանին եւրոպական ուժերը աննախադէպ չափով իրենց իշխանութիւնը տարածեցին աշխարհի վրայ: 1870-ին, Նիտեռլանտական Ինտիային վրայ հոլանտացիներուն ունեցած իշխանութիւնը սահմանափակուած էր Ժաւայով եւ ուրիշ կղզիներու քանի մը առաջաւոր դիրքերով: Հնդկաչինի կառավարումը Ֆրանսայի կողմէ իրապէս աննշան էր, մինչ բրիտանացիները դեռ նոր սկսած էին Հնդկաստանի վրայ իրենց իշխանութիւնը վերահաստատել 1857-ի ապստամբութենէն ետք: 1914-ին, եւրոպացիները կ՚իշխէին գրեթէ ամբողջ հարաւը եւ հարաւ արեւելեան Ասիան: Նմանապէս, 1870-ին, եւրոպացիներուն համար Ափրիկէն տակաւին մեծապէս անծանօթ տարածութիւն մըն էր: Բնակումները սահմանափակուած էին Հարաւային Ափրիկէի եւ Ալճերիոյ մէջ, թէեւ կը գտնուէին նաեւ արեւմտեան Ափրիկէի ծովեզերքը ցրուած քանի մը եւրոպական սեփականութիւններ, ինչպէս նաեւ փորթուկալական տարածութիւններ Մոզամպիքի մէջ: Արդարեւ, 1914-ին, եւրոպական իշխանութիւնը տարածուեցաւ ամբողջ ցամաքամասին վրայ՝ բացառութեամբ Լիպերիայի եւ Եթովպիայի: Միաժամանակ, եւրոպական ազդեցութիւնը աճեցաւ նաեւ Օսմանեան Կայսրութեան, Պարսկաստանի եւ Չինաստանի մէջ:»[43]

Այս բոլորը տեղի ունեցաւ պատերազմի, ռազմական գործողութիւններու, ցեղասպանութիւններու (ինչպէս 1904-ի Հերերոներուն ցեղասպանութիւնը) եւ սարսափելի սպանութիւններու միջոցով:

---

[42] Hermann Gorter, *Imperialism, the World War and Social Democracy, 1914*, https://www.marxists.org/archive/gorter/1914/imperialism.htm:

[43] Henk Wesseling, ‘Imperialism & the Roots of the Great War’, *Daedalus*, Vol. 134, No. 2, Spring 2005, p. 100:

Իմփերիալիսթական այս պատերազմները ունէին մէկ նպատակ՝ դրամագլուխի շրջանառութիւնը, դրամի կուտակումի եւ յաւելեալ արժէքի յառաջացումի եւ իւրացումի բնաբանին մէջ: Իր 1914 թուականի գիրքին մէջ, Հերման Կորթերին՝ ներկայացնելէ ետք իմփերիալիսթական երկիրներու նկրտումներուն յատկացուած վերոյիշեալ միտքը, այդ ամբողջ ընթացքը կը կապէ նոր շուկաներ եւ ներդրումներ հաստատելու դրամատիրական պահանջ-պարտադրանքին հետ.

«Բոլոր պետութիւնները շուկաներ կը փնտռեն իրենց արտադրութիւնը ծախելու եւ իրենց դրամագլուխին համար բարձր եկամտաբեր ներդրումներ կատարելու համար:

«Իմփերիալիզմը կը փնտռէ ոչ միայն սոսկ գաղութներ այլեւ իր առեւտուրին եւ արդիւնաբերական ու ֆինանսական մենատիրութեան համար ազդեցութեան ոլորտներ: [...]

«Ուրեմն, առաջին համաշխարհային պատերազմին պատճառը դրամատիրութիւնն է՝ ընդարձակուիլ փորձող համաշխարհային դրամատիրութիւնը:

«Դրամատիրութեան զարգացումի ընթացքը կը հանդիսանայ ոճրագործութեան իւրայատուկ կերպով արիւնալի պատմութիւն մը: Մրցակիցներու, աշխատաւորներու եւ օտար ու տեղացի բնակչութեան ոճրագործութիւն:»[44]

ԱՀՊ-ի ընթացքին գրած իր գիրքին մէջ, Նիքոլայ Պուխարին կը խօսի դրամատիրական շրջանի պատերազմներուն մասին ընդհանրապէս.

«Պէտք է յիշենք՝ որ դրամատիրական գործողութեան կարգաւորող սկզբունքը շահերու կուտակումն է: Պատերազմը կը հանդիսանայ արդի քաղքենիութեան «գործարարական գործողութիւններ»-էն մէկը:»[45]

Այս առումով, ԺԹ. դարու իմփերիալիսթական-գաղութատիրական պատերազմները տարբեր էին նախորդ շրջաններու պատերազմներէն: Այս տարբերութեան մասին Հենք Վեսելինկ կը գրէ.

«Գաղութատիրական պատերազմներուն գլխաւոր յատկանիշը այն էր՝ որ հրահրուած էին ոչ թէ սոսկ թշնամիին յաղթելու այլեւ հակառակորդի տարածաշրջանը կցելու եւ բնակչութիւնը ենթարկելու մղումով:

«Ինչպէս Քլաուսեւիցի յայտնի բանաձեւը կ'ըսէ՝ «պատերազմը քաղաքականութեան շարունակութիւնն է ուրիշ միջոցներով:» Ուրիշ բառերով, քաղաքական նպատակները կը սահմանեն պատերազմը: Եւրոպական «սովորական»

---

[44] Hermann Gorter, նշ. աշխ.ը:

[45] Nikolai Bukharin, *Imperialism and World Economy*, New York: International Publishers, 1929, p. 148:

պատերազմներուն մէջ նպատակները յաճախ սահմանափակ էին։ Խաղաղութեան համաձայնութիւնները յաճախ կը բովանդակէին տարածութեան յանձնում, որ սովորաբար կը վերաբերէր միայն մասնաւոր շրջանի մը։ Ի տարբերութիւն ասոր, գաղութատիրական պատերազմները բացարձակ էին՝ գաղութատէր զաւթիչները եկած էին մնալու համար։ Իրենց նպատակն էր բնակչութեան տեւական եւ ամբողջական ենթարկուածութիւնը։»[46]

Իբրեւ իմփերիալիզմի հանգոյց, ԱՀՊ-ը կը հանդիսանար դրամատիրական յարաբերութիւններու վերակազմաւորումի եւ դրամատիրական ազդեցութիւններու ընդլայնումի համար մղուած պատերազմ մը։

Քրիս Հարման կը բացատրէ ԱՀՊ-ին մասնակցած երկիրներուն դրամատիրական-նուաճողական նպատակները.

«Թէ՛ զօրավարները եւ թէ՛ արդիւնաբերողները կարողացան տեսնել՝ որ երկրամասեր ձեռք ձգելով պիտի աւելնայ իրենց տրամադրութեան տակ գտնուող տնտեսական աղբիւրները։ Պատերազմի նպատակները ընդհանուր վերասահմանումի ենթարկուեցան, պարփակելու համար ոչ միայն Ասիոյ կամ Ափրիկէի գաղութներուն սոսկ յափշտակումը կամ պաշտպանութիւնը, այլեւ Եւրոպայի մէջ տարածութիւններու, մասնաւորապէս արդիւնաբերական կամ կիսա-արդիւնաբերական տարածութիւններու, գրաւումը։ Ասիկա Գերմանիոյ համար կը նշանակէր կցել Ֆրանսական Լոթարինգիայի երկաթաքար արտադրող շրջանները, գերմանական վերահսկողութիւն հաստատել Պելճիքայի, միջին Եւրոպայի եւ Ռումանիոյ վրայ եւ գերմանական ազդեցութեան ոլորտ հաստատել Թուրքիոյ եւ Միջին Արեւելքի մէջ՝ Պեռլին-Պաղտատ երկաթուղիի շուրջ։ Ֆրանսայի համար կը նշանակէր վերազաւթել Էլզաս-Լոթարինքիան եւ որոշ չափով վերահսկողութիւն հաստատել Գերմանիոյ Ռայնլանտ շրջանին վրայ։ Ռուսաստանի համար կը նշանակէր Իսթանպուլի կցումը (զոր Բրիտանիա խոստացած էր գաղտնի պայմանագիրով մը)։ Ինչպէս անհատ դրամատէրերը կը ձգտէին իրենց դրամագլուխը ընդլայնել տնտեսական մրցակցութեան միջոցով, այնպէս ալ դրամատէրերու խումբերը՝ որոնք իրարու հետ կապուած էին ազգային պետութիւններով, կը ձգտէին իրենց դրամագլուխը ընդլայնել ռազմական մրցակցութեան եւ պատերազմի միջոցով։ Իմփերիալիզմը այլեւս միայն գաղութներու մասին չէր, թէեւ վերջիններս կը մնային կարեւոր։ Ան այժմ ամբողջական համակարգ մըն էր՝ ուր ոչ մէկը կրնար գոյատեւել դրամատիրութիւնը առանց փորձելու ընդլայնուիլ ուրիշի հաշուին, համակարգ մը՝ որուն տրամաբանութիւնն էր ամբողջական ռազմականացումը

[46] Henk Wesseling, նշ. յօդ.ը, էջ 104։

եւ ամբողջական պատերազմը, անկախ ասոր պատճառած ընկերային տեղահանութեան:»[47]

Իմփերիալիզմը եւ գաղութատիրութիւնը, արդարեւ, սերտօրէն կապուած են ազգային պետութեան հետ: Առանց ուժեղ ու կեդրոնական ազգային պետութեան՝ անկարելի պիտի ըլլար իմփերիալիզմը: Մայքըլ Հարտդ եւ Անթոնիօ Նեկրի 2000-ին կը գրեն այս յարաբերութեան մասին.

«Ազգային պետութեան ինքնիշխանութիւնը կը հանդիսանար իմփերիալիսթներուն անկիւնաքարը՝ զոր եւրոպական ուժերը կառուցեցին արդի ժամանակաշրջանի ընդմէջէն: [...] Ազգային պետութեան արդի համակարգին կողմէ ճշդուած սահմանները էական էին եւրոպական գաղութատիրութեան եւ տնտեսական ընդլայնումին համար, քանի որ ազգի մը տարածաշրջանային սահմանները սահմանագծեցին ուժի կեդրոնը որուն միջոցով կարելի եղաւ իշխանութիւն բանեցնել արտաքին օտար տարածութիւններու վրայ, օգտագործելով ուղիներու եւ խողովակներու այնպիսի համակարգ մը՝ որ յաջորդաբար դիւրացուց եւ խափանեց արտադրութեան եւ շրջանառութեան հոսքերը: Իրապէս իմփերիալիզմը եւրոպական ազգային պետութիւններու ինքնիշխանութեան ընդլայնումն էր իրենց սեփական սահմաններէն անդին:»[48]

Ազգային պետութեան եւրոպական համակարգի կառուցումը ԺԹ. դարու իմփերիալիթական շրջանին իր համոզիչ լուծումը գտաւ ԱՀՊ-ին ընդմէջէն, կազմալուծելով վերջին կայսրութիւնները[49]: Ռոպըրթ Կերուարթ եւ Ֆրէզ Մանելա կը բացատրեն.

«Երբ 1918-ի վերջաւորութեան դաշնակիցներու յաղթանակով պաշտօնապէս աւարտեցաւ Առաջին Համաշխարհային Պատերազմը, երեք ընդարձակ եւ դարաւոր հողային կայսրութիւններ՝ Օսմանեան, Հապսպուրկեան եւ Ռոմանովի

---

[47] Chris Harman, *A People's History of the World*, London, Chicago and Sydney: Bookmarks Publications Ltd, 1999, p. 409:

[48] Michael Hardt and Antonio Negri, *Empire*, Cambridge (Massachusetts), London: Harvard University Press, 2000, p. xii:

[49] Միջանկեալ պէտք է յստակել՝ որ Խորհրդային Միութիւնը կարելի չէ կայսրութիւն անուանել, քանի որ ան չէր կառավարուեր կայսրութեան մը սկզբունքներով: Անիկա ազգային պետութիւններու «հաւաքածոյ» մըն էր, յստակօրէն գծագրուած ազգային սահմաններով (հոգ չէ թէ անոնք երբեմն գծուած էին կամայական ու բռնի մօտեցումով, բայց, միեւնոյնն է, սահմանները կը գտնուէին ամենայն յստակութեամբ), եւ տնտեսական առումով կը ներկայացնէր պետական դրամատիրութեան համակարգ մը: Իր վերէն վար նայող նուիրապետական իշխանակութիւնը հեռու էր ընկերվարական դասական նմոյշ մը ըլլալէ, ալ ուր մնաց որեւէ նմանութիւն ունենալէ Փարիզի Քոմիւնին հետ:

կայսրութիւնները, անհետացան քարտէսէն։ Չորրորդ մը՝ Հոհենցոլլէրնի կայսրութիւնը, որ պատերազմի վերջին տարին՝ շնորհիւ միջին-արեւելեան Եւրոպայի մէջ գրաւած հսկայ տարածաշրջաններուն, դարձած էր հողային մեծ կայսրութիւն մը, նշանակալիօրէն նուազեցաւ իր տարածութիւնը, զրկուեցաւ իր անդրծովեայ գաղութներէն եւ ձեւափոխուեցաւ խորհրդարանական ժողովրդավարութեան [...]։ Արեւմտեան եւրոպական յաղթական կայսրութիւնները եւս անմաս չմնացին պատերազմի դղրդիւնէն. բրիտանական կանոնաւոր ու անկանոն ուժերուն դէմ արիւնոտ հայդուկային պատերազմէ ետք Իռլանտան կը ստանայ իր անկախութիւնը։ Աւելի հեռուն՝ Եգիպտոսի, Հնդկաստանի, Իրաքի, Աֆղանիստանի եւ Պուրմայի մէջ տեղի ունեցած խռովութիւններուն Բրիտանիան պատասխանեց գործադրելով նշանակալի բռնութիւն։ Ֆրանսան հակահարուածեց իր կայսերական նկրտումներուն դէմ յառաջացած դիմադրութիւնը Ալճերիոյ, Սուրիոյ, Հնդկաչինի եւ Մարոքի մէջ եւ, նոյնիսկ Մեծ Պատերազմի գլխաւոր թատերաբեմերէն հեռու, նոյն բանը Ճափոն ըրաւ Քորէայի մէջ։ Աշխարհի գործերուն առնչութեամբ ինքզինք գտնելով աննախընթացօրէն կարեւոր եւ ազդեցիկ դիրքի վրայ, Միացեալ Նահանգները կը պայքարէր սահմանելու իր դերը աշխարհի մէջ, ինչպէս նաեւ իր հանրապետական աւանդոյթները համաձայնեցնելու իր աճող ուժին եւ կայսերական ոլորտի ընդարձակումին հետ։»[50]

Հայոց ցեղասպանութիւնը իմփերիալիսթական գործողութիւն մըն էր։ Ան մաս կը կազմէր նոր աշխարհակարգի ստեղծումին, ահեղ պատերազմներուն եւ ազգագրական զտումներուն։

Եւրոպական իմփերիալիզմը քայքայեց Օսմանեան Կայսրութիւնը՝ բուն եւրոպական հողերուն վրայ հիմնելով հիմնահոսանքային դրամատիրութիւնը, իսկ Օսմանեան Ափրիկէն դարձուց եւրոպական գաղութներ՝ պարտադիր ծայրամասային դրամատիրութեան մէջ ընկղմած։ Թուրքիոյ արեւելեան տարածաշրջանը՝ որ ԱՀՊ-ի ժամանակ կը ներկայացնէր դրամատիրական նախնական կուտակումի եւ աւատատիրական յարաբերութիւններու խառնուրդ մը, այս անգամ խաղաղաշտ դարձաւ նոյն ինքը իմփերիալիզմի ենթարկուող Օսմանեան Կայսրութեան իմփերիալիսթական նկրտումին։ Եւ չկար հայկական դրամատիրութիւն որպէսզի Հայաստանը մտցնէր ուժային խաղի մէջ։ Աւելի ճիշդ, չենք կրնար ըսել որ հայկական դրամատիրութիւն չկար, բայց կրնանք ըսել՝ որ

---

[50] Robert Gerwarthe and Erez Manela, 'The Great War as a Global War: Imperial Conflict and the Reconfiguration of World Order, 1911-1923', *Diplomatic History*, Vol. 38, No. 4, 2014, p. 786։

այդ դրամատիրութիւնը գործեց շատ տեղեր, բացի այդ ժամանակուայ Հայաստանի՝ արեւելահայաստանի, տարածքէն։ Արեւելեան Հայաստանը մնաց իբրեւ անցում՝ դրամագլուխի շրջագայութեան համար արեւելքէն դէպի արեւմուտք եւ հակառակը, սոսկ անցում մը՝ որ նոյնիսկ ծայրամասային դրամատիրութեան համար օգտակար անկիւն մը չէր ներկայացներ, անցում մը՝ որ աւելի լաւ կ'ըլլար եթէ բնաւ գոյութիւն չունենար։ Կարելի՞ է ըսել՝ որ հայերը զարգացնելով, օրինակ, Ազըրպէյճանի նաւթարդիւնաբերութիւնը (Ալեքսանդր Մանթաշեւ), ուրեմն, օգնելով Ազըրպէյճանի տարածքը վերածուելու դրամատիրական շրջանառութեան թատերաբեմ, անձամբ նպաստեցին այժմ հայերուն թշնամի այդ տարածութեան ամբողջականութեան պահպանումին, այլեւ, խորհրդային դրամատիրական յարաբերութիւններու արշալոյսին, Ազըրպէյճանին կցուելով յաւելեալ տարածութիւն մը՝ Լեռնային Ղարաբաղը։ Պարզամիտ հարցում մը, որ, այսուհանդերձ, մտածելու դուռ պէտք է բանայ։

Լուրջ մտածումի առիթ պէտք է ընծայէ նաեւ Սարդարապատի ճակատամարտը։ Սարդարապատի նախօրեակի թրքական յարձակումը իմփերիալիզմի շարունակութիւնն էր, որուն նպատակներէն մէկն էր Հայաստանը իբրեւ դրամատիրութեան շրջանառութեան համար անցում (բայց ոչ գործիչ) հանդիսացող աւելորդ տարածքի մը վերացումը։ Ի՞նչն էր որ Հայաստանը փրկեց վերջնական կործանումէ։ Անարշիզմը։ Ժողովրդեան անարշիզմը՝ մարմնաւորուած ինքնաբուխ (ոչ վերադիր) ազգայնականութեան, ինքնակազմակերպութեան, ինքնագիտակցութեան եւ վարակիչ համակեցութեան մէջ։ Թիֆլիսի մէջ քնացած ազնուատոհմ հայ իշխանականները՝ Հայաստանի գերագոյն հրամանատարները, բացարձակապէս չկային Սարդարապատի ճակատամարտին մէջ։ Եւ լաւ է որ չկային, այլապէս, այս պարագային, կրնային խանգարել ժողովրդեան որոշումները։ Բնականաբար, անարշիզմ չի նշանակեր անհատներու դերի բացակայութիւն, իսկ անհատներ կային Սարդարապատի մէջ, զօրավար Անդրանիկը ըլլալով անոնցմէ մէկը։ Բայց այդ անհատներու դերն էր ճիշդ ուղղութիւն տալ արդէն ամէն բանէ անկախ շարժած զանգուածին։

Սարդարապատը բացառիկ նմոյշ մըն է անարշիզմ-իմփերիալիզմի միատեղ հակադրութեան, անարշիզմը՝ վարէն վեր ընթացող համակեցական շարժում մը (հայկական ինքնակազմակերպութիւնը), որ կարողացաւ դիմագրաւել վերէն վար ընթացող դրամատիրական-մենատիրական շարժումը (թրքական յարձակումը եւ անոր դրդապատճառները)։

## ՎԵՐԱԴԱՐՁ ԴԷՊԻ ՓԱՐԻԶԻ ՔՈՄԻՒՆ

Այս կէտին, արդէն ժամանակն է վերադառնալ Փարիզի Քոմիւնին: Քոմիւնին կարգախօսը, անկասկած, եղած է հաւասար օգուտը բոլորին, ինչպէս տեսանք վերը: Վերացնելով բոլոր ուժային կեդրոնականութիւնները՝ Պետական իշխանութիւնը եւ դրամատիրական կուտակումային համակարգը, իւրաքանչիւր անձ հաւասարապէս առիթ կ'ունենայ մասնակցիլ բարիքներու ստեղծումին եւ իւրացումին: Ի՞նչ կրնար պատահիլ՝ եթէ Քոմիւնի օրինակը տարածուէր ամբողջ աշխարհ՝ ներառեալ Օսմանեան Կայսրութիւնը: Բնականաբար, նախ Կայսրութիւնը պիտի կազմալուծուէր, բայց ոչ թէ վերէն որոշուած ազգային պետութիւններու ազդեցութեան տակ, այլ վարէն բխած հասարակական համատեղ շարժումի ու համակեցութեան պատճառով, ուր ամէն խումբ բնականաբար ու բնազդաբար ձեռք պիտի ձգէր ինքնավարութիւն՝ սերտագոյն կապերու մէջ մնալով իր դրացիներուն հետ:

Կարելի պիտի ըլլար ստեղծել պետութիւններ՝ առանց ազգային պետութիւններու, ուր իւրաքանչիւր անձ եւ խումբ ունենային բացարձակ ազատութիւն, իրենց ազատութեան համար չսպասելով պետութեան օրէնքներուն եւ արտօնութիւններուն:

Ծանօթ է, որ հռաշալի ու հանրագիտակ մտաւորական Էտուարտ Սայիտ, Պաղեստինի պետութեան խնդիրին համար տարբեր ժամանակներ առաջարկած էր տարբեր լուծումներ: Հետաքրքրական է, որ ասկէ ընդամէնը քանիհինգ տարի առաջ՝ իբրեւ իր լուծումներէն մէկը, կ'առաջարկէր երկպետութեան ստեղծումը՝ Պաղեստին-Իսրայէլ, ուր երկու ժողովուրդները կարող ըլլային ապրիլ համակեցաբար, իւրաքանչիւրը իր բարքով ու մշակոյթով: Բնականաբար, ասիկա կրնար ըլլալ ժամանակակից պատմութեան առաջին բազմաէթնիք պետութեան օրինակ մը:

Ցեղասպանութիւններուն հարցը կարելի չէ լուծել այն նոյն գործիքներով՝ որոնք պատճառ հանդիսացած են անոնց կայացումին: Ցեղասպանութիւնները ինքնին կը վերանան՝ երբ վերջ տրուին անոնց ծնունդ տուող պատճառները:

Մերրիման իրաւացիօրէն յետ-քոմիւնեան ջարդը կը կապէ հայոց Եղեռնին հետ: Ուրեմն, բուն Քոմիւնը կարելի է կապել ոչ-եղեռնի գաղափարին հետ: Համերաշխութեան, համակեցութեան, համատեղ բարեկեցութեան եւ ուժային պաշտամունքի չգոյութեան պայմաններուն մէջ սպանութիւններ ու ցեղասպանութիւններ չեն կատարուիր: 1983-ին տուած հարցազրոյցի մը մէջ, Անրի Լըֆեպր կը նկարագրէ Փարիզի Քոմիւնի ականատեսի մը վկայութիւնը,

հիմնուելով Միլանի Ֆերթրինելլի Հիմնարկին մէջ գտնուող փաստաթուղթի մը վրայ.

«Քոմիւնի մասին օրագրութիւն մըն է ան: Օրագրողը, ի միջի այլոց, աքսորւեցաւ, եւ տարիներ ետք՝ 1880-ին մօտերը, վերադառնալով աքսորավայրէն իր հետ բերաւ օրագրութիւնը: Ան կը պատմէ, թէ ինչպէս 1871 Մարտ 28-ին Թիէրի զինուորները եկան վերցնելու Մոնմարթրի մէջ եւ Պելվիլի բարձունքներուն վրայ գտնուող թնդանօթները: Կիները՝ արթննալով շատ վաղ առաւօտեան, լսեցին աղմուկը, վազեցին փողոց եւ խնդալով, զուարճանալով ու բարեկամական ընդունելութեամբ շրջապատեցին զինուորները: Անոնք գացին, սուրճ բերին եւ զայն հրամցուցին զինուորներուն: Թնդանօթները տանելու համար եկած զինուորները աւելի կամ նուազ չափով հմայուեցան ժողովուրդի վերաբերմունքէն: Նախ կիները, ապա տղամարդիկ, բոլորը դուրս ելան ժողովրդական տօնականութեան մթնոլորտի մէջ: Քոմիւնի թնդանօթին պատահարը երբեք չէր ներկայացներ զինուած հերոսներու կացութիւն մը, ուր հերոսները կու գան եւ կը կռուին թնդանօթները վերցնող զինուորներուն դէմ: Ան երբեք այսպէս չպատահեցաւ: Ժողովուրդն էր որ դուրս եկաւ իր տուներէն, միշտ զուարճացնելով ինքզինքը: Եղանակը գեղեցիկ էր՝ Մարտ 28-ը գարնան առաջին օրն էր, արեւոտ էր: Կիները կը համբուրէին զինուորները, անոնք հանգիստ էին իսկ զինուորները ընդելուզուեցան այս բոլորին մէջ: Փարիզեան ժողովրդական տօնականութիւն մը:»[51]

Տօնականութեան մէջ ապրող ժողովուրդը չի ցեղասպաներ: Իսկ տօնականութեան համար Պետական *իշխանութիւն*ը պէտք է փոխարինել Պետական *համայնք*ով:

Բնաւ բաւարար չէ ըսել՝ որ Օսմանեան Կայսրութեան կազմալուծումը կատարուեցաւ Կայսրութեան աստիճանական տկարացումին պատճառով: Եւրոպական ազգային պետութեան կազմաւորումն էր որ անվերապահօրէն պիտի մղէր առանձին պետութիւններու կազմութիւնը Կայսրութեան հաշուին՝ ըստ էթնիք մեծամասնութիւններու: Եւ ճիշդ այս նոյն ազգային գործիքը որ քանդեց Օսմանեան Կայսրութիւնը՝ թողելով միլիոնաւոր զոհեր, Կայսրութիւնը օգտագործեց վերացնելու իր էթնիք բաղկացուցիչները: Ճնշողն ու ճնշուածը միախառնուեցան, ճնշուածը դարձաւ ճնշող: Բոլորն ալ հաւասար դարձան սպանութեան արդիւնաբերութեան արտադրութեան մէջ:

---

[51] Kristin Ross and Henri Lefebvre, 'Lefebvre on the Situationists: An Interview', *October*, Vol. 79, Winter, 1997, p. 78:

Ազգային պետութիւններու (ինչպէս ամբողջ դրամատիրութեան) մէջ համատեղութիւն չկայ, երկազգային, բազմազգային պետութիւններ չկան։ Կայ միաէթնիք պետութիւն։ Գլխաւոր էթնիքէն անդին գտնուող բոլոր տարրերը կը մտնեն փոքրամասնութիւն անուանումին տակ եւ կ'ենթարկուին մեծամասնականին օրէնքներուն։ Կու գայ օր մը, որ այդ էթնիք փոքրամասնութիւնը՝ եթէ հաւաքուած է սահմանեալ տարածութեան մը վրայ, կրնայ ինք եւս պահանջել անկախանալ եւ դառնալ ազգային պետութիւն։ Ազգային պետութիւն դառնալէ ետք, իր տարածութեան վրայ գտնուող ուրիշ էթնիքները կը դառնան փոքրամասնութիւն, որոնք եւս յետագային կրնան անկախանալ, եւ այսպէս շարունակ։ Այս բնաբանին մէջ, Օսմանեան Կայսրութեան կենսագրութեան վերջաւորութեան տեղի ունեցած պայքարը Կայսրութեան եւ հայկական «աւանդական» կուսակցութիւններուն միջեւ երկկողմանի պայքար մըն էր դէպի ազգային պետութիւնը, մէկ կողմէն թուրքը փորձելով եւ յաջողելով լայն տարածութիւն մը «զտել» կարեւոր էթնիքական տարրէ մը, միւս կողմէն հայը փորձելով եւ ձախողելով այդ նոյն տարածութեան վրայ հիմնել ազգային պետութիւն մը։

Դրամատիրութիւնը անկարելի էր հանգիստ տեղաւորուիլ առանց «միատարր» թուրք ժողովուրդի մը գոյութեան, այսինքն՝ ազգային պետութեան հիմնադրումով, որ երկար ու արիւնալի նախապատրաստութենէ ետք պիտի իրականանար 1923-ին, Թրքական Հանրապետութեան հռչակումով։ Այս նախապատրաստութեան ժամանակ է որ պիտի կատարուէր հայոց ցեղասպանութիւնը։ Ասիկա չի նշանակեր որ Թուրքիա բոլորովին ձերբազատուեցաւ «օտար» տարրերէ քանզի քուրտերուն հարցը այնքան կենդանի է այսօր, իսկ վերջերս նոր թափ ստացաւ իսլամ հայերուն հարցը Արեւմտահայաստանի մէջ։

## ՄՈՒՏՔ

Հողային պահանջատիրութեան մասին անընդհատ կը խօսուի: Բայց երբեք չէ եղած երկարամեայ ծրագիր մը, ուր մանրամասն ու համակողմանի ուսումնասիրուած ըլլայ պահանջատիրութեան հնարաւորութիւնները, մեքանիզմները եւ յաջորդական քայլերը: Ցեղասպանութեան ճանաչումները խորհրդարաններու եւ «միջազգային» դատարաններու կողմէ անպայմանօրէն չէ որ կրնան առաջնորդել հողային վերականգնումի: Ճանաչումը մէկ բան է, գործադրութիւնը բոլորովին ուրիշ:

Բացի այդ, իսպառ կը բացակայի որեւէ պատկերացում՝ թէ հողերը վերստանալէ ետք ինչպէ՞ս տեղի պիտի ունենայ կառավարումը, թէ ինչպէ՞ս կարելի պիտի ըլլայ ղեկավարել ոչ-հայկական մեծամասնութիւն կազմող զանգուածները, թէ ինչո՞ւ այս վերջինները պիտի ընդունին ղեկավարուիլ փոքրամասնութեան մը կողմէ: Եթէ կը հաւատանք այսօրուայ ժողովրդավարական ընտրութիւններուն իբրեւ մեծամասնութեան ձայնի արտացոլում, ուրեմն մեր հողերուն վրայ ո՛չ նախագահը ժողովրդավարօրէն հայ պիտի ընտրուի եւ ո՛չ ալ խորհրդարանին մէջ հայ կուսակցութիւնները մեծամասնութիւն պիտի ունենան: Իմ հասողութենէս վեր եղող այս հարցերուն պատասխանները չէ որ պիտի փորձեմ ներկայացնել: Պատասխանները պէտք էր շատոնց ձեւակերպած ըլլային պահանջատիրութիւնը ոչ-ինքնահաստատումի միջոց ընդունած եւ ոչ-հայրենաշունչ կենացներու խրախճանքի վերածած հայկական խումբերն ու կազմակերպութիւնները: Նպատակս է պարզ պատկերացում մը տալ այսօրուայ աշխարհի եւ Հայաստանի դրութեան մասին, փորձելով ցոյց տալ թէ ուր կը գտնուին աշխարհի, Հայաստանի եւ սփիւռքի իրական ուժերը, որոնց ձեռքն է ենթադրեալ պահանջատիրութեան մը գործադրութիւնը:

## ԿԱՅՍՐՈՒԹԻՒՆ

Դրամատիրական համակարգը մեծ ճամբայ անցած է հայոց ցեղասպանութենէն մինչեւ այսօր: Իմփերիալիզմի դարաշրջանը՝ որուն գագաթնակէտային «պտուղ»-ն էր հայոց ցեղասպանութիւնը Առաջին Համաշխարհային Պատերազմի բնաբանին մէջ, այսօր իր տեղը զիջած է Կայսրութեան դարաշրջանին: Այսօրուայ ծիրին մէջ է որ կարելի է փնտռել պահանջատիրութեան հնարաւորութիւնները՝ եթէ պահանջատիրութիւնը երբեւէ կարելի հասկացողութիւն մըն

է, եթէ երբեւէ կարելի է հողային տարածութիւններու անհամաձայնութիւնները լուծել առանց կաթիլ մը արիւնահոսութեան։

Կայսրութիւն բառեզրը կը գործածեմ Մայքըլ Հարտդի եւ Անթոնիօ Նեկրիի 2000 թուականին գործածած իմաստով, որ կապ չունի դասական կայսրութիւններու (Հռոմէական Կայսրութիւն, Օսմանեան Կայսրութիւն, եւ այլն) հետ։ «Կայսրութիւն» բառը՝ զոր Հարտդ-Նեկրի միշտ գործածած են գլխագիր, կը ներկայացնէ յատուկ հարթակ մը, որ, քիչ մը նեղ բայց պատկերաւոր իմաստով, կարելի է ընդունիլ իբրեւ աջ հիմնահոսանքին սիրած «համաշխարհայնացում» (globalization) բառին ձախ այլընտրանքը։

Այսօրուայ դրամատիրական համակարգը կամ համաշխարհային-կայսերական կանոնակարգը՝ իր տնտեսական, քաղաքական, մշակութային, օրէնսդրական իրերախառն համակարգներով, չի հիմնուիր ազգային պետութեան մէջ կեդրոնացած դրամագլուխներու վրայ, այլ կը հանդիսանան ազգային սահմանները շրջանցող ուժային տարածուն ցանց մը։ Հարտդ-Նեկրի խնդիրը կը ձեւակերպեն այսպէս.

«Ազգային պետութիւններու նուաղող ինքնավարութիւնը, հետեւաբար, տնտեսական եւ մշակութային փոխանակումներ կարգաւորելու իրենց աճող անկարողութիւնը, ըստ էութեան կը հանդիսանայ Կայսրութեան յառաջացումին առաջնային յայտանիշներէն մէկը։ [...]

«Ի տարբերութիւն իմփերիալիզմին, Կայսրութիւնը կը հաստատէ ոչ մէկ ուժի տարածաշրջանային կեդրոն եւ չի հիմնուիր հաստատուն սահմաններու կամ արգելազիծերու վրայ։ Ան կը հանդիսանայ իշխելու ապակեդրոնացած եւ ապատարածքային մեքենայ մը՝ որ իր բաց ու ընդլայնուող սահմաններէն ներս աստիճանաբար կը միաւորէ ամբողջ համաշխարհային [global] ոլորտը։ Տնօրինութեան ցանցերու կարգաւորութեան ընդմէջէն Կայսրութիւնը կը բանեցնէ խառնածին ինքնութիւններ, ճկուն նուիրապետութիւններ եւ բազմակի փոխանակումներ։ Աշխարհի իմփերիալիսթական քարտէսի բացորոշ ազգային գոյները միաձուլուեցան եւ խառնուեցան կայսերական համաշխարհային ծիածանին մէջ։»[1]

Իմփերիալիզմի ժամանակ ազգային պետութիւնը ինքն էր դրամագլուխը շարժողը, այսօր պետութիւնը կը հանդիսանայ Կայսրութեան ցանցի շահերուն դերակատարողը։ Հարտդ-Նեկրի համոզուած են, որ այսօր, հակառակ որ «ընդարձակ անդրազգային ընկերութիւնները [transnational corporations]

---

[1] Michael Hardt, Antonio Negri, *Empire*, Cambridge (Massachusetts), London: Harvard University Press, 2000, pp. xii-xiii:

ազդուօրէն գերազանցած են ազգային պետութիւններուն իրաւասութիւնը եւ իշխանութիւնը», ազգային պետութիւնները չեն վերացած, այլ իրենց դերակատարութիւնը փոխադրուած է այլուր.

«Ազգային պետութիւնը կը ծառայէ զանազան գործառոյթներու՝ քաղաքական միջնորդութիւն համաշխարհային [global] գերիշխանական [hegemonic] ուժերուն առումով, սակարկութիւն անդրազգային ընկերութիւններուն առումով, եւ, իրենց սեփական սահմանափակ տարածաշրջաններուն մէջ, եկամուտի վերաբաշխում ըստ կենսաքաղաքական [biopolitical] պահանջներուն: Ազգային պետութիւնները համաշխարհային շրջանառութեան հոսքի զտիչներ են եւ համաշխարհային տիրոյթի արտայայտութիւնը: Ուրիշ խօսքով, անոնք հարստութեան հոսքը կը վերցնեն եւ կը բաշխեն համաշխարհային ուժի միջեւ, ինչպէս նաեւ անոնք կարգապահութեան կը հրաւիրեն իրենց սեփական ժողովուրդը՝ որքան որ տակաւին կարելի է:»[2]

Տարբերութիւնը մեծ է հայոց ցեղասպանութեան շրջանի ազգային պետութեան՝ իբրեւ դրամագլուխի հոսքի պատասխանատու, եւ այսօրուայ պահանջատիրութեան շրջանի ազգային պետութեան՝ իբրեւ դրամագլուխի հոսքի կարգադրիչ, ըստ համաշխարհային ուժերու պարտադրանքներուն:

Մարքս կը նախատեսէր պետութեան վերացումը՝ ընկերվարութեան եւ համայնականութեան միջոցով: Այսօր, պետութիւնները կը վերանան՝ Մարքսի ճիշդ հակառակ ուղղութեամբ:

Հարտդ-Նեկրիի յիշած ցանցերէն են անդրազգային ընկերութիւնները (transnational corporations), որոնք հսկայական եւ բացարձակ ազդեցութիւն ունին դրամական շրջանառութեան վրայ, ուրեմն՝ Կայսրութեան բոլոր ոլորտներուն վրայ: Անոնք կրնան ներկայացնել Կայսրութիւնը հասկնալու բանալիներէն մէկը: Կարեւոր կը նկատեմ ներկայացնել այս ընկերութիւններուն ընդհանուր պատկերը ժամանակակից աշխարհին մէջ՝ ներառնելով նաեւ Հայաստանը, որուն բնաբանին մէջ միայն կարելի է մշակել կամ չմշակել պահանջատիրութեան քայլերը:

[2] Անդ, էջ 310:

## ԱՆԴՐԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ՝ ԻԲՐԵՒ ՓՈԽԱՆՈՐԴ ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ

Ալեքս Քարէյ իրաւացիօրէն կը նշէ՝ որ անդրազգային ընկերութիւնները ջնջեցին ժողովրդավարութիւնը.

«Ի. դարը կը յատկանշուի մեծ քաղաքական կարեւորութիւն ունեցող երեք զարգացումներով. ժողովրդավարութեան աճը, ընկերութենական ուժին աճը եւ ընկերութենական ծանուցողականութեան աճը՝ իբրեւ ընկերութենական ուժի պաշտպանութեան միջոց մը ընդդէմ ժողովրդավարութեան։»[3]

Լոպպինկի տարօրինակ գործողութիւնը, օրինակ, պետութիւնը ընկերութիւններուն ենթարկելու միջոց մըն է։ ԱՄՆ-ի ամենաուժեղ լոպպին զէնքի արդիւնաբերութեան ընկերութիւններն են, որոնք կ'որոշեն կառավարութեան արտաքին քաղաքականութեան մէկ մասը։ Ամէն բան լոպպինկով կը լուծուի ԱՄՆ-ի մէջ, ներառեալ հայոց ցեղասպանութիւնը։ Ո՞ւր մնաց պետութիւնը, պետութեան որոշումները, համոզումները եւ ինքնուրոյն ծրագիրները։

Անդրազգային ընկերութիւնները ամէն տեղ են՝ ըլլայ իրենց նիւթական գոյութեամբ, ըլլայ իրենց ստեղծած պատկերումներով։ Պենճամին Պարպըր կ'ուզէ այս կէտը ցոյց տալ.

«Gillette-ի նախագահ Ալֆրէտ Մ. Զէյէն ըսած է. «Օտար երկիրները օտար չեն ինծի համար։» Բարի գալուստ դէպի McWorld։ Չկայ գործողութիւն մը որ բնազդաբար աւելի համաշխարհային ըլլայ քան առեւտուրը, չկայ գաղափարախօսութիւն մը որ նուազ հետաքրքրուած ըլլայ ազգերով քան դրամատիրութիւնը, չկայ սահմաններու աւելի յանդուգն մարտահրաւէր մը քան շուկան։ Շատ կողմերով, այսօր ընկերութիւնները կը հանդիսանան աւելի կեդրոնական խաղացողներ համաշխարհային գործերուն մէջ քան պետութիւնները։ Զանոնք կ'անուանենք բազմազգ [multinational] բայց աւելի ճշգրտօրէն կարելի է հասկնալ իբրեւ անդրազգային [transnational] կամ յետազգային կամ նոյնիսկ հակազգային։ Քանզի անոնք կ'ուրանան բուն ինքը ազգերու գաղափարը կամ իրենց ժամանակի եւ տարածութեան մէջ սահմանափակող որեւէ ուրիշ տեղականութիւն։ Իրենց յաճախորդները մասնաւոր պետութեան մը քաղաքացիները չեն, ոչ ալ տեղական տոհմի մը անդամները, այլ կը պատկանին կարիքներով եւ պահանջներով սահմանուող սպառողներու համընդհանուր ցեղին, իսկ այս

[3] Alex Carey, *Taking the Risk out of Democracy: Corporate Propaganda versus Freedom and Liberty*, Illinois: University of Illinois Press, 1997, p. 18:

կարիքներն ու պահանջները ամէնուրեք են՝ եթէ ոչ իսկութեամբ, գոնէ ծանուցումի հնարքով։»[4]

2011-ին, Ցիւրիխի Swiss Federal Institute of Technology-ի հետազօտողները, ուսումնասիրելով Orbis 2007-ի մարքեթինկի տուեալները՝ որ կը հաշուարկէ շուրջ 37 միլիոն տնտեսական դերակատարներ, կը գտնեն զանոնք կապող ու միաւորող 43060 անդրազգային ընկերութիւններ։[5] Վերջիններս կազմուած են 1318 ուժեղօրէն իրերահիւսուած բաղադրիչներով կազմուած ընկերութիւններէ՝ կեդրոնացած 26 երկիրներու մէջ։[6] Վերջապէս, այս թիւը եւս կը զտուի հասնելով 147 անդրազգային ընկերութիւններու, որոնք կը վերահսկեն աշխարհի հարստութեան 40 տոկոսը. «Ամբողջ աշխարհի անդրազգային ընկերութիւններու տնտեսական արժէքի վերահսկողութեան մօտաւորապէս 4/10-ը [իմա՝ 40 տոկոսը, Հ.Ա.] կը գտնուի՝ սեփականաշնորհեալ յարաբերութիւններու բարդ ցանցի մը միջոցով, միջուկը հանդիսացող 147 անդրազգային ընկերութիւններու խումբի մը ձեռքը, որ գրեթէ ամբողջական վերահսկողութիւն ունի ինքզինքին վրայ։ Այսպէս, միջուկին գագաթը գտնուող իրաւատէրերը կարելի է ընդունիլ իբրեւ տնտեսական «գեր-գոյացութիւն» մը ընկերութիւններու համաշխարհային ցանցին մէջ։ Այս կէտին, յաւելեալ կարեւոր փաստ մըն է՝ որ միջուկին 3/4-ը կը ներկայացնեն ֆինանսական միջնորդները։»[7]

Հետազօտութիւնը կը ներկայացնէ գագաթը գտնուող 50 իշխող-իրաւատէր ընկերութիւններուն անունները։ Անոնցմէ ԱՄՆ՝ 24, Բրիտանիա՝ 8, Ֆրանսա՝ 5, Ճափոն՝ 4, Զուիցերիա՝ 2, Գերմանիա՝ 2, Հոլանտա՝ 2, Իտալիա՝ 1, Գանատա՝ 1, Չինաստան՝ 1։[8] Կեդրոնական դրամատիրութեան արդի քարտէսը յստակ է։

Ուրեմն, ըստ այս հետազօտութեան, աշխարհի տնտեսութիւնը կը գտնուի 147 ընկերութիւններու ձեռքը։ Ըստ էութեան, անոնք են այսօրուայ պետութիւնները։

2002-ին, ձախակողմեան բարենորոգիչ գաղափարներով լեցուն յաջող ընտրարշաւէ մը ետք, Լուիզ Ինացիօ Լուլա տա Սիլվա յաղթական դուրս գայ

---

[4] Benjamin R. Barber, *Jihad vs. McWorld*, New York: Ballantine Books, 1996, p. 23։

[5] Stefania Vitali, James B. Glattfelder, and Stefano Battison, ‘The Network of Global Corporate Control’, *PLoS ONE*, October 2011, Volume 6, Issue 10, https://arxiv.org/pdf/1107.5728.pdf, p. 13։

[6] Անդ, էջ 30։

[7] Անդ, էջ 6։

[8] Անդ, էջ 33։

Պրազիլի նախագահական ընտրութիւններէն: Հետաքրքրական է, որ Կարի Իանկ, Լոնտոնի *Կարտիըն*ին մէջ 2014 Յունիսին հրատարակած յօդուածով մը կը յիշեցնէ Լուլայի մտերիմ խորհրդական՝ դոմինիկեան քահանայ Ֆրէյ Պեթթոյի խօսքերը. «Մենք կառավարութեան մէջն ենք բայց ոչ իշխանութեան: Իշխանութիւնը այսօր համաշխարհային իշխանութիւնն է, մեծ ընկերութիւններուն իշխանութիւնը, ֆինանսական մայրաքաղաքներուն իշխանութիւնը:»[9]

Ուղղակի դիմադրութիւնը կրնայ ճակատագրական ըլլալ անձին համար: Ժողովրդավարական սկզբունքներով ընտրուած նախագահներ՝ Սալվատոր Ալլենտէ (Չիլի) եւ Սլոպոտան Միլոշեվիչ (Եուկոսլաւիա) իշխանազրկուեցան որովհետեւ երկուքն ալ դիմադրեցին անդրազգային ընկերութիւններուն մուտքը իրենց երկիրը: Տնտեսական հարուածող անձ (economic hit man) Ճոն Փերքինս կը խոստովանի, որ Էքուատորի նախագահ Ճէյմ Ռոլտոս եւ Փանամայի նախագահ Օմար Թորրիյոս 1981-ին սպաննուեցան մերժած ըլլալնուն համար իրենց երկիրներուն մէջ ընդունիլ ամերիկեան անդրազգային ընկերութիւնները. «Անոնց մահերը պատահականութիւններ չէին: Անոնք սպաննուեցան որովհետեւ ընդդիմացան ընկերութենային, կառավարական եւ պանքայի գլուխներուն եղբայրութեան՝ որոնց նպատակն էր համաշխարհային կայսրութիւնը: Մենք՝ տնտեսական հարուածող անձերս, ձախողեցանք Ռոլտոսն ու Թորրիյոսը կարգի բերել, եւ հարուածող մարդոց միւս տեսակը՝ CIA-ի արտօնեալ շնագայլերը, որոնք միշտ կանգնած էին մեր ետեւը, եկան-հասան:»[10] Հուկօ Չաւէզ (Վենեզուելա) պայքարեցաւ ընկերութիւններուն դէմ, հազիւ կարողանալով խուսափիլ մահափորձէ ու յեղաշրջումէ:

Ստորեւ, քանի մը օրինակ անդրազգային ընկերութիւններու գործունէութիւններէն եւ անոնց հետ առնչուող երեւոյթներէն.

Ա.- ՆԱՖԹԱ

1994 Յունուար 1-ին իր գործադրութիւնը կը սկսի Հիւսիս Ամերիկեան Ազատ Առեւտուրի Համաձայնութիւնը (NAFTA)՝ ստորագրուած Գանատայի, Մեքսիքոյի եւ ԱՄՆ-ի կառավարութիւններուն կողմէ, որ հիւսիսային ամերիկան վերածեց եռակողմ առեւտրական միաւորումի: Ինչպէս Տէյվիտ Քորթըն 2015-ին

---

[9] Gary Young, 'Who's in Control - Nation States or Global Corporations?', *The Guardian*, 2 June 2014, http://www.theguardian.com/commentisfree/2014/jun/02/control-nation-states-corporations-autonomy-neoliberalism:

[10] John Perkins, *Confessions of an Economic Hit Man*, San Francisco: Berrett-Koehler Publishers, Inc., 2004, p. ix:

կը բացատրէ՝ ՆԱՖԹԱ-ն ուղղուած էր ուժեղացնելու ընկերութիւններուն գոյութիւնը.

«ՆԱՖԹԱ այսօր հին լուրերուն կը պատկանի, բայց այստեղ ան յատուկ ուշադրութեան արժանի է երեք պատճառներով.

«1. Ան գերազանցօրէն կը ցուցադրէ այն բացը որ գոյութիւն ունի դրամատիրութեան խոստումներուն եւ մատուցումներուն միջեւ։

«2. Ան ցոյց կու տայ այն ճամբան՝ որուն միջոցով դրամատիրութիւնը կ՚ընդլայնէ եւ կը խորացնէ շուկաներու եւ հումքերու ընկերութենային վերահսկողութիւնը, որպէսզի աւելի քան երբեւէ բռնագրաւէ հասարակութեան իրական հարստութիւնը ի վնաս աշխատող ժողովուրդին, տուրք վճարողներուն եւ բնութեան մնացած մասին։

«3. Անիկա նախատիպն է յետագայ առեւտրական համաձայնութիւններու, ներառեալ Trans-Pacific Partnership (TPP), Transatlantic Trade and Investment Partnership (TTIP), որոնք հմտօրէն ձեւաւորուած են մեծապէս գաղտնի բանակցութիւններու ընթացքին՝ ուր կը գերակշռէին ընկերութենային ներկայացուցիչները։ ՆԱՖԹԱ մեզի համար պատուհան մը կը բանայ թէ ինչն է վտանգուածը։ Իր իրական արդիւնքներուն գիտանքը մեզի կը նախապատրաստէ քննականօրէն գնահատելու այն կեղծ խոստումները որոնցմով ընկերութենականները կը փորձեն նոր համաձայնութիւններ ծախել ամբողջապէս թերահաւատ հասարակութեան մը։»[11]

ՆԱՖԹԱ-ի արդիւնքը կ՚ըլլայ՝ որ 2004-ի տուեալներով, ԱՄՆ-ի մէջ կ՚ոչնչանայ մէկ միլիոն աշխատատեղի, մեծաքանակ աշխատատեղիներ կ՚անհետանան նաեւ Մեքսիքոյի եւ Գանատայի մէջ։ Իր առաջին չորս տարիներուն Մեքսիքոյի մէջ կը քանդէ շուրջ 28 հազար փոքր եւ միջին ձեռնարկութիւններ։ 1993-2005-ին, 2.5 միլիոն մեքսիքացի մանր հողագործներ եւ հողագործական ոլորտին մէջ աշխատող մեքսիքացիներ կը զրկուին իրենց աշխատանքէն։ Չհաշուելով ուրիշ հսկայական վնասներ աշխատաւորական խաւերուն մէջ։[12]

Արդարեւ, ՆԱՖԹԱ-ն կը ձախողի մուտք գործել Մեքսիքոյի հարաւային Չիափաս նահանգը, բնիկ ժողովուրդով լեցուն տարածութիւն մը։ ՆԱՖԹԱ-ի կիրառութեան առաջին օրը՝ 1994 Յունուար 1-ին, ձախ-անարշիսթ ուղղութեամբ Զափաթիսթա յեղափոխական զինեալ մարտիկները կը յաջողին զէնքի ուժով արգիլել մեքսիքական կառավարութեան մուտքը Չիափաս։ Մինչեւ այսօր

[11] David C. Korten, *When Corporations Rule the World*, Oakland: Berrett-Koehler Publishers, Inc., 2015, pp. 22-23։

[12] Անդ, էջ 23-24։

այդ տարածամասը կ'ապրի անձնական ներքին կազմակերպուածութեամբ՝ բոլորովին ինքնաբաւ, միաժամանակ առանց կորսնցնելու կապը արտաքին աշխարհին հետ։ Դիմադրել անդրազգային ընկերութիւնները, ուրեմն, անկարելի բան մը չէ բնաւ։

Բ.- ԻՆՏՈՆԵՍԻԱՅԻ ՑՈՒՆԱՄԻՆ

Ինտոնեսիայի 2004 թուականի ահռելի ցունամիէն քանի մը օր ետք, տեղուոյն բնակիչները պատրաստ էին վերադառնալ իրենց վայրերը եւ ինքնուրոյնաբար սկսիլ վերակառուցումը։ Բայց անոնց վերադարձը արգիլուեցաւ կառավարութեան կողմէ, որ արդէն սկսած էր բանակցութիւններ վարել անդրազգային ընկերութիւններուն հետ (աւելի ճիշդ՝ ընկերութիւնները սկսած էին բանակցիլ կառավարութեան հետ) պարպուած տարածութիւնները վերածելու շքեղ զբօսաշրջիկային բնակավայրերու։[13]

Գ.- ԻՍԼԱՄԱԿԱՆ ԾԱՅՐԱՅԵՂԱԿԱՆՆԵՐ
ԵՒ ԱՐԱԲԱԿԱՆ ԱՇԽԱՐՀԻ ԳԱՂԹԱԿԱՆՆԵՐ

Աշխարհի վտանգը ոչ թէ իսլամական ծայրայեղականներն են, այլ անդրազգային ընկերութիւնները։ Առաջինները վերջիններուն ուղղակի արտադրութիւններն են եւ անգիտակցաբար կը ծառայեն անոնց շահերուն։ Վերջին շրջանին հեռատեսիլէն ամէն օր կը դիտենք «Արեւելք»-էն դէպի «Արեւմուտք» հասած գաղթականներու անվերջանալի պատմութիւնները։ Իրաքը, Սուրիան, Լիպիան քանդող եւ գաղթականութեան պատճառ հանդիսացող առերեւոյթ ձեռքը աղանդաւոր իսլամներն (սուննի/շիիթ) ու ծայրայեղական իսլամներն են։ Քիչ մը ուշադիր մօտեցումով դիտելով քարտէսը, դժուար չէ տեսնել՝ թէ գաղթականներուն գլխաւոր զանգուածը կու գայ ոչ-սպառողական տարածութիւններէն, այսինքն՝ այն վայրերէն, ուր դրամատիրական արտաքին ներդրումները տակաւին շատ տկար են եւ կամ բոլորովին գոյութիւն չունին։ Այդ պարպուած տարածութիւնները նախատեսուած են լեցուելու ներդրումներով եւ մտնելու սպառողական դաշտ։

Գալով գաղթականներուն, անոնց մէկ մասը Միջերկրականի մէջ կը խեղդուի։ Շատ լաւ է։ Պիլ Կէյթս մշակուած ծրագիր կը գործադրէ նուազեցնելու աշխարհի բնակչութեան թիւը եւ վերահսկելու բնակչութեան վրայ։ Ասիկա արդէն գաղտնիք չէ եւ Կէյթսի յայտարարութիւնները կարելի է գտնել համացանցի հազարաւոր էջերու մէջ։[14]

---

[13] *Post-tsunami Reconstruction and Tourism: A Second Disaster?*, written and edited by Alison Rice, research coordinator Kelly Haynes, London: Tourism Concern, October 2005:

[14] Համացանցի մէջ որոնել՝ Bill Gates, reduce population:

Գաղթականներուն ուրիշ մաս մը կ'ապաստանի Յորդանան եւ ուրիշ արաբական երկիրներ։ Ասիկա կարեւոր չէ. ո՞վ հետաքրքրուած է արաբական երկիրի մը ընդունած գաղթականներով։

Կարեւորը գաղթականներուն երրորդ մասն է՝ որ կը գաղթէ յետամնաց Մերձաւոր եւ Միջին Արեւելքներէն դէպի բարձրակիրթ Եւրոպա։ Եւրոպայի մէջ այսօր աշխատուժին գինը կը բարձրանայ։ Աշխատաւորները շատոնց է արդէն գիտակից դարձած են դրամատիրական շահագործումին մասին եւ անընդհատ ցոյցերով ու գործադուլերով կը պահանջեն իրենց մարդկային իրաւունքները։ Վերջերս, ֆրանսական «ձախ» կառավարութեան նախատեսած աշխատաւորական օրէնքները՝ զորս կառավարութիւնը «բարելաւում» անուանեց, ուղղուած էին անդրազգային ընկերութիւններու շահոյթը աւելցնելու ի վնաս աշխատաւորներու եկամուտին եւ աշխատանքային ժամերուն։ Աշխատաւորները գիտակցաբար կարեւոր ցոյցեր կազմակերպեցին դիմադրելու այս օրէնքներուն ընդունումը։ Բայց կառավարութիւններն ու անդրազգային ընկերութիւնները ունին իրենց թաքուն մեքանիզմները։ Անոնցմէ մէկը այդ աշխատուժի վերածումն է գործազուրկի՝ համապատասխան պետական թոշակով (պետութիւնը կը գործէ իր դրամական աղբիւրները գործածելու ի նպաստ ընկերութիւններու շահերուն), եւ անոնց փոխարինումը արաբական երկիրներէ գաղթած աշխատուժով, որ պիտի ըլլայ խիստ աժան, ենթարկուող ու դիւրութեամբ շահագործուող, քանզի գաղթականութիւնը զուրկ է որեւէ այլընտրանքէ։

Դ.- ԻՐԱՔԻ ՔՈՒՐՏԻՍԹԱՆ

Իրաքի Քուրտիսթանը de facto երկիր մըն է այսօր, ոչ ոք կը հարցադրէ անոր գոյութիւնը, միաժամանակ ոչ ոք կը հաստատէ անոր գոյութիւնը։ Նոյնիսկ յստակուած չեն անոր իրաւական յարաբերութիւնները Պաղտատի կեդրոնին հետ։ Բայց ոչ մէկ արժէք ունի իրաւական կողմը։ Անդրազգային ընկերութիւնները առկայ են այնտեղ եւ երկիրը կը գործէ իրենց չգրուած օրէնքներով։ Գանատական ShaMaran Petrolium Corp.-ը իր կայքէջին մէջ կը տեղադրէ քարտէս մը, ուր կու տայ 2012 Օգոստոսի տուեալներով Իրաքի Քուրտիսթանի մէջ գործող փեթրոլի եւ կազի ընկերութիւններուն ամբողջական պատկերը, որոնց թիւն է 39։ Անոնք բոլորն ալ համաձայնագիր կնքած են ոչ թէ Պաղտատի այլ ուղղակի Քուրտիսթանի հետ։ Անոնցմէ կարելի է յիշել՝ Chevron (ԱՄՆ), ExxonMobil (ԱՄՆ), Gazprom (Ռուսաստան), Total (Ֆրանսա), Korea National Oil Corporation (Քորէա), ShaMaran Petroleum (Գանատա)։[15]

---

[15] http://www.shamaranpetroleum.com/i/pdf/Kurdistan-Map.pdf:

Ե.- ՂՐԻՄ

2014-ին Ռուսաստանը բռնի ուժով եւ անօրէն կերպով անջատեց Ղրիմը՝ ըստ ուքրաինական տարբերակին: 2014-ին Ռուսաստանը ազատագրեց Ղրիմը՝ ըստ ռուսական տարբերակին: Բռնագրաւո՞ւմ թէ ազատագրում: Եւ կը սկսի անվերջանալի գաղափարական պայքար մը ուքրաինամէտ եւ ռուսամէտ տեսակէտներուն միջեւ, բոլորն ալ առաջ քաշելով մարդասիրական, արդարադատական խնդիրներ: 2015-ին Ուքրաինացի դատախազերը հետաքննութիւն կը սկսին Քոքա-Քոլայի եւ ՓեփսիՔոյի դէմ: Վերջիններս համացանցի մէջ հրապարակած էին քարտէսներ՝ ուր Ղրիմը ներկայացուցած էին իբրեւ Ռուսական Դաշնութեան մէկ մասը:[16] Ուրիշ անդրազգային ընկերութիւններ եւս նմանատիպ քարտէսներ հրապարակած են,[17] ինչպէս Peugeot, Volksvagen, Hyundai եւ Škoda:[18] Անդրազգային ընկերութիւններուն համար ազգային սահմանները կապ չունին ՄԱԿ-ի որոշումներուն հետ: Ղրիմի հարցը եւս կարելի է շաղկապել ընկերութիւններու շահերուն հետ, անոնց գոյութիւնը այնքան ազդեցիկ է եւ անոնց քարտէսային պատկերումները այնքան կարեւոր են թէ՛ Ուքրաինայի եւ թէ՛ Ռուսաստանի համար:

Զ.- ԻՐԵՐԱՀԻՒՍՈՒԱԾՔԸ (INTERLOCK) ԵՒ M ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆԸ

Իրերահիւսումը կը կատարուի անձերու միջոցով՝ որոնք միաժամանակ կամ յաջորդաբար կարեւոր պաշտօններ կը գրաւեն տարբեր ընկերութիւններու մէջ, որով կը պաշտպանեն մէկուն կամ միւսին շահերը: Իրերահիւսումը տեղի կ՚ունենայ ամէն տեսակ ընկերութիւններու եւ հիմնարկներու միջեւ՝ արդիւնաբերական միաւոր, համալսարան, քաղաքական կեդրոն, ակումբ, եւ այլն, որոնք բոլորն ալ ամենատարբեր անկիւններով փոխադարձաբար պէտք ունին իրարու:

Աիաւասիկ հայկական օրինակ մը, որ կը տարածուի հսկայ անդրազգային ընկերութենէ մը մինչեւ հայկական հիմնահոսանքային մամուլը: Խօսքը համ-

[16] ‘Проти Coca-Cola і PepsiCo відкрито провадження за Крим - депутат’, *ЛІГА.Новости*, 21 Յունուար 2016, http://news.liga.net/ua/news/politics/8552981-proti_coca_cola_pepsico_v_dkrito_provadzhennya_za_krim_deputat.htm:

[17] ‘Крым чей? Какие мировые бренды считают полуостров российским’, *ЛІГА.Бизнес*, 6 Յունուար 2016, http://biz.liga.net/all/reklama-marketing/stati/3206633-krym-chey-kakie-mirovye-brendy-schitayut-poluostrov-rossiyskim.htm:

[18] ‘Peugeot, Volksvagen, Hyundai и Škoda считают Крым роосcийским’, *УКРАЇНСЬКІ НОВИНИ*, 6 Յունուար 2016, http://ukranews.com/news/195144.Peugeot-Volksvagen-Hyundai-i-Skoda-schitayut-Krim-roossiyskim.ru:

բաւաւոր դարձած հայու մը հիմնած M[…] ընկերութեան մասին է։ Ահաւասիկ M-ի իրերահիւսուած կազմակերպութիւններն ու անձերը՝ ըստ *LittleSis*-ի հաւաքած տեղեկութիւններուն։ Այս բոլոր անձերը պաշտօններ կը զրաւեն M-ի մէջ (անձերուն անունները տրուած են փակագիծերու մէջ).
Rockwell Automation, Inc. (Verne G Istock, Lisa A Payne, Donald R Parfet)
Ford Motor (Richard A Manoogian, Anthony F Earley Jr)
TRW Automotive Holdings (J Michael Losh, John C Plant)
Kelly Services (Verne G Istock, Donald R Parfet)
Comerica Incorporated (Anthony F Earley Jr, Reginald M Turner Jr)
Detroit Economic Club (Richard A Manoogian, Dennis W Archer)
Business Leaders for Michigan (Richard A Manoogian, Keith J Allman)
JPMorgan Chase & Co. (Richard A Manoogian)
Cardinal Health, Inc. (J Michael Losh)
Johnson Controls (Dennis W Archer)
Illinois Tool Works Inc. (Christopher A O՚Herlihy)
PG&E Corp (Anthony F Earley Jr)
Unum Group (Donald R Parfet)
DTE Energy (Anthony F Earley Jr)
Campbell Soup (Mark R Alexander)
Scotts Miracle-Gro (Alan H Barry)
The Laclede Group, Inc. (Mary Ann Van Lokeren)
Washington University in St. Louis (Mary Ann Van Lokeren)
McGill University (David L Johnston)
University of Notre Dame (Anthony F Earley Jr)
Bipartisan Policy Center (Dennis W Archer)
Pharmacia Corporation (Donald R Parfet)
Clark Hill PLC (Reginald M Turner Jr)
Chicago 2016 Committee (Verne G Istock)
Federal Reserve Bank of Chicago (Verne G Istock)
Aon plc (J Michael Losh)
First Chicago NBD Corporation (Verne G Istock)
Northrop Grumman Space & Mission Systems Corporation (John C Plant)
University of Waterloo (David L Johnston)
Pharmacia & Upjohn Company, LLC (Donald R Parfet)
Bronson Healthcare Group (Donald R Parfet)
Apjohn Group LLC (Donald R Parfet)

Banc One Corporation (Verne G Istock)
CareFusion Corporation (J Michael Losh)
Taubman Centers, Inc. (Lisa A Payne)
Invest Detroit (Richard A Manoogian)
Community Foundation for Southeast Michigan (Reginald M Turner Jr)
Hudson-Webber Foundation (Reginald M Turner Jr)[19]

Բացի այդ, M-ի գլխաւոր մասնաճիւղերն ու դուստր ընկերութիւններն են.

1. A&J Gummers, Ltd. (Մեծն Բրիտանիա)
2. Alfred Reinecke GmbH & Co. KG (Գերմանիա)
3. Alma Küchen Aloys Meyer GmbH & Co. (Գերմանիա)
4. Alsons Corporation
5. The Alvic Group (Սպանիա)
6. American Metal Products
7. American Shower & Bath Corporation
8. Aqua Glass Corporation
9. Arrow Fastener Company
10. Avocet Hardware, plc (Մեծն Բրիտանիա)
11. Baldwin Hardware Corp.
12. Behr Process Corporation; Berglen Group, Ltd. (Մեծն Բրիտանիա)
13. Brass Craft Mfg. Company
14. Brugman Radiatorenfabriek B.V. (Հոլանտա)
15. BSI Holdings, Inc.
16. The Cary Group; Cobra Products, Inc.
17. Computerized Security Systems
18. Damixa A/S (Տանիմարքա)
19. Davenport Insulation
20. Delta Faucet Co.
21. E. Missel GmbH (Գերմանիա)
22. Faucet Queen
23. Fieldstone Cabinetry, Inc.
24. Franklin Brass Mfg. Co.
25. Gale Industries, Inc.
26. Gamco (General Accessories MFG. Co.)

[19] http://littlesis.org/org/224/Masco/interlocks; http://littlesis.org/org/224/Masco/interlocks/page/2:

27. Gebhardt Ventilatoren GmbH&Co. (Գերմանիա)
28. Ginger
29. Glass Idromassaggio S.p.A. (Իտալիա)
30. GMU-XEY (Սպանիա)
31. Grumal (Սպանիա)
32. Heritage Bathrooms, plc (Մեծն Բրիտանիա)
33. Horst Breuer GmbH & Co. (Գերմանիա)
34. Hüppe GmbH&Co. (Գերմանիա)
35. Inrecon, L.L.C.
36. Jung Pumpen GmbH & Co. (Գերմանիա)
37. KraftMaid Cabinetry Inc.
38. La Gard, Inc.
39. Liberty Hardware
40. The Marvel Group
41. Masterchem Industries, Inc.
42. Melard Manufacturing Corp.
43. Merillat Industries, Inc.
44. Mill's Pride
45. Mirolin Industries Corporation
46. Moores Furniture Group Ltd. (Մեծն Բրիտանիա)
47. Newteam Limited (Մեծն Բրիտանիա)
48. Peerless Faucet Company
49. Rubinetterie Mariani S.p.A. (Իտալիա)
50. SKS (Stakusit Bautechnik GmbH) (Գերմանիա)
51. StarMark, Inc.; S.T.S.R. (Իտալիա)
52. Superia Radiatoren, NN (Պելճիքա)
53. Texwood Industries, L.P.
54. Tvilum-Scanbirk A/S (Տանիմարքա)
55. Vapor Technologies Inc.
56. Vasco plc (Belgium)
57. Watkins Manufacturing Corporation
58. W/C Technology Corporation
59. Weiser Lock, Inc.
60. Zenith Products Corporation[20]

[20] *Encyclopedia.com*, http://www.encyclopedia.com/topic/Masco_Corp.aspx:

Ուրեմն, ունինք դրամատիրական ժամանակակից տեսանկիւնէն կատարեալ անդրազգային ընկերութիւն մը։

Հիմա, անոր հայկական կողմը։

1929-ին ծանօթ հայ մը (Ա. անձ) հիմնած է M-ն։ 1968-ին Ա. անձը դարձած է անոր խորհուրդին ատենապետը (chairman of the board), նախագահ (president) նշանակելով իր որդին (Բ. անձ), որ յետագային դարձած է ատենապետ (chairman), իսկ 2012-էն սկսեալ՝ պատուոյ ատենապետ (chairman emeritus)։ Ա. անձը մահացած է 1996-ին։

1953-1989-ին, Ա. անձը հանդիսացած է սփիւռքի հայկական կազմակերպութիւններէն մէկուն (Ա. կազմակերպութիւն) նախագահը, 1970-ին դառնալով անոր ցկեանս նախագահ եւ 1989-ին՝ պատուաւոր ցկեանս նախագահ։ Իր դուստրը (Գ. անձ) 1989-ին հօրմէ ժառանգած է Ա. կազմակերպութեան նախագահութիւնը, զոր վարած է մինչեւ 2002, որմէ ետք դարձած է հոգաբարձուներու խորհուրդի անդամ։

Մտաւորական մը (Դ. անձ)՝ որ շատ ազդեցիկ դեր ունի սփիւռքահայ ուրիշ կարեւոր կազմակերպութեան մը (Բ. կազմակերպութիւն) ղեկավար մարմինին եւ անոր յարող հայերէն եւ անգլերէն մամուլին ու համահայկական (համակուսակցական) մամուլի ցանցին մէջ, տասնեակ տարիներ եղած է M-ի գործադիր վարիչը (executive administrator)՝ բարձր ամսավճարով։ Հակառակ իր ութսունամեայ տարիքին, մինչեւ այսօր կայուն ամսավճարով կը պաշտօնավարէ այնտեղ։ Այժմ ան կը հանդիսանայ նաեւ Ա. կազմակերպութեան պատկանող Մ. քաղաքի վարժարանի տնօրէններու խորհուրդի անդամը։

Դժուար չէ տեսնել կապը։ Դ. անձը պիտի կատարէ Ա. կազմակերպութեան յանձնարարութիւնները՝ Բ. կազմակերպութեան մամուլին մէջ գրելով ու տարածելով Ա. կազմակերպութեան նախասիրութիւնները, թելադրանքները եւ հրամանները։ Ա. կազմակերպութիւնը՝ Դ. անձին միջնորդութեամբ, օգտագործած կ'ըլլայ Բ. կազմակերպութեան մամուլը, բազմացնելով մամուլի իր տարածութիւնը եւ ապահովելով «կողմ» գրութիւնները։

Մէկ ցայտուն օրինակ մը։ Ըստ Ա. կազմակերպութեան շահերուն, Բ. կազմակերպութեան մամուլին մէջ Դ. անձը ուժեղ, հետեւողական քննադատութիւն-յարձակումի արշաւ մը վարած է Էջմիածինի Գարեգին Ա. Կաթողիկոսին դէմ՝ իր նախընտրական շրջանին (հաշուի պէտք է առնել՝ որ այդ ժամանակ Գարեգին Ա.-ի ուժեղ մրցակիցն էր ներկայ Գարեգին Բ.-ը, որ ունէր իր անդրդուելի կողմնակիցները), առանց հաշուի առնելու անոր խոհական ու խորաթափանց ամբողջ նախընթացը Անթիլիասի մէջ։ Ապա Գարեգին Բ. Կաթողիկոսի եւ Մեսրոպ Մութաֆեան Պատրիարքի հակառակութեան բուռն

շրջանին, Դ. անձը հետեւողականօրէն գրեթէ վարկաբեկիչ ու բացարձակա-պաշտ յօդուածներ ստորագրած է Մութաֆեանին դէմ, առանց երբեք խորացած ու համատարածօրէն ուսումնասիրած ըլլալու պոլսահայ ղեկավարի մը անտե-սանելի դժուարութիւնները։ Միաժամանակ, հակառակ Գարեգին Բ. Կաթողի-կոսի մասին ոչ-կուսակցական մամուլին եւ հանրային ցանցերուն մէջ անընդհատ հրապարակուող քննադատական բացայայտումներուն՝ մեծ մասամբ փաստագրուած ու վաւերականացուած, Դ. անձը եւ Ա. ու Բ. կազմա-կերպութիւնները նոյնիսկ հեռաւոր ակնարկ մը անգամ չեն կատարած այս համատարած բացասականութեան մասին։

M-ն՝ անկախ իր հայկական պատկանելութենէն, աշխարհի բոլոր դրամա-տիրական կեդրոններուն նման, նաեւ իր արժէքները կը թելադրէ Դ. անձին եւ իր յարակիցներուն։ Ուէէ դրամատէր պէտք ունի ինքնապատկերի ստեղծումին ու տարածումին, եւ, իրեն ուղղուած քննադատութեան պարագային, մտաւորա-կան սուր ու կտրուկ հակահարուածի ու հակաքննադատութեան։ Դ. անձին պարտաւորութիւնն է անընդհատ ու անվերջ գովերգել Ա., Բ. եւ Գ. անձերը եւ Ա. կազմակերպութիւնը, նոյնիսկ գիրքեր հրատարակել անոնց մասին։ Այլեւ միշտ թիկունք կանգնելով ընդհանրապէս հարուստ դասակարգի գործունէութիւննե-րուն, Դ. անձն ու իր շրջապատը կ'անտեսեն թէ ինչպէ՞ս կ'իրականացուի դրամատիրական կուտակումը, ինչպէ՞ս կը շահագործուին աշխատաւորները, ինչպէ՞ս յաւելեալ արժէքով կը կատարուին բարեգործութիւնները՝ որոնք կ'աւելցնեն բուն ընկերութենական շահոյթն ու գերշահոյթը։[21] Պարտադրաբար կ'անտեսեն ունեզրկուածը, մեկուսացուածը եւ ժողովրդական շարժումները։ Կը քննադատեն արտօնեալ սահմաններուն մէջ, օրինակ, Հայաստանի օլիկարքութիւնը՝ զանազանելով ամերիկահայ «բարեսիրտ» մեծահարուստը Հայաստանի «աւազակ» օլիկարքէն, կամ Հայաստանի օդի ապականութիւնը՝ առանց մօտենալու անդրազգային ընկերութիւններու պատճառած ահաւոր ապականութեան, կամ Ազրպէյճանի յարձակումը Հայաստանի վրայ՝ առանց նշելու իսրայէլական ահռելի զէնքի գոյութիւնը Ազրպէյճանի մէջ, քանզի Իսրայէլին ուղղուած որեւէ քննադատութիւն խիստ վտանգաւոր քայլ մը կրնայ ըլլալ սիոնիստական լոպպիզմի ազդեցութեան տակ գտնուող աշխարհի բոլոր ընկերութիւններուն, ներառեալ, բնականաբար, M-ին։

[21] Բարեգործութեան մասին տե՛ս՝ Հ. Աւազեան, «Բարեգործութիւն՝ յաւելեալ արժէքով», *Զահակիր*, 29 Յունուար 2015, թիւ 1738 - 26 Մարտ 2015, թիւ 1741։

Է.- ԻՐԵՐԱՀԻՒՍՈՒԱԾՔԸ ԵՒ *ՆԻՒ ԵՈՐՔ ԹԱՅՄԶ*

Ըստ *LittleSis*-ի 2013 Յունիս 17-ի տուեալներուն,[22] *Նիւ Եորք Թայմզ*ի (The New York Times) իրերահիւսուածութիւնները բաղկացած են 168 կազմակերպութիւններէ, որոնք կ'ընդգրկեն 37 անձ՝ 189 իրերահիւսուած յարաբերութիւններով այդ կազմակերպութիւններուն հետ, այսինքն, միջին հաշուով իւրաքանչիւր անձ ունի 19.5 իրերահիւսուած յարաբերութիւն: 168 կազմակերպութիւններուն մէջ կարելի է հանդիպիլ՝ Council of Economic Advisers, Ford Motor, Obama for America, Council on Foreign Relations, Chevron, Google Inc, The Hillshire Brands Company, eBay Inc., Department of State, Carlyle Group, Business Roundtable, Sony Corporation, եւ այլն:

Այս բոլորին մէջ կը գտնուի *Թայմզ*ի նախկին թղթակցուհի Ճուտիթ Միլլրի քօղարկուած յարաբերութիւնները ԱՄՆ-ի փոխ նախագահ Տիք Չէնիի (Dick Cheney) հետ, որուն անունը սերտօրէն կապուած է Հալլիպըրթըն (Halliburton) անդրազգային ընկերութեան հետ:

Նախքան ԱՄՆ-ի 2003-ի գրաւումը Իրաքին, *Նիւ Եորք Թայմզ*ի լրագրողուհի Ճուտիթ Միլլր 2002-2003 թուականներուն կը հրատարակէ յօդուածներու շարք մը, ուր, իբր հիմնուելով ամերիկեան բարձրաստիճան անանուն պաշտօնեաներու եւ անվտանգութեան մարմինի տուեալներուն վրայ, կը հաստատէ ու կը տարածէ վերջին շրջանի ամենէն աչքառու սուտերէն մէկը՝ ըստ որուն Սատտամ Հուսէյն ունի հիւլէական, քիմիական, կենսաբանական եւ զանգուածային ոչնչացումի զէնքեր, որոնք վտանգ կը սպառնան ամբողջ աշխարհին: Միլլր երբեք չյայտնեց իր աղբիւրներուն անունները մինչեւ 2015 Ապրիլ 3, երբ *Ուոլ Սթրիթ Ճուրնալ*ին (The Wall Street Journal) մէջ ստորագրած յօդուածին սկիզբը կը գրէ. «Լաւ. որոշ օգնութիւն մը ունեցայ երկդիմի փոխ նախագահ Տիք Չէնիէն:»[23] Միլլէր չի նշեր այդ օգնութեան կերպը, բայց «երկդիմի» Չէնին եւ նոյնպէս իր բառերով «դիւրահաւատ» Պուշը (Պուշէն օգնութիւն ստանալու ակնարկ չկայ) զոհ դարձած են անվտանգութեան մարմիններուն սխալ տեղեկութիւններուն:[24]

Բայց Միլլրի եւ Չէնիի կապը կը բացայայտուի մեծ աղմուկ բարձրացած ուրիշ, զուգահեռ խնդիրի մը շնորհիւ, կապուած CIA-ի գործակալուհի Վալերի Փլէյմի (Valerie Plame) ինքնութեան բացայայտումին հետ: 2002 Փետրուարին,

---

[22] http://littlesis.org/org/640/The_New_York_Times_Company/interlocks:

[23] Judith Miller, 'The Iraq War and Stubborn Myths', *The Wall Street Journal*, 3 April 2015, http://www.wsj.com/articles/the-iraq-war-and-stubborn-myths-1428087215:

[24] Անդ:

CIA կը տեղեկացնէր Փլէյմի ամուսինին՝ դիւանագէտ Ճոզըֆ (Ճօու) Ուիլսընին (Joseph (Joe) Wilson), թէ Տիք Չէնի պատասխաններ կը փնտռէ մասնաւոր անվտանգութեան տեղեկագիրի մը մասին, որ կապուած է Նիժերիայի կողմէ Իրաքին վաճառուած վտանգաւոր ուրանիոնի հետ: Ուիլսըն նոյն ամիս կը մեկնի Նիժերիա, կը կատարէ իր հետախուզական աշխատանքը եւ ութ օր ետք վերադառնալով Ամերիկա կը տեղեկացնէ պատասխանատու մարմիններուն՝ թէ նման վաճառք երբեք տեղի չէ ունեցած: 2003 Յունուարին, Ճորճ Պուշ կը մեղադրէ Իրաքը՝ Ափրիկէէն ուրանիոն գնած ըլլալուն համար: Ուիլսըն, *Նիւ Եորք Թայմզ*ի մէջ հրապարակած Յուլիս 6 թուակիր յօդուածին մէջ կը հերքէ Պուշի յայտարարութիւնը:[25]

Միաժամանակ, 2001 Սեպտեմբեր 11-ի դէպքերէն ետք, Վալերի Փլէյմ կը ղեկավարէր CIA-ի 50 պաշտօնեաներէ կազմուած խումբ մը՝ որ կը հետախուզէր Իրաքի զէնքերուն կացութիւնը: Վալերիի արդիւնքները անհամապատասխան էին Պուշ-Չէնիի պնդումին Իրաքի զանգուածային ոչնչացումի զէնքերու մասին:[26]

Հազիւ մէկ շաբաթ անցած, Յուլիս 14-ին, *Ուաշինկթըն Փոսթ*ին (The Washington Post) մէջ Ռոպըրթ Նովաք յօդուած մը կը գրէ՝ ուր կը բացայայտէ Ուիլսընի կնոջ ինքնութիւնը իբրեւ «զանգուածային ոչնչացումի զէնքերու վրայ աշխատող գործակալ»:[27] Վալերի Փլէյմի ինքնութեան բացայայտումը իբրեւ ամերիկեան գաղտնի գործակալութեան գործակատար, ըստ էութեան, ծրագրուած հակահարուած մըն էր իր ամուսինին՝ Ուիլսընին, որ համարձակած էր հերքել Պուշի յայտարարութիւնը, խանգարելով Իրաքի դէմ պատերազմի հսկայ ծանուցողական մեքենային թաւալումը:

Դատավարութիւններու եւ հեռատեսիլային ելոյթներու ընթացքին կը բացայայտուին Փլէյմի ինքնութեան մասին գաղտնի տեղեկութեան արտահոսքի հիմքը հանդիսացող երեք բարձրաստիճան պաշտօնեաներու անունները՝ Պետութեան Քարտուղարի Տեղակալ Ռիչըրտ Արմիթրաժ (Richard Armitrage)[28],

---

[25] Joseph C. Wilson 4th, 'What I Didn't Find in Africa', *The New York Times*, 6 July 2006, http://www.nytimes.com/2003/07/06/opinion/what-i-didn-t-find-in-africa.html?pagewanted=all:

[26] Todd A. Davis, *The Global War on Terror: 9/11, Iraq, and American Crisis in the Middle East*, Xlibris Corporation, 2008, p. 113:

[27] Robert D. Novak, 'Mission to Niger', *The Washington Post*, 14 July 2003, http://www.washingtonpost.com/wp-dyn/content/article/2005/10/20/AR2005102000874.html:

[28] Todd A. Davis, նշ. աշխ.ը, էջ 114:

Ճորճ Պուշի Աւագ Խորհրդատու եւ Աշխատակազմի Ղեկավարի Տեղակալ Քարլ Ռոուվ (Karl Rove)[29] եւ, ամենակարեւորը, Ազգային Անվտանգութեան Գործերու համար փոխ նախագահի (Տիք Չէնիի) օգնական եւ փոխ նախագահի Աշխատակազմի Ղեկավար՝ Ի. Լեուիս Սքութըր Լիպպի (I. Lewis “Scooter” Libby):[30]

Խաղաղաշտ կը մտնէ Ճուտիթ Միլլըր: Հակառակ որ ան Փլէյմի մասին յօդուած չէ գրած, դատարանը կը բացայայտէ՝ որ ան եւս տեղեակ եղած է Փլէյմի ինքնութեան մասին: Միլլըր մերժելով դատարանին առջեւ քօղազերծել իր աղբիւրը, 2005-ին կ'ենթարկուի 85 օրուայ բանտարկութեան: Ապա, իր աղբիւրին հետ համաձայնութեամբ, դատարանին առջեւ կ'արտասանէ անոր անունը՝ Սքութըր Լիպպի: Պարզապէս հասկնալի է, որ Լիպպի անկարելի է նման քայլի դիմած ըլլար առանց իր պետին՝ Չէնիի հրամանին: Ինչպէս Թոտ Տէյվիս կը գրէ՝ «[ն]կատի առնելով իր գլխաւոր օգնականներէն մէկուն՝ Սքութըր Լիպպիի լրահոսքը, Փլէյմի գործին առնչութեամբ փոխ նախագահ Տիք Չէնիի խաղացած դերը եւս ուշադրութեան կեդրոն կը դառնայ:»[31]

Հաստատուելով Չէնի-Միլլըրի կապը Փլէյմի գործին կապակցութեամբ, ինչպէս նաեւ Միլլըր անձամբ ակնարկելով իր կապը Իրաքի յօդուածներուն առիթով, դժուար չէ տեսնել Չէնիի ազդեցիկ ներգրաւումը 2003-ի Իրաքի պատերազմին մէջ:

Ինչո՞ւ Փլէյմի, եւ ոչ թէ Իրաքի, հարցով է որ նախ եւ առաջ բացայայտուեցաւ Միլլըր-Չէնի կապը, թէեւ Իրաքի զաւթումը առաջ բերաւ միլիոնաւոր անմեղ զոհեր եւ Իրաքի մէջ ամերիկացիներուն կողմէ միջուկային ու քիմիական զէնքերուն օգտագործումը պատճառեց սարսափելի աւերներ, մինչդեռ Փլէյմի պարագային կատարուածը ընդամէնը մէկ, եւ միայն մէկ, անձի մը աշխատանքային քօղազերծումն է, անձ մը՝ որ շնորհիւ իր դիրքին եւ հարուստ ամուսինին ունի ապրուստի հազար ու մէկ այլ միջոցներ: Պարզապէս որովհետեւ Փլէյմ եւ Ուիլսըն՝ իբրեւ անձեր, իրաւունք ունին դատարաններուն մէջ հայցեր ու մեղադրանքներ ներկայացնել եւ պաշտպանել իրենց իրաւական շահերը: Մինչդեռ Իրաքը անձ մը չէ որ կարողանայ դատարան մտնել եւ աղմուկ բարձրացնել: Եւ բուն ոճիրներն ու զանգուածային սպանութիւնները կը գործադրուին ոչ-անձերու անունին տակ: Բայց կայ նաեւ դրամատիրական արժէքի պարտադրանքը, ուր անհատապաշտական զգայացունց յուզումները աւելի կարեւոր են քան զանգուածներու դէմ ոճրագործութիւնները, «բարձր» անհատներու

[29] Անդ, էջ 112-113:

[30] Անդ, էջ 112:

[31] Անդ, էջ 114:

առարկայականացուած պատմութիւնները աւելի հետաքրքրական են քան ժողովուրդներու տառապանքները, Փարիզի Շարլի Էպտոյի եւ նոյեմբերեան ահաբեկչութիւնները աւելի ողբերգական են քան Ֆրանսայի ջարդերը Ափրիկէի մէջ, տեղեկութեան մը վրիպումը աւելի աչքառու է քան գաղափարական սխալ մը (ասիկա ցեղասպանութիւններու համար հրաշալի նախաբան եւ բնաբան մըն է)։

Այսօր, այս բոլոր պատմութիւններուն ետեւը կանգնած են անդրազգային ընկերութիւնները։ *Նիւ Եորք Թայմզ*-Միլլըր-Չէնիի պարագային կեդրոնական դերը կը պատկանի Հալլիպըրթըն Ընկերութեան (Halliburton Company)՝ նաւթահանքի ծառայութիւններու եւ սարքաւորումի աշխարհի ամենամեծ անդրազգային ընկերութիւններէն մէկը, տարածուած աշխարհի աւելի քան 80 երկիրներու մէջ։

Ը.- ՀԱԼԼԻՊԸՐԹԸՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Տիք Չէնիի անձնական հարստութիւնը ուղղակիօրէն կապուած է Հալլիպըր-թընի հետ։ Անիէս Քրիսթըլըր կու տայ Չէնի-Հալլիպըրթընի ժամանակագրու-թիւնը,[32] զոր կը թարգմանեմ ամբողջութեամբ (զանց առած եմ ծանօթագրու-թիւնները՝ թիւով 62), ցոյց տալու համար անդրազգային ընկերութեան մը խաղացած դերը ժամանակակից Կայսրութեան մէջ.

«**1992**

«Փենթակոնը (Չէնիի առաջնորդութեամբ իբրեւ Պաշտպանութեան Նախա-րար) 9 միլիոն տոլլար վճարեց Հալլիպըրթընի դուստր ընկերութիւն Brown & Root-ին, որպէսզի վերջինս պատրաստէ գաղտնի տեղեկագրութիւն մը, ուր մանրամասնէ թէ ինչպէս կրնան սեփական ընկերութիւնները (իր նման) աշխարհի հնարաւոր պատերազմի գօտիներուն մէջ գտնուող ամերիկեան զօրքերուն հայթայթել լոժիսթիք աջակցութիւն։ Այս տեղեկագրութենէն անմի-ջապէս ետք, Փենթակոնը Brown & Root-ին հինգ տարուայ համաձայնագիր կը շնորհէ լոժիսթիք հայթայթելու ԱՄՆ-ի Զօրաբանակի Ճարտարագէտներուն [U.S. Army Corps of Engineers]։ Ընդհանուր Հաշուապահութեան Գրասենեակը կը գնահատէ՝ թէ այս պայմանագիրին շնորհիւ, Brown & Root կ'արձանագրէ ընդամէնը 2.2 միլիառ տոլլար եկամուտ Պալքաններուն մէջ։

«**1995**

«Առանց ոչ մէկ գործարարական նախնական փորձառութեան, Չէնի կը թողու Պաշտպանութեան Քարտուղարութիւնը եւ կը դառնայ նաւթի ծառայու-

---

[32] Agnes Christeler, 'Cheney/Halliburton Chronology', *Halliburton Watch*, http://www.halliburtonwatch.org/about_hal/chronology.html։

թիւններ մատուցող աշխարհի ամենէն մեծ ընկերութիւններէն մէկուն՝ Halliburton Co.-ի գործադիր տնօրէնը [CEO]: Անոր տնօրէնը պիտի հանդիսանար 1996-էն մինչեւ Հոկտեմբեր 1998 եւ 2000 Փետրուարէն մինչեւ Օգոստոս: Չէնիի ղեկավարութեան տակ, Հալլիպըրթըն կը տեղաշարժի Փենթակոնի կապալառուներու ցանկի 73-րդէն դէպի 18-րդը: Ընկերութիւնը կ'ամբարէ 2.3 միլիառ տոլլար ԱՄՆ-ի կառավարութեան հետ պայմանագիրներու շնորհիւ, որ գրեթէ կը կրկնապատկէ կառավարութենէն նախապէս վաստակած 1.2 միլիառ տոլլարը: Պայմանագիրներուն մեծամասնութիւնը տրամադրուած են ԱՄՆ-ի Զօրաբանակի Ճարտարագէտներուն կողմէ: Հալլիպըրթընի օտարերկեայ գործողութիւնները կը բարձրանան իր եկամուտներուն 51%-էն մինչեւ 68%: Ըստ Center for Public Integrity-ին, Չէնիի ղեկավարութեան տակ ընկերութիւնը ստացաւ նաեւ 1.5 միլիառ արժողութեամբ նպաստ կառավարութեան կողմէ հովանաւորուած գործակալութիւններէ, ինչպէս՝ OPIC (Overseas Private Investment Corporation) եւ Export-Import Bank, որ հսկայ յաւելում մըն է համեմատութեամբ այն 100 միլիոն տոլլարին զոր ընկերութիւնը ստացած էր ֆետերալ պարտքերով եւ երաշխիքներով, Չէնիի գալուստին նախորդող հինգ տարիներուն: Տարիներ ետք, 2000 թուականի ընտրարշաւին, Ճօու Լիպըրմանի հետ ունեցած փոխ նախագահական թեկնածուներու տեսաափռուած բանավէճին, Չէնի պիտի պնդէր՝ թէ «կառավարութիւնը բացարձակապէս ոչ մէկ կապ ունի» իր դրամական յաջողութիւններուն հետ իբրեւ Halliburton Co.-ի տնօրէն: Հալլիպըրթըն ինքզինք մեղաւոր կը ճանչնայ իրեն ուղղուած քրէական մեղադրանքներուն, խախտած ըլլալու համար դէպի Լիպիա առաքուող արտահանումներուն նկատմամբ ԱՄՆ-ի սահմանած արգիլումը՝ Քատտաֆիին ծախելով վեց զարկերակային նիւթրոնային ելեկտրածիններ, սարքեր՝ որոնք կրնան գործածուիլ պայթեցնելու միջուկային զէնքեր: Հալլիպըրթըն կը վճարէ 3.8 միլիոն տոլլար տուգանք՝ կարգաւորելու համար ԱՄՆ-ի առեւտուրի արգելումին հանդէպ կատարած ենթադրուած խախտումները:

«**1996**

«Հալլիպըրթընի դուստր ընկերութիւնը՝ European Marine Contractors (EMC), կ'օգնէ Պուրմայի մէջ տեղադրելու Եատանայի բնական կազի խողովակին ցամաքային հատուածը: Բազմաթիւ մարդու իրաւունքներու կազմակերպութիւններ կը հաստատեն այս ծրագիրին հետ կապուած մարդու իրաւունքներու հսկայական չարաշահումներ, երբ Պուրմայի հազարաւոր գիւղացիներ ստիպողաբար աշխատած են կառուցելու համար խողովակը եւ յարակից ենթակառուցուածքը: Բռնի տեղափոխութեան պատճառով շատեր կը կորսնցնեն իրենց բնակարանները: Հաղորդագրութիւններ կան խողովակներ տեղադրող

ընկերութիւններուն համար իբրեւ պահակ աշխատակոչուած զինուորներուն կողմէ կատարուած բռնաբարումներու, խոշտանգումներու եւ սպանութիւններու մասին։

«**1997**

«Չէնի կը նպաստէ ստեղծելու ազդեցիկ աջակողմեայ քաղաքականութեան խումբ մը որ կը կոչուի Project for the New American Century (PNAC)։ 1998 Յունուարին խումբը արդէն կը թելադրէր Սատտամ Հուսէյնի իրաքեան վարչակարգին վերացումը։ Յետագային կը բացայայտուի՝ որ խումբը կը հանդիսանար Իրաքի պատերազմը նախապատրաստող մտաւոր կեդրոնը։

«Մարտ. ԱՄՆ-ի կառավարական գործակալութիւն մը՝ Overseas Private Investment Corporation, Հալլիպըրթընին կը տրամադրէ 200 միլիոն տոլլարի արժէքով «քաղաքական վտանգի ապահովագրութիւն», բնական կազ մշակելու համար Պանկլատէշի մէջ։ Հալլիպըրթընի դուստր ընկերութիւնը՝ Brown & Root (այժմ՝ Kellogg, Brown & Root եւ KBR), Azerbaijan International Operating Company-ին համար կը սկսի կասպեան մեծ ծրագիր մը, հակառակ Ազրպէյճանի մարդկային իրաւունքներու խախտումներուն պատճառով գոյութիւն ունեցող խորհրդարանական պատժամիջոցներուն։ Indonesia Corruption Watch կը նշէ Kellogg Brown & Root-ը (Հալլիպըրթընի ճարտարագիտական բաժանմունքը) իբրեւ 59 ընկերութիւններէն մէկը՝ որ նախկին նախագահ Սուհարթոյի ընտանիքին հետ կապուած ձեռնարկատիրական գործերու մէջ գործադրած է խաբէական, փտած եւ խնամիական միջոցներ։

«Նոյնիսկ Իրան-Լիպիա Պատժամիջոցային Գործողութեան կիրառումին ժամանակ, Հալլիպըրթըն շարունակած է գործել Իրանի մէջ։ Իրանի հետ իր գործարքով խախտած ըլլալով ԱՄՆ-ի Արտահանումի Վարչութեան Գործողութեան սահմանած պոյքոթի պայմանները, ան Առեւտուրի Բաժանմունքին կը վճարէ 15 հազար տոլլար, որպէսզի կարգաւորուին իր դէմ եղած մեղադրանքները եւ խուսափի ինքզինք մեղաւոր ճանչնալէ։ Հալլիպըրթըն կը շարունակէ նաեւ իր գործարքները Լիպիայի հետ Չէնիի պաշտօնավարութեան ընդմէջէն։

«Խորհրդարանի հաշուեքննիչ բազուկը՝ GAO (General Accounting Office), կը տեղեկագրէ՝ թէ Քոսովոյի մէջ կատարած իր աշխատանքի ծախսերուն համար KBR չափէն աւելի բեռնաւորեց Բանակը։ Կը բացայայտուի՝ թէ զրասենեակները մաքրելու եւ ռազմակայաններուն ելեկտրականութիւն եւ պահեստային ուժանիւթի մատակարարութիւն հայթայթելու համար ընկերութիւնը օգտագործած է պէտք եղածէն աւելի աշխատաւորներ եւ սարքաւորումներ, իսկ մէկ շերտ նրբատախտակին [plywood] համար վճարած 14.06 տոլլարին փոխարէն գանձած է 86 տոլլար։ GAO-ի քննադատական տեղեկագրութեան պատճառով

բանակը չի վերանորոգեր KBR-ի հետ ունեցած պայմանագիրը, թէեւ 1999-ին դարձեալ կը վերադարձնէ զայն։

«Չէնի ելոյթ կ'ունենայ Արթուր Անտերսընը ծանուցանող տեսաերիզի մը մէջ, ուր գովաբանելով ընկերութեան հաշուապահական գործողութիւնները, կ'ըսէ. «Կարելի է ըսել, որ ես լաւ խորհուրդ կը ստանամ իրենց [Արթուր Անտերսընի] մարդոցմէ, որուն հիման վրայ մեր գործարքները եւ գործողութիւնները հաշուեքննչական ընդունուած եւ բառացի համաձայնութիւններէն աւելի բարձր ու լաւ են։» Յետագային, խարդախութեան մեղադրանքով SEC կը հետաքննէ KBR-ը, պարագայ մը որ նման է Անտերսընի ուրիշ յաճախորդի մը՝ Enron-ին ուղղուած մեղադրանքին։

«**1998**

«Չէնի կը վերահսկէ Հալլիպըրթընի միաձուլումը Dresser Industries-ի հետ, ընկերութիւն մը՝ որ Առաջին Ծոցի Պատերազմէն ետք օգնած էր Սատտամ Հուսէյնին վերակառուցել Իրաքի նաւթի ենթակառուցուածքը, հակառակ Իրաքի դէմ գործող տնտեսական պատժամիջոցներուն։ Dresser նաեւ դիմագրաւեց ասպեստի [asbestos] հետ առնչուող մեծ պատասխանատուութեան խնդիրներ, որոնք անբարենպաստ էին ընկերութեան ֆինանսական առողջութեան համար։ Հալլիպըրթըն կը գործածէ երկու դուստր ընկերութիւններ Իրաքի հետ կատարած 23 միլիոն տոլլարի արժողութեամբ գործարքներուն համար։

«**1999**

«Հալլիպըրթընի KBR բաժանմունքը տարեկան 180 միլիոն տոլլարի պայմանագիրով վերստին գործարքի կը կոչուի բանակին կողմէ, լոժիսթիք աջակցութիւն հայթայթելու պալքանները գտնուող ԱՄՆ-ի բանակին։ Ընկերութիւնը կարեւոր պայմանագիրներ ունի նաեւ Chevron-ի, Petrobras-ի եւ Shell-ի նման ընկերութիւններու հետ, նաւթի ենթակառոյցներ կառուցելու Պրազիլի եւ Նիճերիայի մէջ։ Ան 200 միլիոն տոլլարի պայմանագիր ունի Chevron-ի եւ գործընկերներուն հետ Քապինա (Անկոլա) տարածքին մէջ, ուր ընկերութիւնը ծառայութիւններ կը մատուցանէ աւելի քան 300 նաւթահորերու 30 դաշտերու մէջ, որոնք կը հայթայթեն ԱՄՆ-ի նաւթի ներմուծումներուն 8 տոկոսը։ Այս մենաշնորհը կը հանդիսանայ Անկոլայի կառավարութեան եկամուտի 80 տոկոսին աղբիւրը։

«**2000**

«Օգոստոս. Չէնի կը թողու Հալլիպըրթընի գործադիր տնօրէնի պաշտօնը փոխ նախագահի ընտրարշաւին պատրաստուելու համար։ Հալլիպըրթըն կը յայտարարէ՝ թէ պաշտօնէն հեռանալուն համար Չէնիին պիտի վճարէ աւելի

քան 33.7 միլիոն տոլլար։ Հասարակական ճնշումին տակ, Չէնի կը ծախէ 30 միլիոն տոլլար արժողութեամբ ընկերութեան արժեթուղթը։

«Հոկտեմբեր 5. Ճօու Լիպըրմանի հետ տեսասփռուած բանավէճին ընթացքին, Չէնի կը պնդէ՝ թէ «կառավարութիւնը բացարձակապէս ոչ մէկ կապ ունի» իր դրամական յաջողութիւններուն հետ իբրեւ Halliburton Co.-ի տնօրէն։

«Այժմ Հալլիպըրթըն կը հանդիսանայ աշխարհի ամենէն բազմազանուած ուժանիւթային ծառայութիւններու, ճարտարագիտութեան, շինարարութեան եւ սպասարկութեան ընկերութիւնը, տարեկան 15 միլիառ տոլլարի եկամուտով, 100 հազար պաշտօնեաներով եւ աւելի քան 120 երկիրներու մէջ գտնուող 7 հազար յաճախորդներով։

«**2001**

«Նաւատորմին [Navy] լոժիսթիք հայթայթելու նպատակով KBR կը վաստակի 300 միլիոն տոլլարի բացառիկ պայմանագիր մը, ըստ որուն ան պէտք է մատակարարէ ծառայութիւններ, ինչպէս՝ խոհարարութիւն, շինարարութիւն, ուժանիւթի յառաջացում եւ վառելանիւթի փոխադրութիւն։ Չէնիի ամենէն ընդարձակ ծրագիրներէն մէկը իբրեւ փոխ նախագահ կը հանդիսանայ համակարգել նոր National Energy Policy Development Group-ի (NEPDG) զարգացումը։ Ըստ Environmental Protection Agency-ի կլիմայական քաղաքականութեան նախկին խորհրդատուի՝ որ ներկայ էր յատուկ խումբի նիստերուն, Չէնի «շարունակաբար ծրագիրներ առաջ մղեց աւելցնելու [...] նաւթի մատակարարութիւնները, մինչ քիչ ուշադրութիւն դարձնելով խթանելու ուժանիւթային արդիւնաւէտութիւնը եւ մաքուր ուժանիւթային աղբիւրները»։ Վճռելով՝ որ 2020-ին ԱՄՆ անխուսափելիօրէն պէտք պիտի ունենայ ներմուծել իր նաւթի երկու-երրորդը, յատկապէս արաբական թերակղզիէն, NEPDG կը յանձնարարէ «նախագահին ուժանիւթի ապահովութիւնը դարձնել մեր առեւտուրի եւ արտաքին քաղաքականութեան առաջնութիւնը»։

«Ապրիլ. Զախողելով տեղեկութիւն ստանալ Չէնիի կողմէ առաջնորդուած NEPDG-ի եւ տարբեր ուժանիւթային արդիւնաբերութեան ընկերութիւններու գործադիրներուն միջեւ վերջերս կայացած գաղտնի հանդիպումներուն մասին, Ներկայացուցիչներու Պալատի անդամներ Ճոն Տինկըլ եւ Հէնրի Ուաքսման կը խնդրեն GAO-էն (General Accounting Office) տեղեկութիւններ ստանալ այս հանդիպումներուն մասին։

«Յուլիս. GAO-ի հաշուեքննիչ՝ զօրավար Ուոքըր, Տիք Չէնիէն կը խնդրէ իւրաքանչիւր հանդիպումի ներկայ գտնուած անձերուն անունները բովանդակող արձանագրութիւնները։

«Նոյեմբեր. Kellogg, Brown & Root Պետական Քարտուղարութենէն [State Department] կը ստանան 2 միլիոն տոլլար՝ ամրացնելու համար Թաշքէնթի (Ուզպեքիսթան) Միացեալ Նահանգներու դեսպանատունը։

«Դեկտեմբեր. Kellogg, Brown & Root կ'ապահովէ 10 տարուայ համաձայնութիւն մը Փենթակոնին հետ՝ առանց ծախսային առաստաղի, ծառայութիւններ մատակարարելու համար Բանակին։ Պայմանագիրը ծանօթ է իբրեւ Logistics Civil Augmentation Program (LOGCAP)։ Այս պայմանագիրը կը հանդիսանայ «ծախս-առաւել-յատկացում-վարձք [cost-plus-award-fee] մը՝ անորոշ-յանձնում/անորոշ-քանակ ծառայութիւն», որ կը նշանակէ՝ թէ դաշնային [federal] կառավարութիւնը կը պարտաւորուի անժամկէտ յանձնարարութեամբ բաց պիտռճէ ուղարկել Kellogg, Brown & Root-ին՝ որեւէ տեղ աշխարհի մէջ, որպէսզի շահոյթի համար կատարէ իր մարդասիրական ու ռազմական գործողութիւնները։

«**2002**

«Փետրուար. Kellogg, Brown & Root կը վճարէ երկու միլիոն տոլլար, որպէսզի կարգաւորէ Արդարադատութեան Վարչութեան հետ ունեցած դատավարութիւնը։ Վարչութիւնը կը մեղադրէ ընկերութիւնը՝ որ 1990-ականներու կէսերուն խաբած է կառավարութիւնը եւ իրական ծախսերէն շատ աւելի բարձր գումարներ ստացած։ KBR կը մեղադրուէր ուռճացուցած ըլլալ Fort Ord (Քալիֆորնիա) գտնուող ռազմական տեղադրութիւնը (այժմ փակուած) խնամելու եւ նորոգելու համար ներկայացուցած պայմանագրային գիները։ Սաքրամենթոյի մէջ կատարուած դատավարութիւնը կը բացայայտէ՝ թէ KBR սխալ հայցեր ներկայացուցած է եւ կեղծ յայտարարութիւններ ըրած 1994 Ապրիլի եւ 1998 Սեպտեմբերի միջեւ յանձնած 224 պատուէրներու առնչութեամբ։ Կեղծ յայտարարութիւնները իբր կատարուած են Չէնիի գործադիր տնօրէնի պաշտօնավարութեան ժամանակ։

«Փետրուար 27. *Նիւ Եորք Թայմզ* կը բացայայտէ 2001 Փետրուար 8-ին Չէնիի հետ հանդիպած նաւթի եւ կազի արդիւնաբերութեան կարգ մը գլխաւոր գործադիրներուն ինքնութիւնները։ Անոնցմէ մէկն է Robert J. Allison Jr.՝ Anadarko Petroleum-ի նախագահը, որուն հետ Հալլիպըրթըն գործարքի մէջ է 1959-էն ի վեր։ *Թայմզ* կը հաղորդէ նաեւ՝ թէ Չէնիի կինը Լին եղած է Union Pacific Resourses-ի տնօրէնը եւ կարեւոր բաժնետէրը։ Այս ուժանիւթի ընկերութիւնը 2000-ին միաձուլուած է Anadarko-ի հետ իսկ միաձուլումին շնորհիւ Լին ստացած է 250 հազար տոլլարէն 500 հազար տոլլար արժէքով բաժնետոմս։

«Մարտ. Մամուլը կը բացայայտէ 22 նաւթի եւ կազի ընկերութիւններու անուններ, որոնց պաշտօնատարները գաղտնի հանդիպած են NEPDG-ի հետ։

Անոնցմէ տասնինը մաս կը կազմէին Հանրապետական Կուսակցութիւնը ֆինանսապէս օժանդակող 25 ամենակարեւոր ուժանիւթի արդիւնաբերութիւններուն: Տասնիննին մէջ կը գտնուէին Enron, ExxonMobil, BP Amoco, Anadarko Petroleum, Shell Oil եւ Chevron: Տէյվիտ Մ. Ուոքըր՝ GAO-ի ընդհանուր հաշուեքննիչը, ինչպէս նաեւ Judicial Watch, Չէնիի դէմ մեղադրանքներ կը յարուցեն, քանի որ ան կը մերժէ Խորհրդարանին ներկայացնել National Energy Strategy-ին մէջ ներգրաւուած արդիւնաբերական գործադիրներուն ինքնութիւնները բացայայտող փաստաթուղթերը: 2003 Փետրուարին GAO կը դադրեցնէ իր դատավարութիւնը, երբ Հանրապետականները կը սպառնան զեղչել GAO-ի 440 միլիոն տոլլարի պիւտճէն: Բայց կը շարունակուին Judicial Watch-ի օրինական ջանքերը (տես ստորեւ):

«Մայիս 22. *Նիւ Եորք Թայմզ*ի յօդուած մը կը հաստատէ՝ թէ 1999 Յունիսի եւ 2002 Մայիսի միջեւ Հալլիպըրթըն արհեստականօրէն ուռճացուցած է իր բաժնետիրական գինը իսկ շինարարական ծրագիրներու համար նախատեսուած սահմանները շրջանցած ծախսերը [cost overruns] հաշուած է իբրեւ յաւելեալ եկամուտ: Այս ամբաստանութիւններուն հիման վրայ SEC (Securities and Exchange Commission) հետաքննութիւն կը սկսի Հալլիպըրթընի հաշուապահական գործողութիւններուն հանդէպ: Ընկերութեան այդ ժամանակուայ հաշուապահն էր Արթիւր Անտերսըն: Հակառակ ընթացող հետախուզութեան եւ սահմանները շրջանցած ծախսերուն մասին նախապէս կատարուած յայտնաբերումներուն, Հալլիպըրթըն կը շարունակէ միլիառներ արժող պայմանագիրներ ստանալ կառավարութենէն:

«Յունիս. Brown & Root կ'արժանանայ 22 միլիոն տոլլարի գործարք մը ծառայութիւններ մատուցանելու Ուզպեքիսթանի ռազմակայանի մը, երկիր մը, որուն առաջնորդը՝ Իսլամ Քարիմով, անգութ բռնապետ մըն է, իր քաղաքական հակառակորդները կենդանի կ'եռացնէ եւ ամբաստանուած է մարդու իրաւունքներու խախտումներով: Ասիկա LOGCAP-ի առաջին պայմանագիրն էր «ահաբեկչութեան դէմ պատերազմի» ծիրին մէջ:

«Յունիս. Հալլիպըրթըն իր աշխատաւորներուն կը տեղեկացնէ թոշակի կրճատումի մասին, որպէսզի կարողանայ վճարել միաձուլումներն ու ձեռքբերումները:

«Յուլիս 15. *Newsweek* կը հրատարակէ յօդուած մը՝ «Հալլիպըրթընի գործադիրը կ'ըսէ՝ Չէնի տեղեակ է ընկերութեան հաշուապահական գործունէութիւններուն մասին» խորագիրով, ուր կը բացայայտէ՝ թէ Չէնի իրազեկ էր որ ընկերութիւնը ուռճացած projected cost overruns payments-ը կը հաշուէր իբրեւ եկամուտներ:

«Յուլիս 29. *Նիւ Եորք Թայմզ*ի յօդուած մը կը քաղէ Չէնիին հետեւեալ խօսքերը ընկերութենական խարդախութեան մասին. «Ամերիկացի ժողովուրդը կրնայ վստահ ըլլալ որ կառավարութիւնը պիտի կատարելապէս հետախուզէ եւ դատէ բոլոր սխալականները»: Չէնի կ'ըսէ՝ թէ բարեփոխումները պիտի «պաշտպանեն ներդրողները, պիտի բարձրացնեն ընկերութիւններուն պատասխանատուութեան աստիճանը եւ ուժեղացնեն վերահսկողութիւնը հաշուապահական արդիւնաբերութեան վրայ»:

«Յուլիս/Օգոստոս. Կը բացայայտուի՝ թէ Չէնիի պաշտօնավարութեան ժամանակ իբրեւ Հալլիպըրթընի գործադիր տնօրէն, դուստր ընկերութիւններու քանակը օֆշորային հարկային դրախտներու մէջ աւելցաւ 9-էն (1995) 44-ի (1999): Այս դուստրերէն մէկը (Halliburton Products and Services Ltd.) անդամագրուած է Քայման կղզիներուն մէջ եւ 2000-էն ի վեր կը գործածուի շրջանցելու համար Իրանի մէջ գործարքի համար նախատեսուած պատժամիջոցները: Միաժամանակ, Հալլիպըրթընի դաշնային հարկերը կտրուկ կերպով կը նուազին 302 միլիոն տոլլարէ 1998-ին՝ 85 միլիոն տոլլարի 1999-ին:

«Հակառակ այս բացայայտումներուն, կառավարութիւնը կը շարունակէ ընկերութեան շնորհել ստուար պայմանագիրներ, ներառեալ 10 տարուայ նոր գործարք մը Բանակին հետ՝ առանց հնարաւոր ծախսերու սահմանի: Միայն 2002 թուականին, իր ծառայութիւններուն համար Brown & Root ԱՄՆ-ի կառավարութենէն կը ստանայ 1.3 միլիառ տոլլար: Այս ծառայութիւնները կը պարփակէին 115 միլիոն տոլլարի պայմագիր մը՝ Աֆղանիստանի մէջ նախագծելու եւ կառուցելու դեսպանատունի համալիր մը, 37.3 միլիոն տոլլարի պայմագիր՝ Կուանթանամոյի (Քուպա) մէջ կառուցելու 816 բանտային խցիկներ եւ 2 միլիոն տոլլարի պայմագիր՝ Ուզպեքիստանի մէջ ԱՄՆ-ի դեսպանատունը ամրացնելու համար: Մինչ մամուլը եւ Տեմոքրաթիք Կուսակցութեան առաջնորդները աւելի ու աւելի կը կեդրոնանան Հալլիպըրթընի հաշուապահական խախտումներուն մէջ Չէնիի խաղացած դերին վրայ, Պուշի վարչակարգը ազգին ուշադրութիւնը կը շեղէ դէպի Իրաք:

«Օգոստոս 26. Չէնի զեկոյց մը կը կարդայ Նաշվիլի Օտարերկեայ Պատերազմներու Վեթերաններուն առջեւ, զգուշացնելով՝ որ «բազմած ըլլալով աշխարհի նաւթի պաշարներու տասը տոկոսին վրայ, Սատտամ Հուսէյնէն կարելի է ակնկալել իշխանութեան մղում ամբողջ Միջին Արեւելքին վրայ, իր վերահսկողութեան տակ վերցնելու աշխարհի ուժանիւթի մատակարարութիւններուն մեծ մասը, [...] եւ Միացեալ Նահանգները ենթարկելու միջուկային շորթանքի:»

«Հոկտեմբեր. *Ուաշինկթըն Փոսթ*ի յօդուած մը կը նկարագրէ Չէնին իբրեւ «արտաքին քաղաքականութեան յենակը», եւ իր ազդեցութիւնը պատերազ-մամէտ քաղաքականութեան վրայ երեւան կու գայ Իրաքի հետ հնարաւոր հակամարտութեան նախօրէին: Չէնիի կինը՝ Լին, աւագ անդամ մըն է American Enterprise Institute-ին մէջ՝ «Ուաշինկթընի շրջանակներուն մէջ նշանակալի ազդեցութիւն ունեցող աջակողմեայ ուղեղային կեդրոն [think tank] մը», որ կը հանդիսանայ Պուշի վարչակարգի արտաքին քաղաքականութեան գլխաւոր արարիչներէն մէկը, ինչպէս նաեւ պատերազմի միջոցով Իրաքի «վարչակարգի փոփոխութեան» համար նախատեսուած Պուշի վարչակարգի ծրագիրը առաջ մղող գլխաւոր ձայներէն մէկը: AEI դրամական նպաստ ստացաւ Bechtel Foundation-էն եւ ExxonMobil-էն:

«Նոյեմբեր. Brown & Root կը սկսի 42.5 միլիոն տոլլար գնահատուող մէկ տարուայ պայմանագիր մը, Պակրամի եւ Քանտահարի (Աֆղանիստան) ռազ-մակայաններու ծառայութիւններու ծախսերուն համար:

«**2003**

«Յունուար. *Ուօլ Սթրիթ Ճուրնալ* կը հաղորդէ՝ թէ անցեալ Հոկտեմբերին, Հալլիպըրթընի պաշտօնատարները ոչ-պաշտօնական հանդիպում ունեցած են փոխ նախագահ Չէնիի գրասենեակի ներկայացուցիչներուն հետ, հաշուար-կելու համար թէ ինչպէս կրնան պատերազմէ մը ետք անմիջապէս սկսիլ Իրաքի նաւթի արդիւնաբերութիւնը: Չէնի եւ Հալլիպըրթըն կը հերքեն այս հանդի-պումը:

«Մարտ. Խորհրդարանական Հէնրի Ուաքսման կը սկսի հետաքննել այն փաստը՝ թէ ԱՄՆ-ի Ճարտարագէտներու Բանակային Զօկատը առանց գնային յայտի [no-bid] KBR-ին շնորհած է պայմանագիր մը մարելու համար Իրաքի նաւթահորերու կրակները: Պայմանագիրը ունէր 7 միլիառ տոլլարի հսկայ ծախսային առաստաղ մը, մինչեւ եօթը տոկոս (490 միլիոն տոլլար) հասնող յաւելեալ վարձքերու: Առաքելութիւնը եւ պայմանագիրը «յատկացուեցան առանց որեւէ մրցոյթի կամ նոյնիսկ խորհրդարանին ուղղուած նախազգուշա-ցումի, [... եւ] կնքուեցան Մարտ 8-ին, իսկ հրապարակաւ յայտարարուեցան միայն Մարտ 24-ին:» Պայմանագիրը անժամկէտ է: Ան նաեւ ծախս-առաւել [cost-plus] պայմանագիր մըն է, այսինքն՝ ընկերութիւնը երաշխաւորուած է վերականգնել ծախսերը, առաւել այս ծախսերուն յաւելեալ տոկոս մը իբրեւ իր շահոյթը: Յետագային կը բացայայտուի, որ պայմանագիրը ոչ միայն կ՚արտօնէ կրակներ յանգեցնել, այլեւ վարել նաւթի դաշտերը: Մրցոյթի բացակայութեան մասին Ուաքսմանի հարցումներուն վարչակարգը կը պատասխանէ. «Զանքի շռայլ կրկնապատկում մը պիտի ըլլար [...] գաղտնի պահանջարկի մը

կատարումին համար հրաւիրել ուրիշ յանձնառուներ: Միայն Kellogg Brown & Root Services [...] կրնայ ծրագիրին իրագործումը սկսիլ խիստ կարճ նկատողութենէ ետք» եւ «ոչ մէկ ուրիշ յանձնառու կրնայ գոհացնել առաքելութեան պահանջները մատչելի ժամանակի ընթացքին:» Արդարեւ, CBS կը հաղորդէ՝ թէ ուրիշ որակեալ ընկերութիւններ փորձած են գին առաջարկել պայմանագիրներուն համար, բայց դուրս մղուած են ընթացքէն: GSM Consulting-ի նախագահ՝ Պոպ Կրէյս, կը կապուի Փենթակոնին հետ հարցնելու համար պայմանագիրներուն մասին: Ան Պաշտպանութեան Քարտուղարութենէն կը ստանայ 2002 Դեկտեմբեր 30 թուակիր նամակը, ուր գրուած է՝ որ «շատ կանուխ է ենթադրել թէ ինչ կրնայ պատահիլ երբ պատերազմ սկսի այդ տարածութիւններուն վրայ»: Ասիկա տեղի կ'ունենայ «Իրաքի մէջ նաւթահորերու կրակները յանգեցնելու մասին Հալլիպըրթընի եւ Ճարտարագէտներու Բանակային Ջոկատի բանակցութիւններէն մէկ ամիս ետք», եւ, իրականութեան մէջ, Պաշտպանութեան Քարտուղարութեան՝ Հալլիպըրթընին շնորհած պայմանագիրէն մէկ ամիս ետք: Աւելին, KBR անձամբ չյանգեցուց կրակները, այլ գործարքը յանձնարարեց ուրիշ ընկերութիւններու՝ Boots & Coots International Well Control Inc. եւ Wild Well Control Inc.:

«Հալլիպըրթընի հազարաւոր պաշտօնեաներ կ'աշխատին ԱՄՆ-ի ջոկատներու հետ Քուէյթի եւ Թուրքիոյ մէջ շուրջ մէկ միլիառ տոլլար արժողութեամբ ընդհանուր համաձայնութեամբ: KBR գործողութիւններ ստանձնած է նաեւ Աֆղանիստանի, Ճիպութիի, Վրաստանի, Յորդանանի եւ Ուզպեքիսթանի մէջ: 2001 Դեկտեմբերի պայմանագիրէն (LOGCAP) ի վեր տրուած առաջադրանքային պատուէրներու ընդհանուր ակնկալուող ծախսը կը հանդիսանայ մօտաւորապէս 830 միլիոն տոլլար:

«Մայիս 8. Հալլիպըրթըն կ'ընդունի նիճերիացի պաշտօնատարի մը վճարած ըլլալ 2.4 միլիոն տոլլար փոխան հարկային առաւելութիւններու [tax breaks]:

«Մայիս 30. Քսան բաժնետէրեր հաւաքական դատավարական հայց կը ներկայացնեն, ամբաստանելով Հալլիպըրթընը՝ որ Տիք Չէնիի ղեկավարութեան օրօք դիմած է 6 միլիոն տոլլարի խաբուսիկ հաշուապահական գործողութիւններու: Հալլիպըրթըն կը մերժէ որեւէ սխալականութիւն:

«Յուլիս 8. Իբրեւ հետեւանք Judicial Watch-ի փորձին՝ մղելու Սպիտակ Տունը երեւան բերել ոչ-կառավարական այն պաշտօնատարներուն անունները որոնց հետ յատուկ խումբը խորհրդակցած էր 2001-ին, Columbia Circuit-ի Նահանգի ԱՄՆ-ի Վերաքննիչ Դատարանը կը հաստատէ ատեանի դատարանի դատաւորին հրամանը եւ հետեւաբար կը մերժէ Չէնիի առաջարկը Energy Task Force-ի ամբողջ աշխատանքները գաղտնի պահելու առնչութեամբ:

«Սեպտեմբեր 14. *NBC*-ի Meet the Press հաղորդումին ընթացքին Չէնի կ'ըսէ. «Ճորճ Պուշի փոխ նախագահը դառնալու համար Հալլիպըրթընը թողելէս ի վեր, բոլոր կապերս խզեցի ընկերութեան [Հալլիպըրթըն] հետ եւ ձերբազատուեցայ իմ բոլոր ֆինանսական շահերէս։ Արդէն աւելի քան երեք տարի է որ բացարձակապէս ոչ մէկ ֆինանսական շահ ունիմ Հալլիպըրթընէն։» Բայց փոխ նախագահը պատշաճօրէն մոռցաւ յիշեցնել՝ որ ան տակաւին կը շարունակէ ընկերութենէն ստանալ տարեկան աւելի քան 150 հազար տոլլարի յետաձգուած թոշակ, միաժամանակ պահելով չգործադրուած արժեթուղթային հնարաւորութիւններու 433.333 բաժնետոմսեր։

«Դեկտեմբեր. Նախնական դատաքննութեան մը ժամանակ Defense Contract Audit Agency (DCAA) կը հաստատէ, թէ Հալլիպըրթըն եւ քուէյթեան ընկերութիւն մը՝ Altamnia, 2003 Սեպտեմբերին նուազագոյնը 61 միլիոն տոլլարի չափազանց բարձր գումարով կը բեռնաւորեն ԱՄՆ-ի կառավարութիւնը, Իրաք ներմուծուած կազոլինի ծախսերուն համար։ Հալլիպըրթընի KBR միաւորը կազոլինը Իրաք փոխադրելու համար մէկ կալոնը կը հաշուէր 2.64 տոլլար, մինչ իր մրցակիցները կազոլինը կը փոխադրէին նուազ քան կէս գինով։ DCAA նախապէս խնդրած է Փենթակոնի ընդհանուր վերակացուէն հետաքննել բարձր արժէքներուն մասին, որ պատասխանած է՝ թէ վառելանիւթի ներմուծումի պայմանագիրը Altanmia-ին տրուած է «անսովոր պայմաններու տակ։»

«2004

«Յունուար. Կը հաղորդուի՝ թէ Հալլիպըրթըն կը փափաքի փորել Մարս մոլորակին վրայ ԱՄՆ-ի հարկատուներու հաշուին։

«Յունուար 16. Տեմոքրաթներու Պալատի ներկայացուցիչ Հենրի Ուաքսման լուրջ խախտումներ կը բացայայտէ նաւթը Իրաք փոխադրելու Հալլիպըրթընի պայմանագիրին մէջ։

«Յունուար 17. Հալլիպըրթընի դուստր ընկերութիւն KBR-ին Բանակը կը շնորհէ 1.2 միլիառ տոլլարի արժողութեամբ պայմանագիր մը, հարաւային Իրաքի մէջ վերակառուցելու նաւթի արդիւնաբերութիւնը։ Նախապէս, 2003 Մարտին, Բանակը KBR-ին շնորհած էր առանց գնային յայտի [no-bid] պայմանագիր մը, վերակառուցելու հիւսիսային եւ հարաւային Իրաքի նաւթի ենթակառուցուածքները։ Բայց Հալլիպըրթընի նկատմամբ բարձրացած մտերմականութեան եւ կողմնակցութեան ամբաստութիւններու ճնշումին տակ, յետագային, 2003-ի աշնան, Բանակը պայմանագիրը կը բանայ մրցակցային գնային առաջարկի [bidding] առջեւ։ Բանակը պայմանագիրը կը բաժնէ հիւսիսային Իրաքի եւ հարաւային Իրաքի։ 800 միլիոն տոլլար արժողութեամբ հիւսիսային Իրաքի պայմանագիրը կը տրուի Քալիֆորնիա հաստատուած

Parson Corp.-ի եւ աւստրալիական ընկերութեան Worley Group Ltd.-ի միացեալ ձեռնարկութեան։

«Յունուար 23. Փարիզի մէջ ֆրանսացի դատաւոր մը կը զգուշացնէ՝ թէ Չէնի կրնայ մեղադրուիլ այն ամբաստանութեամբ, թէ Հալլիպըրթըն 180 միլիոն տոլլար կաշառք վճարած է կառուցելու համար նիճերիական կազի գործատուն մը։

«Յունուար 24. Հալլիպըրթըն կ'ընդունի՝ թէ իր երկու պաշտօնեաները ընդունած են 6 միլիոն տոլլարի կաշառք, որուն փոխարէն Քանակը Քուէյթ հաստատուած ընկերութեան մը ենթայանձնարարութիւն տուած է մասնակցելու Իրաքի վերակառուցումին։ Հալլիպըրթըն աշխատանքէ կը հեռացնէ այս երկու պաշտօնեաները։

«Յունուար 25. *CBS* հեռատեսիլի 60 Minute յայտագիրը ցոյց կու տայ՝ թէ ինչպէս Հալլիպըրթըն գործարք կը կատարէ Իրանի հետ, հակառակ որ ԱՄՆ-ի օրէնքը կ'արգիլէ ընկերութիւններուն գործարք կատարել անոր հետ։

«Յունուար 26. Նիւ Եորք քաղաքի վերահսկիչը կ'ամբաստանէ Հալլիպըրթընը, որ արիւնով հեղեղուած դրամ ստացած է ահաբեկչութիւնը պետականօրէն հովանաւորող երկիրներէ, ինչպէս՝ Իրան եւ Լիպիա։ Վերահսկիչ Ուիլիամ Թոմբսըն՝ որուն հասողութեան տակ կը գտնուի քաղաքի աշխատաւորներուն համար նախատեսուած 80 միլիառ տոլլարի թոշակ մը, կ'ըսէ՝ թէ ոստիկանները եւ հրշէջները զայրացած են, քանի որ իրենց հանգստեան փաթեթները կը պարունակեն ամերիկեան այնպիսի ընկերութիւններու պատկանող արժեթուղթեր՝ որոնք օգտաւէտ պայմանագիրներ կը կնքեն աւազակ պետութիւններու հետ, ինչպէս՝ Իրան, որ կը հովանաւորէ Հեզպոլլայի եւ Համասի նման ահաբեկչական խումբեր եւ կ'ակնկալուի ապաստանարան տուած ըլլալ Ալ Քաէտայի առաջնորդներուն։

«Յունուար 30. *Նիւ Եորք Թայմզ*ի յօդուածագիր Պոպ Հըրպըրթ կը մանրամասնէ՝ թէ ինչպէս օտարերկեայ դուստր ընկերութիւններ հիմնելով, Հալլիպըրթըն խոյս կու տայ ԱՄՆ-ի հարկերէն եւ արտահանումի արգելքներէն։ Հալլիպըրթընի պաշտօնատար Ուենտի Հոլ կը խոստովանի՝ որ 2002-ին ընկերութիւնը իբրեւ հարկ վճարած է ընդամէնը 15 միլիոն տոլլար, հակառակ որ վաստակած է 339 միլիոն տոլլար շահոյթ շարունակական գործողութիւններէ եւ ունեցած է 12.5 միլիառ տոլլար իբրեւ ընդհանուր եկամուտ։

«Յունուար. Հալլիպըրթըն կը բացայայտէ՝ թէ դուստր ընկերութիւն մը 2.4 միլիոն տոլլարի կաշառք վճարած է նիճերիական կառավարութեան պաշտօնատարի մը, փոխան հարկի նպաստաւոր վերաբերմունքի։

«Յունուար. Ներքին յուշագիրի մը մէջ Հալլիպըրթըն կ'ընդունի՝ որ կառավարական պայմանագիրներու ծախսերու վերահսկողութիւնները «հինցած» եւ

«տկար» են իսկ անոնց մատակարարութիւնը «անկազմակերպ» է եւ կը յատկանշուի «տկար ներքին վերահսկողութեամբ։» Այս յուշագիրը՝ որ գաղտնաբար կը փոխանցուի *Ուոլ Սթրիթ Ճուրնալ*ին, կը հակասէ ընկերութեան հանրային յայտարարութիւնները՝ որոնք կը յաւակնին թէ Իրաքի պայմանագիրներուն համար ընկերութիւնը ունի «ներքին վերահսկողութիւններու խստապահանջ համակարգ մը։»

«Յունուար. Հալլիպըրթըն կը սկսի ծանուցողական արշաւ մը՝ բարելաւելու համար իր աղօտացող պատկերը հասարակութեան առջեւ։ *CNN*-ի մէջ ցուցադրուող հեռատեսիլի ծանուցում մը կ'ըսէ՝ թէ Հալլիպըրթըն Իրաքի զինուորներուն կը տրամադրէ տաք ճաշեր, լուացարան եւ հեռախօսային կապեր։ Ան ցոյց կու տայ անապատային ծպտանքով զինուոր մը, որ բռնած է հեռաձայն մը, շրթունքը կը դողդղայ եւ կը պոռայ. «Աղջի՛կ մըն է։» Յայտարարող մը կ'ըսէ. «Հալլիպըրթըն՝ հպարտ ենք ծառայելու մեր բանակին։»

«Փետրուար. Փենթակոն կը հաղորդէ՝ որ Halliburton Company-ն կառավարութեան պիտի վերադարձնէ անցեալ տարի Իրաքի եւ Քուէյթի հինգ ռազմակայաններու ամերիկեան զօրախումբերուն սպասարկած ճաշերուն համար գանձած 27.4 միլիոն տոլլար գնահատուող յաւելեալ գումարը։ Յուլիս 2003-ին, ռազմական ճամբարի մը մէջ, KBR կառավարութենէն գանձած է միջին հաշուով 42 հազար ճաշի գումար բայց սպասարկած միայն 14 հազար ճաշ։ Փենթակոնի ունկնդիրները այս յաւելեալ գանձումները յայտնաբերած են Հալլիպըրթընի սովորական հաշուեքննութեան ընթացքին։

«Մարտ. 2004 Մարտ 1-ին, KBR-ին վստահուած է նուազագոյնը 3.9 միլիառ տոլլար արժողութեամբ վերակառուցողական աշխատանք Իրաքի եւ Աֆղանիստանի մէջ։»[33]

Ահաւասիկ, ուրեմն, անդրազգային ընկերութեան «դասական» նմոյշ մը՝ իր հաստատուն կապերով կառավարութեան եւ մամուլի հետ, որ նոյնիսկ ընդունակ է Իրաքի մէջ պատերազմ յառաջացնել իր շահոյթը բազմապատկելու համար։

---

[33] Հալլիպըրթընի վտանգաւոր դերակատարութեան մասին տե՛ս նաեւ՝ Homer Duncan, *Bush and Cheney's War: A War Without Justification*, Trafford Publishing, 2005; Lou Dubose and Jake Bernstein, *Vice: Dick Cheney and the Hijacking of the American Presidency*, Random House, 2006; Sandy Franks and Sara Nunnally, *Barbarians of Oil: How the World's Oil Addiction Threatens Global Prosperity and Four Investments to Protect Your Wealth*, New Jersey: John Wiley & Sons, Inc., 2011։

## ՀԱՅԱՍՏԱՆ՝ ԱՆԴՐԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ԲՆԱԿԱՎԱՅՐ

Հայաստանի նէօլիպերալ տնտեսութեան գլխաւոր բանալիները այսօր կը գտնուին անդրազգային ընկերութիւններու տնօրինութեան տակ, որուն մասին, դժբախտաբար, շատ քիչ կը խօսուի լրատուամիջոցներուն մէջ։

Ա.- ՋՈՒՐ

2000-ին, Քոչարեանի վարչակարգը կը սկսի կիրառել Միջազգային Պանքի ջուրի սեփականաշնորհումի քաղաքականութիւնը։ Առաջին պայմանագիրը կը ստորագրուի իտալական Acea անդրազգային ընկերութեան հետ՝ ստեղծելով Armenia Utility դուստր ընկերութիւնը, որ՝ ըստ կառավարումի պայմանագիրին (management contract), հինգ տարուայ ժամկէտով պիտի վերահսկէր Երեւան Ջրամատակարարման եւ Ջրահեռացման Ընկերութիւնը։ Անոր աշխատանքային տարածութիւնը Երեւանն էր։[34] Ժամկէտը վերջանալէն ետք, 2005 Դեկտեմբերին, Երեւան Ջրամատակարարման եւ Ջրահեռացման Ընկերութիւնը տասը տարուայ պայմանագիրով կը վարձակալուի (lease contract) ֆրանսական Veolia ջուրի անդրազգային ընկերութեան,[35] որ 2016-ի Փետրուարի նոր պայմանագիրով կ'երկարաձգուի մինչեւ 2016-ի վերջ։

2004-ին, Միջազգային Պանքի առաջարկով (աւելի ճիշդ՝ պատուէրով եւ պարտադրանքով) ֆրանսական Saur Group անդրազգային ընկերութեան Saur Sevan Sevices դուստր ընկերութիւնը տասը տարուայ համար կը սեփականաշնորհէ (management contract) Հայաստան Ջրամատակարարման եւ Ջրահեռացման Ընկերութիւնը, որուն աշխատանքային տարածութիւնը կ'ընդգրկէ 37 քաղաքներ (բացի Երեւանէն) եւ մերձակայ գիւղերը։[36] 2014-ին, պայմանագիրը կը նորոգուի մինչեւ 2016-ի կէսերը, ներգրաւելով նոր տարածութիւններ՝ Գիւմրի, Վանաձոր եւ Արմաւիր։[37]

2008-2012-ին, Շիրակ Ջրամատակարարման եւ Ջրահեռացման Ընկերութիւնը, Լոռի Ջրամատակարարման եւ Ջրահեռացման Ընկերութիւնը եւ Նոր

---

[34] In-Ho Keum, *Armenia Water Supply and Sanitation: Challenges, Achievements, and Future Directions*, Philippines: Asian Development Bank, 2011, p. 8:

[35] «Վարձակալութեան պայմանագիր», *Երեւան ջուր*, http://www.yerevandjur.am/hy/mer-masin/erewan-jowr/vardzakalowt-yan-paymanagir:

[36] *Armenia: Saur Sevan Services: Water Supply and Wastewater Management Services*, http://www.saur.com/en/international/saur-worldwide/armenia/:

[37] 'Saur in Armenia: Management Contract Renewed and Extended', *Saur*, Press Release, 3 March 2014:

Ակունք Ջրամատակարարման եւ Ջրահեռացման Ընկերութիւնը կը գտնուէին գերմանական MVV GmbH ընկերութեան հետ կնքուած կառավարումի պայմանագիրի (management contract) պարտաւորութիւններուն տակ:[38]

Veolia-ի ծրագիրը ֆինանսաւորուած էր Միջազգային Պանքի կողմէ, Saur-ը՝ Ասիայի Զարգացման Պանքի, իսկ MVV-ն՝ KfW գերմանական զարգացման պանքի:

Բ.- ԲՆԱԿԱՆ ԿԱԶ

Հայաստանի բնական կազի մատակարարումի եւ իրացումի իրաւունքը վերապահուած է ռուսական Գազպրոմ անդրազգային ընկերութեան Գազպրոմ Արմենիա դուստր ընկերութեան:[39] 1997-ին կը հիմնուի ՀայՌուսգազարդ փակ բաժնետիրական ընկերութիւնը, ուր, 2014-ի տուեալներով, Հայաստանի կառավարութեան կը պատկանէր 20 տոկոս բաժնեմասը: 2014-ին, Հայաստանի կառավարութիւնը այդ 20 տոկոսը վերջնականապէս կը վաճառէ ռուսական Գազպրոմին, կը վերանուանուի Գազպրոմ Արմենիա եւ կը դառնայ Գազպրոմի 100 տոկոսանոց դուստր ընկերութիւնը:[40]

Գ.- ԵԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Ահաւասիկ Հայաստանի ելեկտրականութիւնը մատակարարող միակ ընկերութեան՝ Հայաստանի Էլեկտրական Ցանցերուն (ՀԷՑ) վաճառքի պատմութիւնը, ինչպէս կը ներկայացնէ հետախուզական լրագրող Գրիշա Բալասանեան.

«ՀԷՑ-ը ստեղծուել է 2002թ.՝ 4 բաշխիչ ցանցերի միաւորման արդիւնքում՝ Երեւանի Էլեկտրացանց ՓԲԸ, Հիւսիսային Էլեկտրացանց ՓԲԸ, Հարաւային Էլեկտրացանց ՓԲԸ եւ Կենտրոնական Էլեկտրացանց ՓԲԸ: Նոյն թուականին նորաստեղծ ընկերութիւնը միջազգային մրցոյթով 12 միլիոն դոլարով վաճառւում է բրիտանական օֆշորում գրանցուած Midland Resources Holding ընկերութեանը: Այս ընկերութեան հիմնադիրներն էին կանադացի Ալեքսանդր Շնայդէրը եւ ուկրաինացի Էդուարդ Շիֆինը: Ընկերութիւնը մասնագիտանում էր յետխորհրդային տարածքներում սեփականաշնորհման գործարքներում՝ ակտիւների յետագայ վերավաճառքի միջոցով շահոյթի ստացմամբ: Եւ

---

[38] In-Ho Keum, նշ. աշխ.ը, էջ 8:

[39] ««Գազպրոմ Արմենիա» Ընկերութեան մասին», *Գազպրոմ Արմենիա*, http://armenia-am.gazprom.com/:

[40] Սարգիս Յարութիւնեան, ««ՀայՌուսգազարդ»-ը դարձաւ «Գազպրոմ Արմենիա»», *Ազատութեան ռադիոկայան*, 17 Յունուար 2014,
http://www.azatutyun.am/content/article/25233023.html:

իսկապէս՝ 2006 թ. ՀէՑ-ի սեփականատէր է դառնում ռուսական Ինտէր ՌԱՕ ԵէՍ ընկերութեան դուստր ձեռնարկութիւններից մէկը: Ներկայում ՀէՑ-ի միակ սեփականատէրը Ամստերդանում գրանցուած INTER RAO Credit B.V. ընկերութիւնն է, որը Ինտէր ՌԱՕ ԵէՍ-ի դուստր ընկերութիւնն է: Midland Resources Holding-ի եւ Ինտէր ՌԱՕ ԵէՍ-ի միջեւ գործարքի արժէքը հրապարակուած չէ, սակայն որոշ տեղեկութիւններով՝ ռուսական կողմին այն արժեցրել է մօտ 40 միլիոն դոլար:»[41]

2015-ին, Հայաստանի Էլեկտրական Ցանցեր փակ բաժնետիրական ընկերութիւնը կը գնէ Սամուէլ Կարապետեանի Ռուսաստանի մէջ արձանագրուած Տաշիր ընկերութիւններու խումբը:

Դ.- ՀԵՌԱՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ

Քրիստինէ Աղալարեան եւ Էդիկ Բաղդասարեան կը համառօտագրեն Հայաստանի հեռահաղորդակցութեան (telecommunication) վիճակը.

«Հայաստանի հեռահաղորդակցութեան ոլորտը հիմնականում տնօրինում են օտարերկեայ ընկերութիւնները: Դրանք միջազգային հոլդինգներ են, այլ երկրների կառավարութիւնների հիմնած ընկերութիւններ, ինչպէս նաեւ օֆշորային տարբեր գօտիներում գրանցուած ընկերութիւններ: Դրանց մէջ, ինչպէս Հայաստանի տնտեսութեան այլ ոլորտներում, գերակշռողը ռուսական ընկերութիւններն են:

«Հեռահաղորդակցութեան ոլորտում բաժնեմաս ունեն հայաստանցի նախկին եւ ներկայ պաշտօնեաները եւ նրանց հարազատները, որոնք փորձել են թաքնուել օֆշորային ընկերութիւնների յետնաբեմերում:»[42]

Հայաստանի հեռահաղորդակցութեան կարեւոր ընկերութիւնն է ԱրմէնՏէլ, որ Հայաստանին կը մատակարարէ բջիջային եւ ամրակցուած հեռաձայնային կապ եւ համացանցային կապ: Ան ունի վաճառքի երկար պատմութիւն, ինչպէս ցոյց կու տայ Սուրէն Դեհէրեան.

«1990-ականներուն համացանցային կապը սահմանափակուած էր գլխաւորապէս աքատեմիք հիմնարկներուն: Պետութիւնը հեռախօսի ցանցը կը վերանուանէ Armenia Telephone Company (կրճատ՝ ԱրմէնՏէլ), եւ 1995-ին բաժնե-

[41] Գրիշա Բալասանեան, «Ինչո՞ւ է թանկանում էլեկտրաէներգիան. ՀէՑ-ի վնասների ոդիսականը-1», *Հետք*, 12 Մայիս 2015, http://hetq.am/arm/news/60169/inchu-e-tankanum-elektraenergian-hec-i-vnasneri-odisakany-1.html/:

[42] Քրիստինէ Աղալարեան, Էդիկ Բաղդասարեան, «Հայաստանի ինտերնէտի սեփականատէրերը», *Հետք*, 6 Հոկտեմբեր 2015, http://hetq.am/arm/news/62887/hayastani-interneti-sepakanaterery.html:

տոմսերուն 49%-ը կը ծախէ ԱՄՆ-ի Trans World Telecom ընկերութեան: Ամերիկեան ընկերութիւնը հայկական շուկային մէջ կը մնայ միայն երեք տարի: 1998 Մարտին, Յունաստանի Hellenic Telecommunications Organization SA (OTE) կը դառնայ ԱրմէնՏէլի 90 տոկոսի սեփականատէրը: Կառավարութիւնը կը պահէ բաժնետոմսերուն 1 տոկոսը եւ OTE-ին կու տայ 15 տարուայ մենաշնորհի [monopoly] իրաւունք հեռահաղորդակցութեան բնագաւառին մէջ: [...] 2004-ին, 7 միլիոն ամերիկեան տոլլարի փոխարէն, OTE կը համաձայնի հրաժարիլ ԱրմէնՏէլի բջիջային հեռախօսային ծառայութեան իր մենաշնորհումէն: Ճիշդ ասկէ ետք, լիբանանեան ընկերութիւն մը՝ K-Telecom, հայկական շուկայ կը ներկայացնէ VivaCell ապրանքանիշը [brand]: 2006 Նոյեմբերին, OTE իր 90 տոկոս բաժնետոմսերը կը ծախէ VimpelCom ռուսական [ռուս-նորվեկիական, Հ.Ա.] հեռահաղորդակցային ընկերութեան: Կառավարութիւնը կը համաձայնի իր 10 տոկոս բաժնետոմսերը ծախել ռուսական ընկերութեան, պայմանով որ վերջ տայ գոյութիւն ունեցող մենաշնորհային վիճակին: 2007 Մարտին, VimpelCom կը ստանայ կառավարութեան 10 տոկոս բաժնեգինը մօտաւորապէս 38.6 միլիոն եւրոյի (շուրջ 52 միլիոն ամերիկեան տոլլար) արժողութեամբ եւ կը յայտարարէ հայկական հեռահաղորդակցութիւններու շուկայի մենաշնորհին վերջը:

«Հեռահաղորդակցութիւններու ասպարէզին ազատականացումով, համացանցային շուկայ կը մտնեն երկու ուրիշ ընկերութիւններ՝ FiberNet եւ GNC-Alfa:»[43]

ԱրմէնՏէլի 100% ռուս-նորվեկականացումով «կ՚ազատականացուի» շուկան, միայն բազմապատկելու համար անդրազգային ընկերութիւններուն մուտքը:

Այսօր, ԱրմէնՏէլ կը հանդիսանայ Հայաստանի առաջին համացանցի մատակարարը: Երկրորդ մատակարարն է ՎիվաՍէլ-ՄՏՍ ռուս-լիբանանեան ընկերութիւնը: Քրիստինէ Աղալարեանի եւ Էդիկ Բաղդասարեանի վերլուծութիւնը աւելի քան բաւարար է.

«Լիբանանցի գործարար Ֆատուշների ընտանիքի, մասնաւորապէս՝ գործարար Պիէր Ֆատուշի մասնակցութեամբ 2002թ. Լեռնային Ղարաբաղում հիմնադրուել էր Ղարաբաղ Տելեկոմ ՓԲԸ-ն եւ դարձել Ղարաբաղի բջջային եւ ինտերնէտ կապի միակ օպերատորը: Ֆատուշների ընտանիքը 2004թ. Հայաստանում

[43] Suren Deheryan, ‘Armenia - New Media Transform Politics’, *Global Journalism Practice and New Media Performance*, edited by Yusuf Kalyango, Jr. and David H. Mould, Palgrave Macmillan, 2014:

հիմնադրում է Ղ-Տելեկոմը եւ 2005թ. մուտք գործում որպէս բջջային օպերատոր ՎիվաՍէլ ապրանքանիշի ներքոյ:

«Լիբանանեան ընկերութիւնների ռեգիստրից Investigative Dashboard-ի՝ OCCRP-ի մեր գործընկերների միջոցով ձեռք բերած փաստաթղթի համաձայն՝ Ղ-Տէլէկոմ ՓԲ ընկերութեան 100 տոկոսի բաժնետէր է Լիբանանում գրանցուած ԿՏ (ՀՈԼԴԻՆԳ) ՍԱԼ ընկերութիւնը: ԿՏ (ՀՈԼԴԻՆԳ) ՍԱԼի հիմնական բաժնետէրն էլ Բրիտանական Վիրջինեան կղզիներում գրանցուած International Cell Holding Ltd-ն է (բաժնետոմսերի գերիշխող մասը՝ 29998 հատը), 2 բաժնետոմս էլ տնօրինում են ռուսաստանեան ՄՏՍ-Ի երկու ղեկավար պաշտօններ զբաղեցնող աշխատակիցներ Արտիոմ Վասիլեւն ու Պաւէլ Մաշարովը:

«2007-ին ՌԴ "Мобильные ТелеСистемы" ԲԲԸ-ն (МТС) ձեռք էր բերել Ղ-Տէլէկոմի բաժնետէր International Cell Holding Ltd-ի 80% բաժնեմասը: Գործարքն արժեցել էր 310 միլիոն եւրօ, ներառեալ 50 միլիոն եւրօ, որը պէտք է վճարուէր 2008-2010թթ., եթէ Ղ-Տէլէկոմն արդարացնէր սպասուած շահոյթը եւ իրականացնէր առաջադրուած նպատակները: Ռուսական МТС-ը նաեւ 140 միլիոն եւրօ վարկ էր տրամադրել հայաստանեան ՎիվաՄէլին պարտքերի մարման եւ ներդրումային ծրագրի ֆինանսաւորման համար: Մնացեալ 20%-ի վերաբերեալ օպցիոն համաձայնութիւն են կնքել՝ յետագայում դրանք ձեռք բերելու հնարաւորութեամբ:

«ՎիվաՄէլ-ՄՏՍի գլխաւոր տնօրէն, լիբանանահայ Ռալֆ Եիրիկեանը մեր գրաւոր հարցմանը պատասխանել է, որ International Cell Holding Ltd-ի 20%-ը մինչ օրս տնօրինում է լիբանանեան Fattouche Group-ը:

«Համաձայն Լիբանանի ընկերութիւնների գրանցման ռեգիստրի՝ Fattouche Investments Group Holding SAL ընկերութիւնը երեք բաժնետէր ունի՝ եղբայրներ Պիէռ եւ Մոսա Միշէլ Ֆատուշները՝ համապատասխանաբար 50% եւ 49% բաժնեմասով, փոքր բաժնեմաս ունի նաեւ լիբանանցի Ռաշիդ Յովսէփ Աբօու Շաքրան՝ 1%: Մովսէս եւ Պիէռ Ֆատուշները Լիբանանի խորհրդարանի պատգամաւոր, նախարար Նիկոլաս Միշէլ Ֆատուշի եղբայրներն են, որոնք ներգրաւուած են բազմաթիւ բիզնէս նախագծերում, այդ թւում՝ պետական գնումների տենդէրների միջոցով իրականացուող նախագծերում:

«Այժմ անդրադառնանք ռուսական МТС-ի տէրերին: Համաձայն МТС-ի կայքի տուեալների՝ ընկերութեան բաժնետոմսերի 51.5%-ը պատկանում է Սիստեմա բաժնետիրական ֆինանսական կորպորացիային (АФК Система): МТС-ի մնացեալ 48.5% բաժնեմասը ազատ շրջանառութեան մէջ է:

«1993 թուականին ստեղծուած Սիստեմա ԲՖԿ-ն Ռուսաստանի խոշորագոյն հոլդինգներից է, որն ընկերութիւններ է միաւորում հեռուստահաղորդակցման,

տեխնոլոգիաների, ապահովագրութեան, անշարժ գոյքի, մանրածախ առեւտրի, մեդիայի, բանկային հատուածի եւ բժշկութեան ոլորտներում:

«2009-ից Սիստեմա ԲՖԿ-ի տնօրէնների խորհրդում է նաեւ ՀՀ երկրորդ նախագահ Ռոբերտ Քոչարեանը, ով նաեւ բաժնեմաս ունի այնտեղ: Համաձայն ընկերութեան կայքի հաղորդագրութեան՝ 2014թ. ամռանը Քոչարեանի բաժնեմասը կազմել է 0,0052%:

«Սիստեմա ԲՖԿ-ի խոշոր բաժնետէրը (64%), ինչպէս նաեւ տնօրէնների խորհրդի նախագահը՝ Ռուսաստանում յայտնի գործարար Վլադիմիր Եւտուշենկոն է: Վ. Եւտուշենկոն 2014թ., ըստ Ռուսաստանի Դաշնութեան Քննչական Կոմիտէի հաղորդագրութեան, մեղադրւում էր փողերի լուացման մէջ եւ տնային կալանքի տակ էր: 2014 թ. սեպտեմբերի 16-ին Քննչական Կոմիտէի ներկայացուցիչներն ընկերութեան Մոսկուայի գրասենեակում քննչական գործողութիւններ են իրականացրել: 2014թ. դեկտեմբերի վերջին ազատել են տնային կալանքից:

«Լոնդոնեան բորսայում շրջանառւում են Սիստեմա ԲՖԿ-ի 19% բաժնետոմսերը:»[44]

Աղալարեան եւ Բաղդասարեան նոյն յօդուածին մէջ մանրամասն կը բացայայտեն նաեւ Հայաստանի ուրիշ համացանցային մատակարարողներու՝ Արմենիան Դէյթաքոմ Քամփնիի (ADC), Եուքոմի (Ucom) եւ ՋԻԷՆՍԻ-Ալֆայի (GNC Alfa) օտարերկեայ ընկերութիւններու պատկանելութիւնը:[45]

Ե.- ՀԱՆՔԱՅԻՆ ԱՐԴԻՒՆԱԲԵՐՈՒԹԻՒՆ

Հայաստանի հանքային արտադրութեան գլխաւոր մասը կը գտնուի «օտար»-ներու ձեռքը, ինչպէս ցոյց կու տայ International Business Publications-ի հետեւեալ տեղեկութիւնները.

«Օտար ներդրողները կը վերահսկեն Հայաստանի հանքային արդիւնաբերութեան նշանակալի բաժինը: Արմենալ՝ որ Քանաքեռի մէջ գործող փայլաթիթեղագլանումի գործարան մըն է, կը հանդիսանայ Ռուսաստանի Ռուսալ Միացեալ Ընկերութեան դուստր ընկերութիւնը: Զանգեզուրի պղնձամոլիբդէնային կոմպինատը կը սեփականաշնորհուի 2004-ին, որուն սեփականատէրերը կը դառնան Գերմանիոյ Cronimet Mining GmbH՝ 60%, Երեւանի Մաքուր Երկաթ բաց բաժնետիրական ընկերութիւնը՝ 15%, Armenian Molybdenum

[44] Քրիստինէ Աղալարեան, Էդիկ Բաղդասարեան, «Հայաստանի ինտերնէտի սեփականատէրերը», *Հետք*, 6 Հոկտեմբեր 2015, http://hetq.am/arm/news/62887/hayastani-interneti-sepakanaterery.html:

[45] Անդ:

Production ՍՊՀ-ն՝ 12.5% եւ Zangezur Mining ՍՊՀ-ն (որ կը հանդիսանար ձեռնարկութեան նախկին ձեռնարկատէրը)՝ 12.5%։

«GeoProMining Ltd՝ որ 2001-ին հիմնուած հանքային աղբիւրներու սեփական ընկերութիւն մըն էր, Հայաստանի մէջ ունի թողօններ [assets], որոնք կը պարունակեն Ագարակի պղնձամոլիբդէնային հանքաքարի արդիւնաբերող ու վերամշակող կոմպինատը, Սոթքի ոսկիի հանքը եւ Արարատ ոսկիի արդիւնաբերութեան ձեռնարկութիւնը։ Ան Ագարակի կոմպինատը կը գնէ 2007 Դեկտեմբերին իսկ Սոթքի հանքային համալիրը 2008-ին։ [...]

«Ալավերդիի պղնձաձուլական գործարանին սեփականատէրն է Armenian Copper Programme փակ բաժնետիրական ընկերութիւնը։ Լիքթէնսթայնի մէջ արձանագրուած Vallex F.M. Establishment ընկերութիւնը կը սեփականատիրէ Armenian Copper Programme-ի 81%-ը եւ ռուս գործարար մը կը սեփականատիրէ մնացած 19%-ը։ Armenian Copper Programme-ը՝ որ կ'արտադրէ ֆերրոմոլիպտէն, մետաղ մոլիպտէն եւ ռենիում աղեր, 51%-ով սեփականութիւնն է Cronimet Mining-ին իսկ մնացած բաժնետոմսերը կը պատկանին հայ քաղաքացիներուն։»[46]

Ասոնցմէ զատ, հանքային արտադրութեան մէջ ներգաւուած են նաեւ ուրիշ զանազան ընկերութիւններ։ Անոնցմէ մէկն էր Metal Prince Ltd ընկերութիւնը, որ օֆշորային գրանցում ունէր բրիտանական Նեւիս հարկային ապաստան (հարկային դրախտ) կղզիին մէջ եւ կը պատկանէր Սերոբ Տէր-Պետրոսեանին։ Ծանօթ է, որ օֆշորային գրանցումն ինքնին ծառայութիւն մըն է անդրազգային ֆինանսական ընկերութիւններուն, շատ քիչ նպաստ բերելով տեղական, այս պարագային Հայաստանի, տնտեսութեան։ Metal Prince Ltd ընկերութիւնը կը շահագործէր Շամլուղի, Արմանիսի եւ Դաստակերտի հանքավայրերը, խաղընկերներ ունենալով ռուսական ընկերութիւններ։ 2007-ին անոր բաժնետոմսերը կ'անցնին ռուսական Նեւա-Ռուս անդրազգային ընկերութեան։ 2013 Օգոստոսին *ԷկոԼուր* կու տայ մանրամասնութիւնները.

«Metal Prince Ltd կորպորացիան, որի սեփականատէրը Սերոբ Տէր-Պետրոսեանն է, Հայաստանում իր գործունէութիւնը սկսել է 2000թ-ին՝ գրանցելով օֆշորային գօտում՝ բրիտանական Նեւիս կղզում, երեք դուստր ձեռնարկութիւններ՝ Ախթալայի ԼՀԿ ՓԲԸ, Սագամար ՓԲԸ եւ Մոլիբդէնի Աշխարհ ՍՊԸ։ Եւ, համապատասխանաբար, ձեռք է բերել լեռնային իրաւունք՝ շահագործելու Շամլուղի պղնձի (աֆիլացուած է Ախթալայի ԼՀԿ-ի հետ), Արմանիսի ոսկու

[46] *Armenia: Mineral, Mining Sector Investment and Business Guide*, Volume 1, International Business Publications, USA, 2013, p. 28:

բազմամետաղային (աֆիլացուած է Սագամարի ԼՀԿ-ի հետ) եւ Դաստակերտի պղնձամոլիբդէնային հանքավայրերը։ 2007թ-ին խաղի մէջ մտաւ ռուսական Նեւա-Ռուս ընկերութիւնը։ Եւ, հետզհետէ, ձեռք բերեց Մետալ Փրինսից բոլոր երեք ընկերութիւնների բաժնետոմսերը։ Գործարքի վերաբերեալ մանրամասները չեն հաղորդւում։ Սրա հետ մէկտեղ, Նեւա-Ռուսը գնել է մէկ ուրիշ ռուսական GeoProMining ընկերութիւնից նրա վրացական Մանդէուլի եւ Կվարցիտ ձեռնարկութիւնների ակտիւները։ Հարկ է յիշեցնել, որ GeoProMining-ը աշխատում է Հայաստանի ամենախոշոր Սոտքի ոսկու հանքավայրում եւ Ագարակի պղնձամոլիբդէնային հանքավայրում։ Այս բոլոր տարիներին Նեւա-Ռուսը յայտարարել է իր մասին որպէս ներդնող ընկերութիւն, ինչը նշանակում է, որ նա մտադիր չի եղել պատասխանատուութիւն կրել շրջակայ միջավայրի այն բոլոր աւիրածութիւնների համար, որոնք պատճառել են իրեն ենթարկուող ձեռնարկութիւնները։»[47]

Թեղուտը ամբողջութեամբ կիպրոսեան օֆշոր մըն է, ինչպէս կը բացայայտեն Քրիստինէ Աղալարեան եւ Էդիկ Բաղդասարեան.

«Թեղուտի հանքավայրը շահագործող Թեղուտ ՓԲԸ-ն Հայաստանում գրանցուել է 2006-ին։ 100% բաժնետէրը մայր ընկերութիւն համարուող Արմենիան Քափըր Փրոգրամ ՓԲԸ-ն (ACP) է եղել։ 2008թ. խումբը վարկային պայմանագիր է կնքել ՎՏԲ Բանկի հետ՝ Թեղուտի հանքը շահագործելու համար աւելի քան 283 միլիոն դոլար ստանալու նպատակով։

«Արմենիան Քափըր Փրոգրամ ՓԲԸ-ի 2011թ. համախմբուած ֆինանսական հաշուետուութիւնում նշւում է, որ 2011թ. նոյեմբերին, որպէս ՎՏԲ խմբի հետ կնքուած ֆինանսաւորման պայմանագրի մաս, Թեղուտ ՓԲԸ-ի բաժնետոմսերի 100%-ը փոխանցուել է Կիպրոսում գրանցուած Թեղուտ Ինվեստմենտս Լիմիթէդ ՍՊԸ-ին (Teghout Investments Limited)։ Այժմ կիպրոսեան ընկերութեան բաժնետոմսերի 50.05%-ը պատկանում է Արմենիան Քափըր Փրոգրամին, իսկ մնացածը՝ ՎՏԲ Բանկ ԲԲԸ-ի կողմից ղեկավարուող ՎՏԲ խմբին։ Այդպէս, յամենայնդէպս, Վալլեքսն է ասում։

«Համաձայն Կիպրոսի ընկերութիւնների գրանցան պաշտօնական ռեգիստրի՝ Թեղուտ Ինվեստմենտս Լիմիթէդը երկու բաժնետէր ունի՝ Արմենիան Քափըր Փրոգրամ ՓԲԸ-ն (50.05%) եւ Կիպրոսում գրանցուած մէկ այլ ընկերութիւն՝ Nairi Infrastructure Capital Limited (49.95%)։ Nairi Infrastructure Capital Limited-ի բաժնետէրը կիպրոսեան մէկ այլ ընկերութիւն է՝ A.T.S.Nominees

---

[47] «Ո՞վ է կանգնած թանկարժէք մետաղների ետեւում», *ԷկոԼուր*, 2 Օգոստոս 2013, http://www.ecolur.org/hy/news/mining/who-stands-behind-metal-prince/5146/։

Limited, որի բաժնետէրերը երեք յոյներ են՝ նոյն ազգանունով, գրանցուած են նոյն հասցէում:»[48]

Հանքային «ներդրումներ»-ը անվերջանալի են:

2015 Օգոստոսին Սիւնիքի մարզի Լիճք գիւղի պղինձի հանքի շահագործումին իրաւունքը կը յանձնուի Tatstoun ռուսական ընկերութեան:[49]

2015 Դեկտեմբերին տնտեսութեան նախարար Կարէն Ճշմարիտեան կը յայտարարէ՝ թէ Ամուլսարի նոր հանքավայրի շինարարութիւնը եւ շահագործումը պիտի յանձնուի Lydian International ընկերութեան:[50]

2016 Մարտին ռուսական Պոլիմետալ ընկերութիւնը կը յայտարարէ՝ թէ գանատական Dundee Precious Metals-էն գնած է Կապանի ոսկիի գործող հանքը:[51]

*Կովկասում հանքարդիւնաբերութեան ոլորտում բնապահպանական եւ սոցիալական հաշուետուողականութեան խթանում* ծրագիրի շրջանակներուն մէջ 2015-ին կը պատրաստուի ու կը հրատարակուի Հայաստանի հանքարդիւնաբերութեան մասին համապարփակ նկարագիր մը: Իր յաւելուածներէն մէկուն մէջ կը ցանկագրուին հանքերը, անոնց սեփականութեան իրաւունքի տէրերը եւ արտադրական տուեալները: Այս ցանկը նոյնութեամբ կը պատճէնահանեմ յաջորդ էջերուն մէջ: Հետաքրքրական է շահագործումի սեփականութեան իրաւունքը ունեցող ընկերութիւններուն «ազգութիւն»-ները: Հայաստան անունին հազուադէպ կարելի է հանդիպիլ, չմոռնալով նաեւ որ հայկականները յաճախ կը հանդիսանան անդրազգային ընկերութիւններու դուստր ընկերութիւնները:[52]

---

[48] Քրիստինէ Աղալարեան եւ Էդիկ Բաղդասարեան, «Թեղուտի օֆշորային թնջուկը եւ Վալերի Մեջլումեանի բիզնէս-կայսրութիւնը», *Հետք*, 29 Ապրիլ 2014, http://hetq.am/arm/news/54322/texuti-ofshorayin-tnjuky-ev-valeri-mejlumyani-biznes-kaysrutyuny.html:

[49] Գագիկ Աղբալեան, «Մեղրիում նախատեսւում է 19 նոր հանք բացել», *armtimes.com*, 27 Օգոստոս 2015, http://armtimes.com/hy/read/69159:

[50] «Ամուլսարի հանքավայրի շինաշխատանքների համար կ'իրականացուի 460-480 մլն դոլարի ներդրումներ. Կ. Ճշմարիտեան», *ԹԵՐԹ.am*, 3 Դեկտեմբեր 2015, http://www.tert.am/am/news/2015/12/03/chshmarityan/1863022:

[51] «Կանադական ընկերութիւնը Կապանի ոսկու հանքը վաճառում է ռուսական «Պոլիմետալ» ընկերութեանը», *armtimes.com*, 2 Մարտ 2016, http://armtimes.com/hy/read/80669:

[52] *Հանքարդիւնաբերութիւնը Հայաստանում. համապարփակ նկարագիր, վերլուծութիւն*, պատրաստուել է «Կովկասում հանքարդիւնաբերութեան ոլորտում բնապահպանական եւ սոցիալական հաշուետուողականութեան խթանում» ծրագրի շրջանակներում, Երեւան, 2015, էջ 103-106:

Հավելված 1. Հայաստանի մետաղային հանքավայրերը

| N | Հանքի անվանումը | Հանածոնե րի կուտակնե ր, 1000 տ | Մետաղային կուտակներ | | Սեփականության իրավունք | Տարեկան արտադրողականությ ուն, 1000տ |
|---|---|---|---|---|---|---|
| ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱՂՆԵՐ<br>*Պղնձի հանքեր* | | | | | | |
| | | | | | | |
| 1 | Ալավերդի | 1,268.0 | Cu 66,200 տ | | Վալեքս Գրուպ (ACP), (Հայաստան և Լիխտենշտեյն) | Չգործող (Ստորգետնյա հանք) |
| *Պղնձա-մոլիբդենային հանքեր* | | | | | | |
| 2 | Ագարակ | 30,930.7 | Mo- 7,500<br>Au-640.3 կգ<br>Re-6.81 տ<br>Bi-50.13 տ | Cu-117.1<br>Ag-29.7 տ<br>Se-83.52 տ<br>S-323.8 | ԳեոՊրոՄայնինգ, (Ռուսաստանի Դաշնություն) | Գործող - մոտ 3,000.0-3,500.0 (Բացահանք) |
| 3 | Թեղուտ | 453,796.0 | Mo-97,940տ<br>Au-4,776 կգ | Cu-1,609,700տ<br>Ag- 303.8 տ | Վալեքս Գրուպ (ACP), (Հայաստան և Լիխտենշտեյն) | Գործող (Բացահանք) |
| 4 | Այգեձոր | 124,208.0 | Mo-41,320տ | Cu-207,300տ | Տաշտուն ՍՊԸ. Թխկուտ տեղանք (Հայաստան)<br>Ակտիվ լեռնագործ. Կենտրոնական տեղամաս (Հայաստան) | Չգործող (Բացահանք. պատրաստված գործելու 600,0 (Թխկուտ) 500,0 (Կենտրոնական) տարեկան արտադրողականությ ամբ) |
| 5 | Դաստակերտ | 18,345.6 | Mo-10,400տ | Cu-127,500տ | Մոլիբդենի աշխարհ-մասնաճյուղ Գլոբալ Մետալս Գրուպ «Նաա Ռուս» ընկերություն (Ռուսաստանի Դաշնություն) | Չգործող (Բացահանք. պատրաստված գործելու 2015թ. 2,000.0 տարեկան արտադրողականությ ամբ) |
| 6 | Լիճք | 34,065.0 | Mo -480 տ<br>Cu-214,200 տ<br>Se 35.0 տ<br>S 110.0 տ | Au 584.0 կգ<br>Ag 43.6 տ<br>Te 20.1 տ | Տաշտուն ՍՊԸ | Չգործող (Բացահանք. պատրաստված գործելու 500,0 տարեկան արտադրողականությ ամբ) |
| 7 | Հանքավան | 127,742.0 | Mo- 39,053 տ<br>Re 22.6 տ<br>Se 5.43 տ<br>Te 2.7 տ | Cu 129,300 տ<br>Bi 10.23 տ<br>Ge 269.55 տ<br>Au 31,894 կգ<br>Ag 112.31 տ | Ոսկու հանքաքար ՍՊԸ | Չգործող (Բացահանք) |
| 8 | Քաջարան | 2,244,000.0 | Mo-737,000 տ | Cu-5,274,000տ | Զանգեզուրի պղնձա-մոլիբդենային կոմբինատ ՓԲԸ | Գործող (Բացահանք – տարեկան |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | | | (Գլխավոր բաժնետեր՝ Քրոնիմետ Մայնինգ ԷյՋի (60%) Գերմանիա | արտադրողականությունը՝ մոտ 17000) |

| | Հանքի անվանումը | Հանածոյի կուտակներ, 1000 տ | Մետաղային կուտակներ | | Սեփականության իրավունք | Տարեկան արտադրողականություն, 1000տ |
|---|---|---|---|---|---|---|
| ԳՈՒՆԱՎՈՐ ՄԵՏԱՂՆԵՐ<br>***<u>Պղնձի-կոլչեդանային հանքեր</u>*** | | | | | | |
| 9 | Կապան | 3,684.0 | Au-433.84 կգ | Cu-142,700 տ | Կոնսերվացված | Չգործող |
| 10 | Շամլուղ | 4,462.0 | Cu-152,500 տ<br>Pb- 4,900 տ<br>Zn-14,200 տ | Au-1798.0 կգ<br>Ag-28.0 տ | Մեթալ Փրինս ՍՊԸ Բրիտանական Նեվիս Այլենդ | Գործող-մոտ 200.0 (Կոմբինատ՝ բացահանք, ստորգետնյա հանք) |
| ***<u>Ոսկի-բազմամետաղային հանքեր</u>*** | | | | | | |
| 11 | Շահումյան | 18,000.0 | Au-42,500 կգ<br>Ag- 882.12 տ<br>Cu-110,300 տ | Zn-447,900տ<br>Pb-33,7 տ | Դանդի Փրեշս Մեթալս Ինք. (Կանադա) | Գործող (Ստորգետնյա հանք, տարեկան արտադրողականությունը՝ 550.0-600.0) |
| 12 | Ազատեկ | 8,307.4 | Au-19,558 կգ<br>Ag-434.0 տ<br>Pb 40,200.0 տ<br>Se- 52.6 տ<br>Bi-254.8 տ<br>Ga-133.5 տ<br>S-418.4 տ | Cu-14,800 տ<br>Sb-5,400 տ<br>Zn 24,100 տ<br>Te-12.9 տ<br>Cd-113.7 տ<br>As-28.5 տ | Ազատեկգոլդ ՓԲԸ Անգլո-Աֆրիկյան Միներալս ԲԲԸ և Ալրոսա | Չգործող (Ստորգետնյա հանք, տարեկան արտադրողականությունը պետք է լինի 200.0) |
| 13 | Լիճքվազ-Թեյ | 3,026.0 | Au-17,870 կգ<br>Ag- 97,7 տ | Cu-11,980 տ | ԷլՎԻ գոլդ Մայնինգ ՓԲԸ – Գլոբալ Մեթալս Գրուպ «Նևա Ռուս» ընկերություն (Ռուսաստանի Դաշնություն) | Չգործող-մոտ 400.0 (Կոմբինատ՝ բացահանք, ստորգետնյա հանք) |

| N | Հանքի անվանումը | Հանածոների կուտակները, 1000 տ | Մետաղային կուտակներ | | Սեփականության իրավունք | Տարեկան արտադրողականություն, 1000տ |
|---|---|---|---|---|---|---|
| 14 | Տերտեր ասար | 174,700.0 | Au-2,016.4 կգ<br>Ag-16,2 տ | Cu-1,038.9 | Սիփան-1 | Չգործող<br>(Ստորգետնյա հանք, տարեկան արտադրողականությունը պետք է լինի 50.0) |
| 15 | Արմանիս | 14,833.3 | Cu-160,000 տ<br>Zn-381,300 տ<br>Pb-178,900 տ | Au-12547 կգ<br>Ag-163.7 տ | Սազամար ՓԲԸ<br>Գլոբալ Մեթալս Գրուպ<br>«Նեա Ռուս» ընկերություն<br>(Ռուսաստանի Դաշնություն) | Գործող-մոտ 300.0<br>(Բացահանք) |
| 16 | Մարջան | 4,707.8 | Au-19,998 կգ<br>Ag-435,1 տ<br>Cu-6,240 տ | Pb-56,900 տ<br>Zn-46,700 տ | Մարջան Մայնինգ ՍՊԸ,<br>Գլոբալ Գոլդ Քորփորեյշն<br>(ԱՄՆ) | Չգործող<br>(Բացահանք 150.0) |
| | | | *<u>Բազմամետաղային հանքեր</u>* | | | |
| 17 | Ախթալա | 1,293.0 | Cu-7,100 տ<br>Zn-55,000 տ<br>Ag-118,8 տ | Pb-20,500 տ<br>Au-1,552 կգ | Մեթալ Փրինս ՍՊԸ<br>Բրիտանական Նեվիս Այլենդ | Գործող-մոտ 200.0<br>(Ստորգետնյա հանք) |
| 18 | Գլածոր | 3,780.0 | Pb-169.7 տ Zn-159.1 տ<br>Cd- 669.0 տ | Cu-36.9 տ<br>Ag-224.4 տ<br>Se-28.9 տ<br>Te-24.0 տ | ԳոււՊրոՄայնինգ,<br>(Ռուսաստանի Դաշնություն) | Չգործող<br>(Ստորգետնյա հանք, տարեկան արտադրողականությունը պետք է լինի 250.0) |
| | | | ԹԱՆԿԱՐԺԵՔ ՄԵՏԱՂՆԵՐ<br>*<u>Ոսկու հանքեր</u>* | | | |
| 19 | Սոթք | 31,141.2 | Au-133,533 կգ<br>Ag-175.6 տ | Se-56,3 տ<br>Te-280 տ | ԳոււՊրոՄայնինգ,<br>(Ռուսաստանի Դաշնություն) | Գործող<br>(Բացահանք, տարեկան արտադրողականությունը՝ մոտ 850.0) |
| 20 | Ամուլսար | 56,434.5 | Au-52,664 կգ | - | Գեոթիմ<br>Լիդիան Ինթերնեշընըլ ՍՊԸ<br>Կանադա | Չգործող<br>Հետախուզվում է |
| 21 | Մեղրաձոր | 410.6 | Au-4,968.4 կգ | Ag-407 տ | Մեղրաձոր Գոլդ Հայաստան | Գործող<br>(Ստորգետնյա հանք, բացահանք 7,2) |

| N | Հանքի անվանումը | Հանածոների կուտակները, 1000 տ. | Մետաղային կուտակներ | | Սեփականության իրավունք | Տարեկան արտադրողականություն, 1000 տ |
|---|---|---|---|---|---|---|
| | | | ՆԵՖԵԼԻՆԱՅԻՆ ՍԻԵՆԻՏՆԵՐ<br>*(Ալյումինի հումք)* | | | |
| 26 | Թեժսար | 457,000.0 | Al-98,255.000տ | - | Ալյումինա Քորփորեյշն ՍՊԸ | Չգործող<br>(Բացահանք, տարեկան արտադրողականությունը՝ 3000,0-11,000) |
| | | | ՍԵՎ ՄԵՏԱՂՆԵՐ<br>*Երկաթի հանքեր* | | | |
| 27 | Աբովյան | 260,800.0 | Fe-67,788.000տ | - | Բաունթի Ռեսուրսիս Արմենիա Լիմիթիդ և Ֆորչուն Օյլ<br>Հայաստան, Վիրջինյան կղզիներ, Չինաստան | Չգործող |
| 28 | Հրազդան | 50,061.0 | Fe-16,000.000տ | - | Բաունթի Ռեսուրսիս Արմենիա Լիմիթիդ և Ֆորչուն Օյլ<br>Հայաստան, Վիրջինյան կղզիներ, Չինաստան | Չգործող |

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| | | | | Te-9.35 տ | Վարձակալված «ԳեոՊրոՄայնինգ»-ից | |
| 22 | Մղարթ | - | - | - | Մուլտի Գռուպ Հայաստան | Չգործող (հետախուզվում է) |
| 23 | Թուխմանուկ | 1259.4 | Au-8,007.3 կգ | Ag-44,7 տ | Մեգոգոլդ ՍՊԸ, Գլոբալ Գոլդ Քորփորեյշն (ԱՄՆ) | Չգործող<br>(հետախուզվում է) |
| 24 | Քարաբերդ | 303,3 | Au-1,631.9կգ | Ag-2,92 տ | Ասատ ՍՊԸ Հայաստան | Չգործող<br>(Բացահանք, տարեկան արտադրողականությունը՝ 12,5, ստորգետնյա հանք, տարեկան արտադրողականությունը՝ 30,0) |
| 25 | Բարձրադիր (Մազրա) | 917,7 | Au-9,643 կգ<br>Ag-14,4 տ | Te-4.6 տ<br>S-53.2 տ<br>Bi-14.5 տ | Օփուլանդ Թրեյդինգ Սոլուշընս | Չգործող<br>(Բացահանք, տարեկան արտադրողականությունը՝ 30,0) |

**Հավելված 2. Ոչ մետաղային օգտակար հանածոներ**

| Ոչ մետաղային օգտակար հանածոներ<br><br>Թանկարժեք քարեր | Փիրուզ |
|---|---|
| Կիսաթանկարժեք քարեր | Ագաթ, օբսիդիան, օնիքս, մարմար, կվարց |
| Շինարարական նյութեր<br>Երեսպատման քարեր | Գրանիտ, գաբրո, բազալտ, տուֆ, ֆելզիտ, կոնգլոմերատ, տրավերտին, մարմար, կրաքար |
| Շինարարական խիճ | Շինարարական ավազ, կոպիճի հումք, խճաքար |

| | |
|---|---|
| Հրակայուն, կերամիկական և ապակու հումք | Կավաբեր, կվարցիտներ, պեռլիտներ և պեռլիտի ավազ, հրաբխային խարամ, կրաքար, դոլոմիտ |
| Հախճապակիկային հումք | Կավաբեր, հրաբխային տուֆ |
| Ցեմենտի հումք | Կրաքար, մերգել, կավաբեր, թերթաքար, հրաբխային տուֆ, հրաբխային խարամ |
| Կաղապարման հումք | Բենտոնիտ կավ, դունիտ, պերիդոտիտ |
| Քիմիական հումք | Կրաքար, դոլոմիտ, սպիտակ աղ, գիպս |
| Հանքային ներկեր | Օխրա |
| Ստորգետնյա քաղցրահամ և հանքային ջուր | |
| Բնական հանքային սորբենտ | Բենտոնիտ, պեռլիտ, դիատոմիտ, ցեոլիտ, դացիտ |
| Երկրաջերմային պաշարներ | |

**Հավելված 3. Երեսպատման քարեր**

| | *Ընդամենը պաշարները, 1000 $մ^3$* | *Հաշվեկշռային պաշարներ, 1000 $մ^3$* |
|---|---|---|
| *Բազալտ* | *16176,291* | *14461,991* |
| *Գաբրո-սիենիտ* | *1483,27* | *1483,27* |
| *Գրանոդիորիտ* | *15204,729* | *15204,729* |
| *Տրավերտին* | *30228,08* | *29434,28* |
| *Օնիքս* | *528,0* | *528,0* |
| *Մարմար* | *20980,98* | *20422,98* |
| *Մարմար-կրաքար* | *9198* | *9198* |
| *Ֆելզիտ* | *29723,89* | *26001,49* |
| *Մերգել* | *991,0* | *991,0* |
| *Գաբրո* | *21409,579* | *21409,579* |
| *Հիալոբազալտ* | *26290,7* | *25894,7* |
| *Մարմար* | *75514,376* | *69817,376* |
| *Տուֆ* | *64158,8* | *64158,8* |
| *Ավազ* | *15962,41* | *15962,41* |
| *Ընդամենը* | *326331,105* | *313449,605* |

**Հավելված 4. Շինարարական քար**

| | *Ընդամենը պաշարները, 1000 մ* | *Հաշվեկշռային պաշարները, 1000 $մ^3$* |
|---|---|---|
| *Անդեզիտ-բազալտ* | *113962,1* | *111606,8* |
| *Բազալտ* | *405037,263* | *393292,963* |
| *Գրանոդիորիտ* | *1150.35* | *1150.35* |
| *Կրաքար* | *21094* | *21094* |
| *Կվարց, տրավերտին* | *540022* | *5400,22* |
| *Տուֆ* | *315214,93* | *309848,93* |
| *Ընդամենը* | *860708,513* | *841242,913* |

**Հավելված 5. Այլ օգտակար հանածոներ**

| | *Ընդամենը պաշարները, 1000 $մ^3$* | *Հաշվեկշռային պաշարներ, 1000 $մ^3$* |
|---|---|---|
| *Բալաստային հումք* | | |
| *Կրաքար* | *3097.9* | *3097.9* |
| *Պեմզաքար* | *561283,46* | *561283,46* |

| | | |
|---|---|---|
| *Կոպիճ և ավազ* | *254579,739* | *240046,439* |
| *Հրաբխային խարամ* | *436169,32* | *435528,32* |
| *Բալաստային հումք* | *467242,674* | *453242,63* |
| *Այլ շինարարական հումք* | | |
| | *1618880,454* | *1574843,21* |
| *Գունավոր քարեր* | | |
| | *118626,681* | *118626,68* |
| *Բազմանպատակ կիրառության հումք* | | |
| | *1676079,394* | *1632075* |
| *Վառելիքային հումք* | | |
| | *333,0* | *333,0* |
| *Ընդամենը* | *5132861,722* | *5018743,639* |
| *Ընդամենը ոչ մետաղային օգտակար հանածոներ* | *6319901,34* | *6173436,157* |

Հանքային արդիւնաբերութեան վաճառքը օտար ընկերութիւններուն խիստ ճակատագրական է Հայաստանի համար, քանի որ ան կը հանդիսանայ երկիրի դրամատիրական տնտեսութեան գլխաւոր աղբիւրը։ *armtimes.com* 2016 Մարտին կը շեշտէ՝ թէ «Հայաստանի տնտեսութիւնը նստել է հանքարդիւնաբերութեան «ասեղ»-ի վրայ» եւ կը ներկայացնէ հետեւեալ կարեւոր հաշուարկումը.

«Մտավախութիւնները, թէ Հայաստանի տնտեսութիւնը նստում է «հանքարդիւնաբերութեան ասեղին», շատ աւելի սուր են, քան կարելի էր սպասել։ ՀՀ Ազգային վիճակագրական ծառայութեան երէկ [իմա՝ 2016 Փետրուար 29-ին, Հ.Ա.] հրապարակած տուեալներից պարզ է դառնում, որ հանքարդիւնաբերութեան ոլորտում այս տարուայ յունուարին արձանագրուել է 76 տոկոս աճ այն դէպքում, երբ մշակող արդիւնաբերութիւնում 6.3 տոկոս անկում է եղել։

«Ընդ որում, մշակող արդիւնաբերութեան ամենա«ծանրակշիռ» ճիւղում՝ սննդի արդիւնաբերութիւնում արձանագրուել է աւելի քան 8 տոկոս նուազում։ Եւ ահա հիմնականում հէնց հանքարդիւնաբերութեան ոլորտում արձանագրուած 76 տոկոս աճի շնորհիւ է, որ ամբողջ արդիւնաբերութիւնում ստացուել է 15.7 տոկոս աճ։ Նշենք, որ միայն պղնձի խտանիւթի արտադրութիւնը աճել է 85 տոկոսով։»[53]

Ինչպէս Վահան Իշխանեան կը համառօտագրէ՝ «հանքերի շահագործումը առանց շօշափելի օգուտ բերելու անխնայ սպառում է երկրի հարստութիւնը, իսկ եկամուտները ոչ թէ երկրին՝ երկրի քաղաքացիների բարեկեցութեանն է գնում, ոչ թէ բիւջէ է մտնում, այլ մի քանի հոգու գրպանը։»[54]

Այսպէս, եթէ Հայաստանի տնտեսութեան գլխաւոր արդիւնաբերութիւնը կը գտնուի անդրազգային ընկերութիւններու ձեռքը, կարելի է դիւրութեամբ ըմբռնել թէ երկիրի կառավարումին հանգոյցները կը գտնուին որուն ձեռքը։

Զ.- ՈՒՐԻՇ ԱՆԴՐԱԶԳԱՅԻՆ ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Բացի վերոյիշեալներէն, Հայաստանի մէջ այսօր անդրազգային ընկերութիւններ կարելի է գտնել ամէն տեղ՝ մեծ ու փոքր ձեռնարկութիւններուն մէջ։ Կը բաւարարուիմ քանի մը օրինակով։

Երեւանի գլխաւոր պանդոկներէն մէկը՝ Արմենիա, 2004-ին կը դառնայ Արմենիա-մարիոթ։ Նաօմի Քրուքըր կը պատմէ.

---

[53] «Հայաստանի տնտեսութիւնը նստել է հանքարդիւնաբերութեան «ասեղ»-ի վրայ», *armtimes.com*, 1 Մարտ 2016, http://armtimes.com/hy/read/80579։

[54] Վահան Իշխանեան, «Հանքեր թէ՞ սահմանադրութիւն. ազատականների 25-ամեայ վերարտադրութիւնը ոչնչացնում է երկիրը», *ԹԵՐԹ.am*, http://www.tert.am/am/author/4/1778155։

«Չարլզ Թալանեան՝ C. Talanian Reality Co.-ի սեփականատէրը եւ ամերիկահայ երկրորդ սերունդի ներկայացուցիչը, իր քրոջ Կէյլի եւ ուրիշ ներդրողներու հետ, միլիոններ դրած է ծրագիրին համար։ Ասիկա անշարժ գոյքի ծրագրաւորող Թալանեանի առաջին պանդոկային ներդրումն էր։ Ասիկա նաեւ Քամպրիճ գտնուող ձեռնարկատիրական խորհրդատուական PK Development LLC ընկերութեան տնօրէն Փօլ Քորեանի առաջին գործողութիւնն էր։

«Gravestar Inc.-ի (Քամպրիճ գտնուող թողօններու կառավարումի [asset managment] եւ անշարժ գոյքի ծրագրաւորումի ընկերութիւն մը՝ որ կը վերահսկէ Burlington Marriott-ը) եւ այլ ներդրողներու հետ միասին Թալանեան եւ Քորեան կը կազմեն AK Development LLC-ն, որ կը համաձայնի Marriott International-ին հետ վերանորոգելու եւ վերահսկելու պանդոկը։ 1998-ին AK Development կը վճարէ 10 միլիոն տոլլար գնելու համար 485 հազար քառակուսի ոտք տարածութեամբ համալիրը՝ բաղկացած երեք շէնքէ [...]։

«Վերանորոգումներուն ծախսը հասաւ 42 միլիոն տոլլարի, որ գոյացաւ Միջազգային Պանքի եւ ԱՄՆ-ի կառավարութեան օգնութեամբ։»[55]

Արմենիա Մարիոթ հիւրանոցին բացումը կը կատարուի 2004-ին, դառնալով Mariott International-ի ապրանքանիշը։ Բացումին ներկայ կը գտնուին Ռոբերտ Քոչարեան եւ... Գարեգին Բ. Կաթողիկոսը։

Երեւանի քոնեաքի պատմական գործարանը 1998-ին կը դառնայ ֆրանսական Pernod Ricard ընկերութեան սեփականութիւնը։

Բրիտանական Imperial Tobacco International Limited կը հանդիսանայ սիկարէթի գլխաւոր ընկերութիւններէն մէկը Հայաստանի մէջ։ Ան ամբողջութեամբ պատկանող դուստր ընկերութիւնն (wholly-owned subsidiary) է Imperial Tobacco Group PLC-ի։ Վերջինիս տնօրէններու խորհուրդի անդամն է Պերճ Սեդրակեան։

Սփիւռքահայ մեծահարուստ ներդրողներ եւս իրենց դերը խաղացած են ապահովելու անդրազգային ընկերութիւններուն մուտքագրումը համար Հայաստան՝ գործարարութեան ապակողմնորոշող անունին տակ։

## Է.- ՃԱՐՏԱՐԱՊԵՏՈՒԹԻՒՆ

Բնականաբար, Հայաստանի ճարտարապետութիւնը եւս պիտի ենթարկըւէր ընկերութիւններու շահերուն։ Հայաստանի ճարտարապետութեան մասին Ճենս Մալլինկի հետ ունեցած զրոյցի մը ընթացքին, Ռուբէն Արեւշատեան կը նշէ. «Հայաստանի մէջ եւ այլուր ճարտարապետութեան նկատմամբ հասարա-

[55] Naomi R. Krooker, 'Heritage Has a Place in Locals' Armenian Hotel Efforts', *Boston Business Journal*, 21 March 2005,
http://www.bizjournals.com/boston/stories/2005/03/21/newscolumn3.html:

կական մօտեցումը անյայտացաւ։ Նէօլիպերալիզմի մուտքով, անհետացաւ նման ծրագիրներու մասին հետաքրքրութիւնը։ Փոխարէնը, նոր վերնախաւերը կը կառուցեն ինչ որ շահաւէտ է եւ կը ծառայէ իրենց սեփական եւ ընկերութենային [corporate] նեղ շահերուն։»[56]

Ը.- ՀԻՒՍԻՍԱՅԻՆ ՊՈՂՈՏԱՆ՝ ՕՏԱՐ ԱՊՐԱՆՔԱՆԻՇԵՐՈՒ ՕՐՐԱՆ

Ճենս Մալլինկ այցելելով 2007-ին վերաբացուած Հիւսիսային Պողոտայ, դիտել կու տայ հետեւեալը. «Այստեղ է ուր հարուստ հայերու փոքրամասնութիւն մը իր դրամը կը ծախսէ գնելու սեփական ձեղնայարկային հարուստ բնակարաններ, ընկերութիւններու գրասենեակներ եւ արտակարգ ապրանքանիշային [brand] խանութներ։»[57]

Հիւսիսային Պողոտան կարեւոր նմոյշ մըն է օտար ապրանքանիշերու գոյութեան Հայաստանի մէջ։ Կարելի է նշել անոնցմէ քանի մը հատը.

- Նորաձեւութիւն եւ հագուստեղէն՝ Billionaire Italian Couture, OVS, Polo Ralph Lauren, Tommy Hilfiger, Massimo Dutti, Ermenegildo Zegna, RED Valentino, Emporio Armani, Burberry, Luisa Spagnoli։
- Արդուզարդ՝ PARFOIS։
- Քաղցրաւենիք՝ Délice։
- Ինքնաշարժ՝ Mazda։
- Ճաշարան եւ սրճարան՝ Cinnabon, Segafredo, KFC, Baskin Robbins։
- RIO Galleria խանութին մէջ հաւաքուած են իտալական հագուստեղէնի եւ արդուզարդի ապրանքանիշեր՝ Armani Collezioni, Armani Jeans, Ballin, Bikkembergs, Class Roberto Cavalli, EA7, Galliano, GF Ferre, Gianfranco Ferre, Giorgio Armani, John Richmond, Just Cavalli, Porsche Design, Ralph Lauren, Roberto Cavalli, Valentino Orlandi, Versace, Versace Collection եւ Versace Jeans։[58]
- TZ Jewelry խանութին մէջ հաւաքուած են ոսկերչական ապրանքներու ապրանքանիշեր՝ Lulu Frost, Margaret Elizabeth, Tzuri Gueta, Shenhav, Dori Csengeri եւ Simon Harrison Jewellery։[59]
- Chronograph խանութին մէջ հաւաքուած են ժամացոյցներու եւ ոսկեղէնի ապրանքանիշեր՝ A. Lange & Söhne, Panerai, Girard-Perregaux, Glashütte Original,

---

[56] Jens Malling, 'Armenia Remembers Its Architectural Legacy', *Le Monde diplomatique*, English edition, February 2014, http://mondediplo.com/blogs/armenia-remembers-its-architectural-legacy։

[57] Անդ։

[58] http://www.spyur.am/en/companies/rio-galleria-brand-clothing-and-accessories-shop/24010։

[59] https://www.facebook.com/TZJewelry.Armenia/։

IWC Schaffhausen, Zenith, Jaeger LeCoultre, Maurice Lacroix, Romain Jerome եւ Jaquet Droz:[60]

«Ի վերջոյ, երբ որ ասում ենք հայրենիք, երեւի չենք ընկալում Հիւսիսային Պողոտայ», 2014-ի խորհրդարանային ելոյթի մը ժամանակ ըսած է Հրանտ Բագրատեան։

Թ.- «ՏՈՐԹ»-Ի ՏԵՍՈՒԹԻՒՆԸ

2015-ին, Երեւանի համալսարանին մէջ կայացած զեկուցումի մը ընթացքին, գերմանացի քրիստոնեայ-ժողովրդավարական կուսակցութեան պատգամաւոր Արպերթ Վայլերի կ՚ըսէ.

«Յատկապէս հանքարդիւնաբերութեան եւ տուրիզմի ոլորտներում, [...] հարցերը պէտք է այնպէս կարգաւորուեն Հայաստանի կառավարութեան հետ մէկտեղ, որ հայ ժողովուրդը եւ առանձին հայերը դրանից ոչ թէ տուժեն, այլ իսկապէս այդ վաստկուած տորթից էլ մի կտոր ունենան։ Ես միայն կարող եմ ասել, որ ուրախ կը լինէի, որ Գերմանիան աւելի շատ ֆիրմաներ ուղարկէր Հայաստան, ես կ՚ողջունէի այդ հանգամանքը։»[61]

Աննա Շահնազարեան եւ Արփինէ Գալֆայեան Վայլէրիի այս վերաբերմունքը իրաւացիօրէն կը համարեն «ամբարտաւան, անյարգալից եւ շահագործող։» Բայց չէ՞ որ իր խօսքը կը ներկայացնէ ճշմարտութիւնը՝ «տորթ»-ի ճշմարտութիւնը, կամ դրամատիրութեան ճշմարտութիւնը, զոր կարելի է խտացնել հետեւեալ կէտերուն մէջ.

1. Նախ, «տորթ»-ը տալու համար պէտք է գտնուին այդ տորթը ուզողները։ Աւելի ստոյգ, պէտք է ստեղծել զայն ուզողները։ Վայլէրիի յիշած հանքային արդիւնաբերութեան պարագային, օրինակ, ձեռնարկատէրը պէտք ունի հանքագործի եւ գործարանի բանուորի։ Ընդհանրապէս այս աշխատաւորները (ըլլայ Հայաստանի մէջ կամ այլուր) կը հանդիսանան տուեալ ու շրջակայ հողատարածութիւններուն սեփականատէրերը իբրեւ գիւղացիներ, ազարակապաններ կամ ինքնաբաւ ապրող համայնքներ։ Հանքանիւթերը հանելու եւ

---

[60] http://www.chronograph.am/։

[61] Աննա Շահնազարեան, Արփինէ Գալֆայեան, «Հայաստանը՝ նէօլիբերալ հզօր ճնշման տակ. հարցեր գերմանացի պատգամաւորին», *ePress.am*, 10 Յուլիս 2015, http://www.epress.am/2015/10/07/%D5%B0%D5%A1%D5%B5%D5%A1%D5%BD%D5%BF%D5%A1%D5%B6%D5%A8%D5%9D-%D5%B6%D5%A5%D5%B8%D5%AC%D5%AB%D5%A2%D5%A5%D6%80%D5%A1%D5%AC-%D5%B0%D5%A6%D5%B8%D6%80-%D5%B3%D5%B6%D5%B7%D5%B4%D5%A1%D5%B6-%D5%BF%D5%A1.html։

մօտակայ տարածութիւններուն վրայ գործարաններ տեղադրելու համար անհրաժեշտ են ընդարձակ տարածութիւններ եւ համապատասխան ենթակառոյցներ: Դարեր շարունակ այդ հողին վրայ ապրած բնակչութիւնը աննշան գումարներու փոխարէն կամաւոր կամ պարտադրուած դրամատէրերուն կը ծախէ իր պապենական հողը, այն հողը՝ որուն շնորհիւ կ՚ապրէր ինքնաբաւ: Մէյ մը որ անձը կը դադրի ունենալ իր ապրուստի միջոցները հայթայթելու սեփական կարելիութենէն, ան անպայմանօրէն պէտք կ՚ունենայ ի վերուստ տրուած «տորթ»-ին: Խօսքը, անշուշտ, միայն հանքարդիւնաբերութեան մասին չէ: Ամբողջ դրամատիրութիւնը հիմնուած է տարածութիւններու գրաւումի ապա արտադրութեան միջոցներու զանգուածային սեփականազրկումի ու դրամատիրական սեփականացումի վրայ: Անձը սեփականազրկուելով ամէն բանէ՝ ջուրէ, հողէ, բնակարանէ եւ ինքնուրոյն արտադրութեան բոլոր միջոցներէն, ինքզինքը պիտի նուաստացնէ ստանալու համար այդ «տորթ»-ը: «Տորթ»-էն հրաժարիլ կը նշանակէ մնալ անօթի ու անօթեւան: Իրերու սպառողական արժէքը (ջուրը՝ ինչպէս որ կը հոսի բնութեան մէջ իբրեւ մաքուր հանքային ջուր, ջրվէժ կամ գէտ, որ մատչելի է եւ բաւարար է բոլորին) վերածուելով փոխանակումի արժէքի (ջուրը՝ ինչպէս որ կը վաճառուի գործարանային վերարտադրութենէ ետք իբրեւ շիշի մէջ դրուած ջուր կամ գործարաններու ընդմէջէն անցած եւ խողովակներու միջոցով բնակարաններու ծորակէն հոսող ջուր, որ մատչելի է միայն վճարողին եւ բաւարար չէ բոլորին), «տորթ»-ի տուչութիւնը կը դառնայ անխուսափելի: Ասիկա մարքսիզմի այբենարանն է:

2. Վայլէրիի զեկոյցը կը յայտնէ նաեւ յաջորդ «ամբարտաւան» ճշմարտութիւնը, որուն իմաստն է՝ թէ գերմանական ընկերութիւններու մուտքը Հայաստան պէտք է կարգաւորուի Հայաստանի կառավարութեան հետ համագործակցութեամբ: Ասիկա, բնականաբար, պիտի ամրապնդէ Հայաստանի օլիկարքական համակարգը, որ մեծապէս նպաստաւոր պայմաններ կը ստեղծէ Վայլէրիի համակիրներուն համար: Ինչպէս Վարդան Ջալոյեան կը բացատրէ՝ «օլիգարխը շատ հարուստ ձեռնարկատեր է, դոլարային միլիարդատեր է կամ համարեայ այդպիսին, հանդիսանում է ձեռնարկութիւնների որեւէ կոնգլոմերատի հիմնական սեփականատէրը, ունի լաւ քաղաքական կապեր, այդ թւում՝ անձնապէս կապուած է երկրի նախագահի հետ:»[62]

Այսպէս կը բաժնուի «տորթ»-ը:

---

[62] Վարդան Ջալոյեան, «Օլիգարխիան եւ նէօլիբերալիզմը», *Lragir.am*, 23 Դեկտեմբեր 2010, http://www.lragir.am/index/arm/0/comments/view/42324 :

Երկիրի նախագահի օրհնութեամբ «տորթ»-էն պարտադիր հրաժարումի պարզ ու հասկնալի օրինակ մը կը նշէ Վահան Իշխանեան, թէ ինչպէս Երեւանի մեկա-խանութները կը կործանեն փոքր խանութները եւ թէ ինչպէս իշխանութիւնները կ'արդարացնեն երեւոյթը. «Որտեղ առեւտուրը թէժ է, խանութները շատ են, գործարար Սամուէլ Ալեքսանեանը բերել-տնկացրել է ֆուտբոլի դաշտի չափ հրէշ-հանրախանութ «Երեւան սիթի», որ տասնեակ խանութներ կուլ է տալիս։ Երեւանի ամենաաշխոյժ շուկաներում, ամենաբանուկ տեղերում բացուեցին «Երեւան սիթիներ»՝ Նորքի զանգուածում, Երրորդ մասում, Զէյթունում, Դաւիթաշէնում, Կոմիտասի շուկայի մօտ, Մաշտոցի պողոտայում, Աջափնեակում (Կայզէր սուպերմարքէթը) եւ այլն։ Հազարաւոր ընտանիքների խանութները փակուեցին, ու ի՞նչ արեցին նրանք, պարզ չի՞ որ շատերը արտագաղթեցին։ Բայց ընդդիմութիւնները որ այդքա՛ն սիրում են խօսել արտագաղթի դէմ, մի անգամ չասեցին՝ հէրիք, էս մի հանրախանութն էլ մի սարքէք, որ մի քանի երեսուն ընտանիք մնան։ [...]

«Լսել եմ, թէ տարիներ առաջ Արթուր Բաղդասարեանը Անվտանգութեան խորհրդի նիստում հանրախանութների վտանգի հարցն է բարձրացրել, որ պէտք է սահմանափակել դրանք, թէ մի հանրախանութի պատճառով հարիւրաւոր մարդիկ անգործ են մնում, բազմաթիւ մանր խանութներ փակւում են։ Իսկ Սերժ Սարգսեանը պատասխանել էր՝ ի՞նչ կայ որ, թող այդ անգործ մնացածները աշխատանքի ընդունուեն հանրախանութներում։»[63]

Անշեղօրէն կը կիրառուի «տորթ»-ի տեսութիւնը։ Մանր խանութներ եւ կրպակներ վարողները տակաւին դրամատէրեր չեն։ Անոնք չեն արտադրերիւրացներ յաւելեալ արժէք եւ չեն ձգտիր դրամական կուտակումի։ Բայց անոնք պէտք է «բարեփոխուին»՝ Սերժ Սարգսեանի տուած օրինակով, դառնան յաւելեալ արժէք արտադրողներ՝ միանալով աշխատաւորական դասակարգին, եւ նպաստեն յաւելեալ արժէքը իւրացնողներու՝ դրամատիրական դասակարգի, կազմաւորումին, կարելի դարձնելով դրամատիրոջ դրամական կուտակումը։ Եւ ասիկա կը փառաբանուի իբրեւ տնտեսական յառաջդիմութիւն, քանի որ սուփէրմարքէթը ստեղծած կ'ըլլայ աշխատատեղի, մոռցնելով տալով՝ որ նախքան աշխատատեղիի ստեղծումը, աշխատողը պէտք չունէր այդ աշխատատեղիին։

---

[63] Վահան Իշխանեան, «Սուպերմարքէթ-հրէ՞շ, թէ՞ սահմանադրութիւն. Ազատականների 25-ամեայ վերարտադրութիւնը ոչնչացնում է երկիրը», *ԹԵՐԹ.am*, http://www.tert.am/am/author/4/1780321։

Անդրազգային ընկերութիւնները տիրանալով Հայաստանի բնակչութեան ամէնօրեայ կենսական գործածութեան միջոցներուն՝ ջուրին, բնական կազին, ելեկտրականութեան եւ հեռահաղորդակցութեան, սեփականացնելով Հայաստանի բնական հումքը՝ որ կը ներկայացնէ երկիրի դրամատիրական արդիւնաբերութեան եւ արտահանումի գլխաւոր մասը, ինչպէս նաեւ տիրելով տասնամեակներ շարունակ Հայաստանի ազգային ցուցանիշը եւ ինքնութիւնը մարմնաւորող առարկաներուն՝ հայկական քոնեաքին եւ Արմենիա պանդոկին, Հայաստան դարձուցած կ'ըլլան կայսերապաշտական դրամագլուխի ենթական, նոր-գաղութատիրացուած պետութիւն, իրական նէօլիպերալ երկիր մը։ Այս բոլորը դրամատիրական խաբուսիկ բառապաշարով կ'անուանուի օտար ներդրում եւ կ'ընդունուի իբրեւ տնտեսական յառաջդիմութիւն։ Օտար ներդրում եզրը կը քօղարկէ շահոյթի սեփականացումը բնակչութեան 1-10 տոկոս վերնախաւին կողմէ, չհաշուելով տուեալ անդրազգային ընկերութիւններուն կուտակած գերշահոյթները։

Մարգար Մելքոնեան՝ մարքսիսթ մտածող մը, եղբայրը Մոնթէ Մելքոնեանին, կ'եզրակացնէ.

«30 տարի Հայաստան ենթարկուեցաւ ազատ շուկայի «բարեփոխութեան», որուն արդիւնքները տեսանելի են բոլորին առջեւ. ան նպաստ բերաւ բնակչութեան վերի տասը տոկոսին, մինչ սեփազրկելով, մարդազրկելով եւ ապականելով երկիրի մնացած մասը։»[64]

Հարտ-Նեկրիի Կայսրութիւնը կենդանի է Հայաստանի մէջ։

## ԻՆՉՊԷ՞Ս ՊԱՀԱՆՋԱՏԻՐԵԼ

Անշուշտ, այս հարցումին պատասխանը չէ որ պիտի տամ։ Իմ եւ ոեւէ անհատի հասողութենէն բարձր խնդիր մըն է ասիկա։

Այսօր պահանջատիրութիւնը դժուար է պատկերացնել գործող Կայսրութենէն դուրս։ Կրնայ գոյանալ երկու մօտեցում։ Մէկը բխած Կայսրութեան ընդմէջէն եւ գործածելով Կայսրութեան գործիքները, միւսը հակա-Կայսրութեան ընդմէջէն եւ գործածելով, օրինակ, Փարիզի Քոմիւնի մը տիպարը.

1. Քաջ ուսումնասիրել Կայսրութիւնը՝ իր ամբողջ կողմերով եւ ծալքերով։ Մանաւանդ մանրամասն հասկնալ ու մեկնաբանել անդրազգային ընկերու-

[64] Markar Melkonian, 'Armenia: The Curse of Education "Reform" ', *Hetq*, 10 December 2015, http://hetq.am/eng/news/64395/armenia-the-curse-of-education-reform.html:

թիւններուն կազմութիւնները, յարաբերութիւնները եւ շահերը, ներառեալ Հայաստանը «գրաւած» անդրազգային ընկերութիւնները։ Այսինքն, խորանալ ժամանակակից դրամագլուխի կուտակումի եւ շրջանառութեան պայմաննե-րուն եւ ուղղութիւններուն մէջ։ Այստեղ պիտի գործէ ուժի, իշխանութեան, շահու, մրցակցութեան եւ հաւանաբար արիւնահոսութեան օրէնքները։

Այս առիթով, ոմանք Արեւմտահայաստանի պահանջատիրութիւնը իրաւա-ցիօրէն պիտի փափաքին համեմատել Ղարաբաղի ազատագրումի փաստին հետ, առարկելով՝ որ Ղարաբաղը կարելի եղաւ ազատագրել առանց այս գործօններու ուսումնասիրութեան։ Համեմատութիւնը ճիշդ կրնար ըլլալ՝ եթէ պայմանները եւս նոյնը ըլլային։

Յիշենք քանի մը աչքառու կէտեր։ 1991-ին, Մոնթէ Մելքոնեան կու գայ ու կը հաստատուի Հայաստան, բացայայտօրէն մասնակցելու ղարաբաղեան շարժու-մին։ Մելքոնեան Հայաստանի այդ ժամանակուայ իշխանութիւններու ծոցէն բխած անհատ մը չէր, այլ Հայաստան կու գար բացառապէս *իր* անձնական կամքով ու նախաձեռնութեամբ։ Հակառակ ասոր, ան կարեւոր գործունէութիւն կ՚ունենայ պատերազմական դաշտին վրայ (ուրիշ հարց է յետագային իր սպանութեան հետ կապուած որոշ անորոշութիւնները)։ Այսօր, կարելի՞ է Հայաստանի ներկայ իշխանութեան անծանօթ սփիւռքահայ կամ ոչ-սփիւռքա-հայ մը պարզապէս գայ եւ համագործակցաբար մասնակցի բանակային գործո-ղութիւններուն։ Անշուշտ, կարելի չէ։

Ուրիշ օրինակ մը։ 1990-ին, նոյնպէս ղարաբաղեան շարժումին բացայայ-տօրէն մասնակցելու համար, Ժիրայր Սէֆիլեան Պէյրութէն կը տեղափոխուի Հայաստան, մինչեւ պատերազմին աւարտը մնալով պատերազմի դաշտին վրայ։ 2016-ի ապրիլեան դէպքերէն ետք, 1990-ի նմանողութեամբ, Սէֆիլեան եւ ընկերները նպատակ ունէին իրենց սեփական նախաձեռնութեամբ ու զէնքերով երթալ Ղարաբաղ ու ազատագրել Ազըրպէյճանի գրաւած տարածքը։ Յունիսին Հայաստանի իշխանութիւնը կը ձերբակալէ Սէֆիլիեանը՝ անօրէն զէնք ձեռք բերելու եւ փոխադրելու մեղադրանքով։ Բայց այդ զէնքի նպատակը գրաւուած քանի մը հեքթարին վերականգնումն էր։ Հայաստանի իշխանութիւնները եւ իրենց ծառայող մտաւորականները Ղարաբաղի հարցը միշտ դարձուցած են *իրենց* ազգայնապաշտ պատումի առարկան, եւ այդ պատումով միշտ *իրենց* դէմքը փայլեցուցած են հայրենասիրական պիտակներով։ Եւ ահաւասիկ ապրիլեան պարտութեամբ իշխանութիւնները դէմ յանդիման կը կանգնին իրենց իսկ առաջ նետած մեծ պատումի «ձախողութեան»։ Ահաւասիկ նաեւ Սէֆիլեան եւ իր ընկերները կ՚ուզեն այդ պատումը դարձնել գործնապաշտ իրականութեան։ Բայց արդէն «անօրէն» արարք մըն է երթալ կռուիլ սեփական

նախաձեռնութեամբ։ Այս նոյն արարքը «անօրինութիւն» չէր նկատուեր (եւ չէր ալ կրնար նկատուիլ) 1990-ականներու սկիզբը։

1990-ականներու սկիզբը, Մելքոնեանի եւ Սէֆիլեանի նման շատեր ինքնուրոյնաբար մեկնած են Ղարաբաղ, կազմած ջոկատներ (յիշենք, օրինակ, Գէորգ Գիւզէլեանի Մեծ Մուրադ ջոկատը) եւ ուրիշ ջոկատներու ու բանակին հետ համաձայն ու համաձոյլ միասնականութեամբ մասնակցած պատերազմին։ Այսօր ո՞վ իրաւունք ունի ինքուրոյն, թէեւ համաձայնեցուած, ջոկատներ կազմել Ղարաբաղի մէջ։

Կարելիութեան պատճառը այդ թուականներու գրեթէ անարշիսթական (quasi-anarchist) կամ կիսա-անարշիսթական միջավայրի գոյութիւնն էր։ Խորհրդային իշխանութեան փլուզումը եւ անկէ ծագած խորհրդային պետական իշխանականութեան նկատելի տկարացումը, միաժամանակ հայկական իշխանութեան տակաւին անկազմակերպ վիճակը եւ դրամատիրական նոր համակարգին բացակայութիւնը, յառաջացուցած էին անարշիսթական կացութիւն մը, որ իր կարգին Ղարաբաղի հարցով ստեղծած էր ենթակայական ինքնաբուխ համակեցութիւն մը։

Ղարաբաղեան հարցը շուտով դարձաւ Կայսրութեան կարեւոր խաղադաշտ։ Ռուսաստան եւ Իսրայէլ բաւական վաղ մտան յաջորդաբար Հայաստանի եւ Ազըրպէյճանի մէջ։ Այսօր, ռուսական զէնքով ողողուած Հայաստանը եւ իսրայէլական զէնքով հեղեղուած Ազըրպէյճանը[65] կը ներկայացնեն Կայսրութեան պատկերը, բոլորովին տարբեր ղարաբաղեան շարժումի ամենասկզբնական փուլէն։ Այսօր, ռուսական եւ իսրայէլական զէնքերու անդրազգային ընկերութիւնները մշտապէս ներկայ են այս երկու երկիրներուն մէջ, իրենց տնօրինութեան տակ վերցնելով Ղարաբաղի լուծումին գլխաւոր բանալիները։ Այսպէս չէր 80-ականներու վերջաւորութեան եւ 90-ականներու սկիզբի Ղարաբաղը, երբ այդ տարածաշրջանին մէջ Կայսրութիւնը տակաւին մուտք չէր գործած։

Հետեւաբար, այս առումով Ղարաբաղը եւ Արեւմտահայաստանը կը գտնուին տարբեր հարթակներու վրայ։ Թէեւ ղարաբաղեան հարցի սկզբնական փուլը Կայսրութենէն հեռու էր՝ նոյնիսկ ինքնաբուխ անարշիսթական տարրերով համակուած, բայց պէտք չէ մոռնալ որ ան կը մտնէր ազգային պետութեան (նախա-անդրազգային ընկերութիւններու) գաղափարին մէջ։

---

[65] Ազըրպէյճանի մէջ իսրայէլական զէնքի գոյութեան մասին տես՝ Հ. Ա., «Կազայի մէջ փորձարկուած իսրայէլական զէնքերը Ատըրպէյճանի մէջ», *Ջահակիր*, 19 Նոյեմբեր 2015, թիւ 1754։

Կայսրութեան ներկայ պայմաններուն՝ ուր անդրազգային ընկերութիւննե-րուն ձեռքը կը գտնուին ճակատագրական որոշումները, պահանջատիրու-թիւնը ենթադրուած է բաւական բարդ ու վտանգաւոր ընթացք մը ունենալ։

2. Երկրորդը անարշիսթական-համայնավարական (համայնավարութիւնը Մարքսի համայնական եւ ոչ երբեք խորհրդային լենինեան-սթալինեան միա-պետական բռնակալութեան իմաստով) լուծումն է՝ Փարիզի Քոմիւնի օրինա-կով կամ անոր նորացուած տարբերակով։ Ի՞նչ է հողային ազատագրումի մը բուն նպատակը։ Իշխանութի՞ւն ստեղծել թէ ժողովուրդի բարօրութիւնը ապա-հովել։ Կ'ենթադրեմ՝ երկրորդը։ Ժողովուրդ մը երբ ապրի ինքնաբաւ, փորձա-ռութեամբ կերտուած կապ զգայ տարածութեան հետ եւ անձնապէս ըլլայ այդ տարածութիւնը պահպանողն ու զարգացնողը, բնականաբար ու բնազդաբար պիտի ըլլայ ազգային, բառին ոչ-դրամատիրական-իշխանական իմաստով։ Այսինքն, եթէ ենթակայական տէրն ես տարածութեան եւ ոչ թէ առարկայական (օրէնքով) սեփականատէրը, անհնար է մտածես, երգես, խօսիս, գրես, կարդաս ուրիշի (օգտագործելով հայերուն սիրելի բառը՝ օտարի) մտայնութեամբ։ Ժողո-վուրդը՝ ոչ իբրեւ ամբոխ ու զանգուած, այլ իբրեւ հասարակութիւն ու հանրու-թիւն, եթէ ապրի *իր* փորձառութեամբ եւ *իր* գաղափարով, այսինքն՝ ներսէն բխած իրականութեամբ առանց վերադիր պարտադրուած գաղափարախօսու-թիւններու, ազգայնականութիւնը կը դառնայ ո՛չ միայն բնական ապրուստի միջոց այլ ամբողջական ապրելակերպ մը։

Այդպէս ըլլալու համար, հասկնալի է, կարելի չէ միակողմանիօրէն ըլլալ համայնական։ Փարիզի Քոմիւնը քանդուեցաւ որովհետեւ միւս կողմը՝ քանդող կողմը, չէր դարձած Քոմիւն, կը ձգտէր դրամատիրական յարաբերութիւններու վերականգնումը իր ձեռքէն կորսուած Փարիզի տարածութեան վրայ։ Խօսքս բնաւ նկատի չունի *միայն* Հայաստանի կամ Արեւմտահայաստանի տարածքի անարշիզացումը՝ առանց թրքականի եւ ընդհանրապէս համաշխարհայինի։ Խօսքս համաշխարհային անարշիզացում-համայնավարացում մըն է՝ որ փոխարինէ Կայսրութիւնը։

Այս առումով օգտակար է վերադառնալ Մարքսի հանրայայտ կարգախօ-սին՝ «Բանուորներ բոլոր երկիրներու, միացէ՛ք»։ Առաջին հայեացքին, ապազ-գային կամ հակազգային մօտեցում մը կայ այստեղ։ Կամ գոնէ այդպէս կը փափաքին տեսնել արդի ազգայնականները։ Այդպէս կը փափաքին տեսնել նաեւ դաւանաբանական մարքսիսթները եւ լենինեան համայնավարները։ Բայց ինչ որ երկու կողմերն ալ կ'անտեսեն, դասական մարքսիզմի հերքածը ազգայի-նի միայն յատուկ տեսակ մըն է, այն ազգայինը՝ որուն մասին ակնարկեցի վերը, այսինքն՝ ԺԹ. դարու իշխանական, դրամատիրական ազգայնականու-

թիւնը եւ ո՛չ թէ, օրինակ, Խորենացիի, Ֆրիկի, Սայեաթ-Նովայի, ինչպէս նաեւ հողին, տարածութեան հետ դարերով կապուած գիւղացիին ազգայնականութիւնները: Մարքսի մօտ երբեք չէ ակնարկուած «դասական» ազգայինի հերքումը: Այս տեսակ ազգայինի հերքումի համար նախ եւ առաջ Մարքսը պէտք ունէր հերքել ժողովրդային սեփական փորձառութեան կարելիութիւնը կամ ժողովուրդին ինքնակառավարելու ունակութիւնը: Մարքս բանուորներէն չէ պահանջած միանալ յանուն մէկ լեզուի եւ մէկ ազգի (որքան ապակողմնորոշիչ է մարքսիզմի խորհրդային տիպարը), այլ միանալ յանուն մարմնական ու մտաւոր ազատագրումի: Իսկ ազատագրուած մարդը չի կրնար ապրիլ *ուրիշի* փորձառութեամբ, այլ կրնայ ապրիլ *համատեղ* փորձառութեամբ: Միայն օրէնքի ուժով ազատ (բայց ոչ ազատագրուած) մարդն է որ կը սիրէ դիմել ուրիշին, դուրսին եւ արտաքինին, քանի որ օրէնքը՝ անձէն անկախ ստեղծուած ու գտնուող առարկայականացուած կէտ մը, սեփականութիւնն է դատաւորներուն եւ անոնց ուղղութիւն տուող վերահսկող իշխանականներուն: Օրէնքը՝ դուրսէն եկած կարգադրութիւն մըն է, զոր կարելի է խախտել, մինչդեռ բնական փորձառութիւնը՝ ներսէն եկած կարգադրութիւն մըն է, զոր անկարելի է խախտել (մարդ արարածը չի խախտեր ինքզինքը):

Վերջապէս, Մարքսի բանուորներ հասկացողութիւնը՝ թէեւ իր ուղղակի նպատակով հասցէագրուած է բուն բանուորին, բայց իր համընդհանուր մարքսեան բնաբանին մէջ նկատի ունի բոլոր այն աշխատաւորները, պաշտօնեաները, ամսավճարով աշխատողները՝ որոնք կ՚արտադրեն յաւելեալ արժէքը, զոր պէտք է իւրացնէ դրամատէր դասակարգը: Ոչինչ կայ ապազգային կամ հակազգային այստեղ: Ընդհակառակը, ազատագրուելով յայտնի ու անյայտ շահագործումներէ, մարդ կը դառնայ աւելի ազգային, աւելի բնական, աւելի ինքնագիտակից:

Քոմիւնեան հասարակարգ մը ինքզինք կը կառավարէ վարէն դէպի վեր, կրնայ կազմակերպուիլ փրուտոնեան քոփերաթիֆներով, կրնայ ստեղծել ամէն տեսակ ինքնակազմակերպչական մարմիններ ու կառոյցներ, կրնայ հրաշալիօրէն կազմակերպել *իր* արուեստն ու մշակոյթը:

## ՓԱԿԱԳԻԾ ԱԶԳԱՅԻՆԻ ՄԱՍԻՆ

Վերը բաւական խօսք եղաւ ազգայինի հերքումի մասին: Այստեղ պէտք է կատարել կարեւոր պարզաբանում մը, յատկապէս հայերուս համար՝ ուր

ազգայինի որեւէ խնդրականացում կը դիտուի իբրեւ ապազգայնութիւն, հակազգայնութիւն, հասնելով մինչեւ դաւաճանութեան, կարծէք գոյութիւն ունի *մէկ* ազգային, *մէկ* ազգայնականութիւն։

Ինչ որ գրութեանս մէջ հերքուեցաւ ԺԹ. դարու այն ազգայինն է որ կապուած է դրամագլուխի հետ, իբրեւ արդիւնք օտարացումի եւ ֆեթիշիզմի։ Հերքուեցաւ ազգայինի արդիւնաբերութիւնը։ Պատմական ակնարկ մը կրնայ յստակել այս կէտը։

Ե. դարուն Մովսէս Խորենացի գրած է ո՛չ թէ բիւզանդացիներու կամ պարսիկներու պատմութիւնը, այլ *հայոց* պատմութիւնը։ Իր պատմութեան մէջ չկայ ազգագովութիւն ու ազգափառաբանութիւն, չկայ ցեղային տարրի գեղեցկականացում ու գեղագիտականացում, այլ կայ տարածութեան, շրջապատի եւ պատմական ընթացքի զգացողութիւն եւ անոնց հանդէպ բնական-ենթակայական կապ, կապ մը՝ որ անքակտելի է ու միաձոյլ։ Խորենացին ազգային է, առանց ազգայինի հասկացողութիւնը կամ գաղափարը առանձնացնելով շեշտադրելու։

Տակաւին ԺԳ. դարուն Ֆրիկ առաջ քաշած էր ազգերու հաւասարութեան խնդիրը *Բան ի Ֆրիկ գրքոյն* յայտնի քերթուածին մէջ, որմէ կը քաղեմ հետեւեալ տուները.

Արդ այս բանս է հիանալի
Եւ առաւել զարմանալի,
Թէ մէկ Ադամ եւ յԵւայէ
Ո՞րքան ազգեր ծնան յերկրի։

Ուրիշ լեզու ամէն մէկի,
Որ մէկ մէկի ո՛չ հաւանի,
Որ մէկն է հայ, մէկ վրացի,
Մէկն տաճիկ, մէկն ասորի։

Մէկն է ճիւտ եբրայեցի,
Եւ մին արաբ հագարացի,
Մէկն է ալան արեւորդի,
Մինն է թովիչ եւ ափխազի։

Մէկըն է քուրդ քանանացի,
Մինն է թաթար թորգոմացի,
Մինն է մուղալ խըթայեցի,

Մինն է ջաղաթայ սըմըրղընդի։

Մինն ֆռանգ լատինացի,
Մէկն է վենէտ եւ ջենեցի.
Մէկն հոռովմ, մէկն յունացի,
Եւ միւսն ուռուզ եւ հոնացի։

Մինըն դաղմատ ըսպանացի
Ծընունդ սըրբոյ աւազանի.
Հաւացեալ հայր եւ յորդի,
Ի՚ երկըրպագու քու սուրբ խաչին։[66]

Անհանգստութիւն ու ներքին բախում մը կայ «հիանալի»-«զարմանալի»-ի եւ «ո՛չ հաւանի»-ի միջեւ, մէկ կողմէն սքանչելի է ունենալ լեզուական (ազգային) այսքան բազմազանութիւն, միւս կողմէն անբաղձալի է լեզուախումբերը կրողներուն (ազգերուն) միջեւ եղած դժկամութիւնը։ Եւ, բնականաբար, անուղղակի մեղադրանք մը Աստուծոյ (Ադամի եւ Եւայի արարիչին)՝ թէ ինչպէ՛ս կրնայ ստեղծել այսքան հիանալի ու զարմանալի լեզուներ առանց կարողանալու սէր տարածել այդ լեզուները կրողներուն միջեւ։ Հակադրութիւն մըն է առարկայի (object) եւ ենթակայի (subject) միջեւ։ Աստուած իշխանութիւն ունէր ստեղծելու առարկան՝ լեզուն, բայց անկարող էր ենթակային՝ մարդկային յարաբերութիւններուն առջեւ։ Անշուշտ, այս մօտեցումը ընդհանրապէս գոյութիւն ունի կտակարաններուն մէջ։ Աստուած ստեղծեց առարկան՝ աշխարհը եւ մարդիկ, բայց ենթական՝ մարդկային բնաւորութիւնը եւ էութիւնը մնացին անիշխելի, մինչեւ որ այս անիշխելի ենթակայականութիւնը դարձաւ այնքան չար, որ Աստուած ստիպուեցաւ զայն լուծել նոր առարկայով մը՝ ջրհեղեղով։ Յատկանշական գաղափար մը կայ այստեղ՝ առարկային իշխանութիւնը ենթակային վրայ։ Առարկան՝ կարելի է ստեղծել ու ըստ կամս ձեւաչափել ու կաղապարել, իսկ ենթական՝ ոչ։ Եւ այս ենթական է որ վտանգաւոր է իշխանութիւններուն համար՝ *բոլոր* իշխանութիւններուն, ներառեալ Աստուծոյ իշխանութեան, քանի որ եթէ ենթական շարժի, հասկնայ եւ կազմէ հասարակական ենթակայականութիւն, իշխանութիւնը պիտի գտնուի գոյութեան վտանգի առջեւ։

[66] Ֆրիկ, *Բան ի Ֆրիկ գրքոյն*, քաղուած հետեւեալ գիրքէն՝ *Հայ միջնադարեան քնարերգութիւն*, Երեւան, Նաիրի, 1996, էջ 244-245։

Վերոյիշեալ տողերուն մէջ Ֆրիկի առարկայ-ենթական դրուած է ազգային հարթակի վրայ՝ լեզու (առարկան), եւ լեզուական փորձառութիւնը գործադրողը՝ ազգը (ենթական): Ասիկա կը նշանակէ, որ ազգայինի գիտակցութիւնը ոչ միայն գոյութիւն ունէր միջնադարին, այլ բարձրացուած էր անոր խնդրականացումին հարցը: Ասիկա քայլ մը առաջ էր այսօրուայ հայկական մայրուղային ազգայնականութենէն, կամ դրամատիրական ազգայնականութենէն, ուր բացարձակապաշտութիւնը եւ միակութիւնը կը հանդիսանան անոր գլխաւոր յատկանիշները:

Ապա, Ֆրիկ յատուկ համակրական տրամադրուածութեամբ կը թուէ այդ լեզուատէրերը, նոյն հարթութեան վրայ դնելով հայը, վրացին, տաճիկը, ասորին, եբրայեցին, արաբը եւ այլն, տեսնելով անոնց միջեւ տարբերութիւններ: Ասիկա եւս քայլ մը առաջ կը գտնուի ներկայ ազայնականութենէն: Վերջինս կը փորձէ տեսնել ոչ թէ ազգերու միջեւ եղած տարբերութիւնները այլ իւրաքանչիւրին առաւելութիւնը:

Երրորդ օրինակ մը կրնայ ծառայել Սայեաթ-Նովան: Գրած է 124 թուրքերէն, 47 հայերէն եւ 35 վրացերէն խաղեր:[67] Կարեւոր փոխվերագրութիւններ եւ փոխվկայակոչումներ կան իր երեք լեզուներով խաղերուն միջեւ: Թուրքերէն խաղի մը մէջ կրնայ յիշել իր ծննդավայր Թիֆլիսն ու Վրաստանը կամ կրնայ վկայակոչել Աւետարանը, հայերէն խաղի մը մէջ կրնայ յայտնել իր սէրը վրացուհիի նկատմամբ, իսկ Լէյլի եւ Մէջլումի (Մէջնուն) եւ Մշու Սուլթան Սուրբ Կարապետի տիպարներուն կրնայ դիմել երեք լեզուներուն մէջ: Բազմալեզուանիութիւն՝ իմաստային փոխադարձ ներգործութիւններով, հազուագիւտ երեւոյթ է արդի ազգայնականութեան համար: Նուա՞զ ազգային էր արդեօք Սայեաթ-Նովա:

Բայց ահաւասիկ ժամանակակից բանաստեղծութենէն մէկ տուն մը.

«Պատմութիւն ունինք:<br>
Ըսել է՝ ա՛զգ ենք, արմատներն որուն<br>
Սուզուած են անյուշ, անգիր դարերու<br>
Մութ անտառներուն:»

Բանաստեղծութիւն է ասիկա: Կարծես միայն *մենք* պատմութիւն ունինք, միայն *մենք* ազգ ենք: Մէկ կողմ ձգելով թէ ինչ կրնանք հասկնալ պատմութեամբ, կը հարցնենք՝ թէ ինչո՞ւ այդքան ուժեղ կերպով պէտք է շեշտել որ

[67] Սայեաթ-Նովա, *Խաղեր (լիակատար ժողովածու)*, աշխատասիրութեամբ Հենրիկ Բախչինեանի, Երեւան, Գրականութեան եւ Արուեստի Թանգարանի Հրատարակչութիւն, 2003, էջ 3:

պատմութիւն ունինք եւ ազգ ենք, եթէ բոլորին յայտնի է որ թէ՛ պատմութիւն ունինք եւ թէ՛ ազգ ենք, ինչպէս մեզի նման հարիւրաւոր ազգեր՝ որոնք թէ՛ պատմութիւն ունին եւ թէ՛ ազգ են։ Ստորադասական զգացում մը կայ այստեղ։ Կարծես վախ մը կայ որ մենք ո՛չ պատմութիւն ունինք եւ ո՛չ ալ ազգ ենք, որով բանաստեղծը՝ իբրեւ բոլորէս աւելի գիտակ ու պատմութիւնը ուսումնասիրած անձ, կը հաստատէ թէ մենք թէ՛ պատմութիւն ունինք եւ թէ՛ ազգ ենք։ Կը կասկածի՞նք որ կրնանք առանց պատմութեան ազգ մը եղած ըլլալ (ինչպէ՞ս ժողովուրդ մը դարեր շարունակ կրնայ ապրիլ առանց պատմութեան)։ Չըսելու համար թէ ո՞ւր մնաց բանաստեղծական գիւտը, մտաւոր երեւակայութիւնը, լեզուական թռիչքը։

Նման գրութիւններ անհամար են դրամատիրական հայութեան մէջ, մանաւանդ եթէ նկատի առնենք մամուլին մէջ ցրուած ամէնօրեայ նման արտայայտութիւնները։ Ասոր կարելի չէ հանդիպիլ նախադրամատիրական ազգայնականութեան մէջ։ Նուա՞զ հայեր էին անոնք։

Հակառակ տիրական ազգայնականութեան այս նոր տեսակին, նախադրամատիրական, ոչ-իշխանական, ոչ-ֆեթիշական ազգայնականութիւնը շարունակուեցաւ հայ մշակոյթին մէջ։

Օրինակ, Կոմիտաս վարդապետ։ Կոմիտաս կը մտածէր ելլելով իր տարածական եւ ոչ տիրական դիրքէն՝ իբրեւ հայ մը, որ գիտակցութիւն ու ցանկութիւն ունէր ինքզինք տեսնել նաեւ ուրիշներու ընդմէջէն, այդ ուրիշները գլխաւորապէս ըլլալով նոյն կամ շրջակայ տարածութիւններու համաբնակիչները։ Այս առումով խօսուն է Ռոբերտ Աթայեանի հետեւեալ բացատրութիւնը. «Յայտնի է, որ Կոմիտասը ոչ միայն հայ ժողովրդական երաժշտութեան, այլեւ քրդական, թուրքական, պարսկական եւ արաբական երգերի գիտակ էր։ Իր դեռեւս առաջին դասախօսութիւններում (Բեռլինում, 1899-ին), ինչպէս եւ յետագայում (օրինակ, Միջազգային երաժշտական ընկերութեան Փարիզի համաժողովում, 1914-ին)՝ *հայկական երաժշտութեան տարբերիչ յատկանիշները* ցուցադրելիս, համեմատութեան համար մի շարք օրինակներ էր բերել այդ ժողովուրդների երգերից, երգելով ցուցադրել էր դրանց կատարման ազգային կերպերը» (ընդգծումը իմս է, Հ.Ա.)։[68]

Այսօր հազիւ կարելի է գտնել հայ երաժիշտ մը՝ որ փափաք ունենայ իր դրացիներու երաժշտութեան գիտակ ըլլալ, կարծէք ուրիշին գիտակցութիւնը

[68] Կոմիտաս, *Երկերի ժողովածու*, տասնչորսերորդ հատոր, Երաժշտական-ազգագրական ժառանգութիւն, կազմեց եւ ծանօթագրեց Ռ. Աթայեան, խմբագիրներ՝ Ռ. Աթայեան եւ Գ. Գէօդակեան, Երեւան, ՀՀ ԳԱԱ Գիտութիւն Հրատարակչութիւն, 2006, էջ 19։

պիտի ջնջէր իր գիտակցութեան բիւրեղութիւնը։ Դիտաւորեալ կերպով մոռացութեան կը տրուի այն հանգամանքը, որ ուրիշի մշակոյթին գիտանքը բազմացում մըն է սեփական ինքնին՝ ըլլայ ան անհատական թէ հաւաքական, եւ ոչ թէ ջնջումի կամ ազդեցութեան հնարաւորութիւն։

Նոյն առումով, բայց բնականաբար բոլորովին տարբեր հարթութիւններու վրայ եւ տարբեր մշակութային բնաբաններու մէջ, ոչ-իշխանական ազգայնականութիւն կարելի է դիտել գրողներ Եղիշէ Չարենցի, Շահան Շահնուրի, Վահան Թոթովենցի, Հրանտ Մաթեւոսեանի, նկարիչներ Արշիլ Կորքիի, Ժանսէմի եւ անհամար այլ մշակութային գործիչներու գործերուն մէջ։ Հակառակ որ անոնց մտածողութեան մէջ իշխանական ազգայնականութենէն ոչ մէկ նշոյլ կը գտնուի, հայ հիմնահոսանքային քննադատութիւնը յաճախ անոնց կը ներկայացնէ ֆեթիշացուած ազգայնականութեամբ՝ այնտեղ ամրագրելով վերամբարձ տարրեր որոնք բոլորովին օտար են ենթականերուն բնական յատկանիշներէն։

## ՊԱՀԱՆՋԱՏԻՐՈՒԹԵԱՆ ԱՂՄՈՒԿԸ ԸՆԴԴԷՄ ՊԱՐՊՈՒՄԻ ԼՌՈՒԹԵԱՆ

Վերադառնալով պահանջատիրութեան հիմնանիւթին, աւելցնեմ՝ որ գաղտնիք մը չէ Անատոլիայի այսօրուայ պարպումը հայերէն։ Անատոլիան այլազգիներէ պարպելու հետեւողական քաղաքականութիւնը՝ զոր կը վարէ յետ-Օսմանեան հանրապետական Թուրքիան իր հիմնադրումէն սկսեալ մինչեւ այսօր, ենթադրուած է յայտնի ըլլալ բոլորին։ Այս մասին հայկական հիմնահոսանքային մամուլը պարբերաբար կ'անդրադառնայ, ինչպէս նաեւ կը գրուին բազմաթիւ ուսումնասիրութիւններ գլխաւորաբար անգլերէն եւ թրքերէն լեզուներով։

Այս քաղաքականութիւնը՝ ըստ ժամանակաշրջանի պայմաններուն, կ'օգտագործէ տարբեր գործօններ եւ կ'ընդունի տարբեր լուծումներ։ Արտահոսքը տեղի կ'ունենայ թէ՛ դէպի Թուրքիոյ մեծ քաղաքները եւ անոնց շրջակայքը (ներքին գաղթ) եւ թէ՛ դէպի արտասահման (արտաքին գաղթ), ընդգրկելով հայերը, յոյները, հրեաները, ալեւիները, քիւրտերը եւ ուրիշներ։ Նպատակն է Անատոլիան՝ բազմաէթնիք այդ հսկայ եւ յետագայ հնարաւոր բռնկումներով լեցուն տարածութիւնը, դարձնել որքան կարելի է միասեռ, որպէսզի ամրապնդուի ազգային պետութեան մը բացառիկութիւնը։ Կիրառութեան միջոցները այլա-

զան են, որոնցմէ գլխաւորը թէ՛ օրինականացուած եւ թէ՛ ի վերուստ հրահրուած անհաւասարութեան ստեղծումն է:

Ինչպէս նշեցի, այս բոլորին մասին կը գտնուի բաւարար գրականութիւն: Խնդիրն այն է, որ հակառակ գրականութեան առկայութեան, երեւոյթը կը շարունակուի մինչեւ այսօր: Խօսելով լոկ հայերուն մասին, ասիկա ենթադրուած էր որ ըլլար օրակարգային հարց եւ վերածուէր պատումի (narrative): Անցեալը իր դէպքային վճռականութեամբ՝ հայոց ցեղասպանութիւնը, եւ ապագան իր ակնկալիքի անորոշութեամբ՝ հայոց պահանջատիրութիւնը, շատոնց արդէն դարձած են պատումներ: Անատոլիայի պարպումը պատում չէ դարձած, մինչդեռ այդ նոյն տարածութեան վերադարձը հայերուն (այնտեղի հայերուն վերացումէն ե՞տք)՝ իբրեւ պահանջատիրութիւն, շատոնց արդէն հանդիսացած է հայկական գլխաւոր պատումներէն մէկը:

Անատոլիայի պարպումին կասեցումը այսօրուայ հարց մըն է: Անիկա ոչ անցեալ է եւ ոչ ապագայ: Բայց եթէ ներկան վերածուի պատումի, ապա իշխանականները պարտաւոր են այդ ուղղութեամբ քայլեր ձեռնարկել: Ընթացիկ հարց մը՝ ուր կայ մարդու ֆիզիքական տեղափոխութիւն, կարելի չէ լուծել լոպպիութեամբ կամ ֆրանսական դատարաններէն վճիռներ յաղթանակելով: Ան կը պահանջէ գործնապաշտ (pragmatic) լուծումներ: Գործնապաշտութիւնը պիտի չնշանակէ պատերազմ, թէեւ անոր պարպումը մէկ ուղղութեամբ տարուող անձայն պատերազմ մըն է: Իշխանութիւն ունեցողներուն եւ իրենք իրենց հայութեան գոյութիւնը ապահովելու պարտականութիւնը ստանձնած ուժային կեդրոններու *պարտաւորութիւն*ն է լուծումներ մտածել, դիմելով ոչ թէ ինքնահաստատումի եւ «մենք ըրինք»-ներու շարաններու, այլ քաղաքական, մշակութային ու մտաւորական գործնապաշտ, հեռատես, շրջահայեաց եւ ոչ-արկածախնդրական քայլերու:

Արդարեւ, պատումի պարագային պէտք է «փաստել» խնդիրին գործադրական կողմը: Անատոլիայի պարագային, գործադրական մարմինները իրական եւ ուղղակի բախումի մէջ պիտի մտնեն թրքական պետութեան հետ, իսկ հանրութիւնը պիտի ակնկալէ ճշգրիտ ու համոզիչ պատասխաններ, ուրեմն՝ արտահոսքի վերջնական ու փաստացի կասեցում: Իսկ ձախողութեան պարագային զգալի յետքայլ պիտի արձանագրէ պատասխանատու մարմիններուն հեղինակութիւնը, հետեւաբար ստիպուած պիտի ըլլան բանեցնել հաղորդակցային նորանոր միջոցներ եւ ծախսել նշանակալի գումարներ որպէսզի կարողանան վերականգնել իրենց պատկերը եւ չիրականացուած գործողութիւնը վերածել գերիրականութեան (hyperreality): Ի տարբերութիւն անցեալ կատարեալի (հայոց ցեղասպանութիւն) եւ անկատար ապառնիի (պահանջատիրութիւն) վրայ

հիմնուած պատումներուն, սահմանական ներկային (Անատոլիայի պարպումը) պատումնականացումը վճռորոշ պատասխանատուութիւն մըն է։

Անկախ այս բոլորէն, հաւանական է որ Անատոլիայի պարպումը շուտով դառնայ անցեալ, այսինքն՝ տարածավայրը անլուծելիօրէն ու անբուժելիօրէն պարպուի հայերէ, որմէ ետք անշուշտ կարելի պիտի ըլլայ հրատարակել ուսումնասիրութիւններ՝ ուր աղբիւրագիտական բարձր եւ նախանձախնդիր մակարդակով հետազօտուած ըլլայ պարպումի խոր, ամբողջական եւ լիարժէք պատմութիւնը (ինչո՞ւ չէ եզրեր ալ հնարել, ինչպէս՝ «պարպումագէտ»), ինչպէս նաեւ կազմակերպել պարպումի ողբերգութիւնը յարգող սուգի շքեղ երեկոյթներ եւ վերջապէս լաւագոյն «պարպումագէտ»-ներուն շռայլել շքանշաններ ու մրցանակներ։ Միաժամանակ, կը վախնամ որ պահանջատիրութիւնը յաւերժ մնայ ապագայ։

Ոչ ոք պահանջատիրութեան պարագային կ'ըսէ՝ «Ի՞նչ կրնանք ընել», քանզի այդպէս ըսողը դաւաճան կը հռչակուի, նոյնիսկ եթէ ահաւոր բարդ ու տակաւին չծրագրուած գործողութեան մը մասին է խօսքը։ Բայց այդ նոյն անձը Անատոլիայի պարպումի կասեցումին մասին յստակ կերպով կ'ըսէ՝ «Ի՞նչ կրնանք ընել», թէեւ ան աւելի բարդ երեւոյթ մը չէ քան պահանջատիրութիւնը։

Ոչ ոք պահանջատիրութեան պարագային կ'ըսէ՝ «Ի՞նչ կրնանք ընել», բայց այդ նոյն անձին եթէ տեղեկացնես որ Եգիպտոսէն նշանակալի քանակով եգիպտահայ անուանի նկարիչներու նկարներ մեծ գումարներով վաճառուեցան թուրք ոմն մեծահարուստի մը կամ թուրքական իշխանութիւններուն կողմէ ղրկուած ոմն ներկայացուցիչի մը (առ եւ տուր հրամայական յարաբերութիւն՝ որուն համաձայն չեմ, փոխանակ տրամախօսային (discursive) յարաբերութեան՝ որուն կողմնակից եմ), պիտի ըսէ՝ «Ի՞նչ կրնանք ընել», թէեւ իր ժամանակին դժուար չէր իմանալ բոլոր հայ վաճառողներուն անունները եւ կասեցնել վաճառքը՝ եթէ ցանկութիւն ըլլար։ Ինչո՞ւ ցանկութիւն չկար։ Որովհետեւ հարցը չէր վերածուած պատումի իսկ զայն կասեցնողը ազգասէրի պիտակով պիտի չզարդարուէր ու շքանշաններ պիտի չստանար։

Արդ, պահանջատիրութիւնը խճճուած յարաբերութիւններու ամբողջականութիւն մըն է։ Առանց զիտակցելու Կայսրութեան վիճակը՝ իր անդրազգային ընկերութիւններու բացառիկ ազդեցութեամբ, առանց գիտակցելու ոչ-Կայսերական հնարաւորութիւնը՝ քոմիւնեան օրինակի հետքերով, անտեսած կ'ըլլանք հարցին ամբողջ բարդութիւնը եւ լուծումին (լուծումներուն) իրական կարելիութիւնները։

# 3.

# ՖՐԱՆՍԱՆ՝ ԻԲՐԵՒ ՆՄՈՅՇ ՀԱՅՈՑ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ՃԱՆԱՉՈՒՄԻՆ

ՄՈՒՏՔ

Չեմ յիշեր եթէ երկիր մը խնդրած ըլլայ Հայաստանէն ընդունիլ իր ցեղասպանութիւնը։ Չեմ յիշեր եթէ երկիր մը Հայաստանի մէջ լոպպինկ ըրած ըլլայ ճանչցնելու իր ցեղասպանութիւնը։ Որքան անկարեւոր է ուրիշներու համար իրենց ցեղասպանութեան ճանաչումը Հայաստանի կողմէ։ Միշտ հայկական կողմն է որ խնդրած է ուրիշներէն, այդ ուրիշներուն ծանրակշիռ մասը (բացի քանի մը բացառութենէ) ըլլալով դրամատիրութեան գլխաւոր կրողները եւ անդրազգային ընկերութիւններուն հովանաւորողները՝ Միացեալ Նահանգներ, Եւրոմիութեան երկիրներ, Զուիցերիա, Ռուսաստան, Իսրայէլ։ Արդարեւ, անոնք ո՛չ հետաքրքրուած են հայերով, ո՛չ ալ ցանկութիւն ունին օգտակար ըլլալ հայերուն։ Այս երկիրները պէտք ունին ստեղծել մարդկային ու մարդասէր սեփական դէմք մը, քօղարկելու համար իրենց նախկին իմփերիալիսթական, գաղութատիրական եւ այժմ Կայսրութեան հովանիին տակ գործած, գործող եւ գործելիք ոճիրներն ու ցեղասպանութիւնները, ինչպէս նաեւ ծածկելու իրենց դրամատիրական յարձակողականութեան հետեւանքով գոյացած շահագործուող, աղքատացած եւ մեկուսացած դասակարգները։ Անոնք իրենց խորհրդարաններուն մէջ ընդունելով հայոց ցեղասպանութիւնը, սքօղած կ'ըլլան սեփական ոճրագործութիւնները, առիթ տալով նորանոր ցեղասպանութիւններու եւ մարդկային դժբախտութիւններու։ Ամերիկան կը քօղարկէ միլիոնաւոր բնիկ ամերիկացիներուն (90 տոկոս) ցեղասպանութիւնը, Բրիտանիան՝ Թասմանիայի եւ Աւստրալիոյ բնիկ ժողովուրդին ցեղասպանութիւնը, Գերմանիան՝ Հերերոյի ցեղասպանութիւնը 1904-ին, Իսրայէլը՝ պաղեստինցիներուն անվերջանալի ցեղասպանութիւնը (հակառակ նոյն այդ հրեաներուն ահաւոր ցեղասպանութեան Նացիներուն կողմէ), եւ այլն, եւ այլն։ Իսկ Ֆրանսա՞ն։

«Ասիկա քաղաքականութիւն է», պիտի ըսեն քաղաքականասէրները։ Բայց չէ՞ որ նոյն ինք հայոց ցեղասպանութիւնը քաղաքականութեան արդիւնք էր։ Հայոց ցեղասպանութիւնը «քաղաքական» խաղաքարտի վերածելով, խաղաքարտի վերածած կ'ըլլանք նախ եւ առաջ մէկ ու կէս միլիոն զոհերը, ինչպէս նաեւ ցեղասպանային իրադարձութիւնը՝ իր անբացատրելի, անհասանելի, ահռելի, տմարդկային բոլոր դրսեւորումներով հանդերձ։ Խաղ՝ մահուան հետ։

Կեդրոնանալով Ֆրանսայի վրայ, պիտի նշել՝ որ Քոմիւնի սարսափելի կոտորածները ծրագրաւորողն ու գործադրողը՝ Ատոլֆ Թիէր, կը դառնայ Ֆրանսայի Երրորդ Հանրապետութեան առաջին նախագահը։ Ֆրանսական «հանրապետականութեան» շարունակութիւնը մինչեւ այսօր հիմնուած է 1871-ի

ջարդերուն վրայ, ջարդեր՝ որոնք, բնականաբար, պիտի մնային չդատապարտուած, քանի որ Երրորդ Հանրապետութիւնը վերջնականապէս պիտի հաստատէր դրամատիրական դասակարգի հանգիստ տեղաւորումը Ֆրանսայի մէջ, ջնջելով աշխատաւորական ու մարդկային իրաւունքներու համար մղուած յեղափոխութեան որեւէ հնարաւորութիւն, առանց կարողանալու, բնականաբար, վերացնել հասարակական շարժումները, ինչպէս 1968-ի յայտնի ուսանողական ըմբոստութիւնը, որուն մէջ շատեր ներքին կապ կը տեսնեն Փարիզի Քոմիւնին հետ: Մնալով անպատիժ, ֆրանսացի հանրապետականներուն համար լայն ասպարէզ բացուեցաւ յետագայ դաժանութիւններու, որոնցմէ լոկ քանի մը հատ պիտի փափաքէի նշել ստորեւ:

## ԱՐԱՐԱՅԻ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ ԵՒ ՀԱՅԿԱԿԱՆ ԼԵԳԷՈՆԸ

1918 Սեպտեմբեր 19-ի Արարայի ճակատամարտի յաղթանակին կրողները հայ լեգէոնականներն էին: Առանց լեգէոնականներուն՝ Արարայի ճակատամարտ գոյութիւն պիտի չունենար: Անոնք էին որ ճամբայ հարթեցին ֆրանսական բանակին գրաւելու Կիլիկիան եւ իրական հնարաւորութիւն ստեղծեցին այնտեղ հիմնելու հայկական պետութիւն:

Բաց աստի, ինչպէս Աւետիս Եափուճեան կը հաւաստիացնէ, «[ա]ռաջին անգամն էր, որ հայկական զինեալ ուժ մը հրոսակային խումբի մակարդակէն կը բարձրանար, կ'ըլլար կանոնաւոր բանակի միաւոր մը, եւ լիուլի կ'արդարացնէր իր վրայ դրուած յոյսերը:»[1]

Բայց եւ այնպէս, Արարան ամէն տարի, կամ նոյնիսկ «ամեակ»-ներու առիթներով յիշատակուող ու տօնակատարուող իրադարձութիւն մը չէ դարձած: Անոր մասին կարելի է գտնել կարեւոր յօդուածներ եւ ուսումնասիրութիւններ, բայց անոր շուրջ լրատուամիջոցային ու զանգուածային քարոզչութիւն երբեք գոյութիւն չէ ունեցած: Ինչո՞ւ: Որովհետեւ Արարան չէ դարձած այս քարոզչութեան մեքենան բանեցնողներուն «սեփականութիւն»-ը: Սեփականութեան հարց մը կայ հայոց պատմագրութեան մէջ: Ո՛ր դէպքը եւ ո՛ր պահը կը պատկանի որուն: Լեգէոնական «աւանդական» կուսակցութիւն չկայ որպէսզի ամէն տարի յիշատակէ *իր* յաղթանակը:

---

[1] Աւետիս Եափուճեան, «Հայկական Լեգէոնին կազմութիւնը, մասնակցութիւնը Կիլիկիոյ գրաւման եւ զինարձակումը», *Արեւ*, օրաթերթ, Գահիրէ, 13 Մարտ 1978, 63-րդ տարի, թիւ 17.922, էջ 3:

Այս բոլորին հետ կը մոռցուի նաեւ ուրիշ կարեւոր կէտ մը՝ Ֆրանսայի վարած քաղաքականութիւնը Կիլիկիոյ մէջ, որ պիտի առաջնորդէր դէպի կիլի-կահայութեան վերջնական ցեղասպանութիւնը։

Ըստ Արեւելեան Լեգէոնի սպայ Վահան Փորթուգալեանին, «Արեւելեան Լեգէոնի առաջին գաղափարը 1916 Յուլիսին Լոնտոնի մեր դեսպան Պ. Քամպոնին թելադրուեցաւ Գահիրէի «Ինթելիճընս Սերվիս»ի պետ զօրավար Քլէյթընի կողմէ։»[2] Անգլիացիներուն եւ ֆրանսացիներուն համատեղ ջանքերով, ծրագիրը աստիճանաբար կը սկսի կերպարանք ստանալ (Արարայի գրոհը պիտի կատարուէր անգլօ-ֆրանսական համատեղ զօրքի գործակցութեամբ, ի դէմս Կիլիկիա տեղադրուած գերմանա-թրքական զօրքին)։ Հայկական կողմէն բանակցութիւններուն մէջ կը ներգրաւուին Եգիպտոսէն Միհրան Տամատեան, Վահան Թէքէեան, Ստեփան Սապահ-Գիւլեան, Լեւոն Մկրտիչեան, Փարիզի Ազգային Պատուիրակութեան նախագահ Պօղոս Փաշա Նուպար եւ ուրիշներ։

1916 Հոկտեմբեր 27-ին, Լոնտոնի ֆրանսական դեսպանատան մէջ խորհրդակցութիւն կը գումարուի անգլիական կառավարութեան ներկայացու-ցիչ Մարք Սայքսի, ֆրանսական կառավարութեան ներկայացուցիչ Ֆրանսուա Ժորժ-Փիքոյի եւ Ազգային Պատուիրակութեան նախագահ Պօղոս Նուպարի մասնակցութեամբ, ուր կերպարանք կը ստանայ համաձայնութիւնը, ըստ որուն Կիլիկիոյ մէջ հայ կամաւորները պիտի մասնակցին Թուրքիոյ դէմ պատերազ-մին, որուն փոխարէն Ֆրանսան կը խոստանայ, դաշնակիցներու յաղթանակէն ետք, Կիլիկիոյ հայութեան շնորհել ինքնավարութիւն՝ իր պաշտպանութեան տակ։[3]

Սայքս եւ Փիքօ անունները շատ բան կը բացատրեն այսօրուայ պատմա-գրութեան համար եւ անմիջապէս կրնան ակնարկել դէպքերու յետագայ զար-գացումը։ Բայց հանդիպումին ժամանակ տակաւին չէր հրապարակուած վեց ամիս առաջ (1916 Մայիս 16-ին) գաղտնաբար ստորագրուած Սայքս-Փիքօ (Sykes-Picot) տխրահռչակ համաձայնագիրը, որ պիտի որոշէր Միջին Արեւելքի ազդեցութեան ոլորտները։ Կիլիկիան՝ որուն համար երկու ու կէս տարի ետք

---

[2] Մէջբերումը կատարած եմ հետեւեալ աշխատութենէն՝ Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 13 Մարտ 1978, 63-րդ տարի, թիւ 17.922, էջ 3։

[3] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 3 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.938, էջ 3 - 4 Ապրիլ 1978, 63րդ տարի, թիւ 17.939, էջ 3։ Շ. Թ. Թորոսեան, «Հայկական լեգէոնը եւ Արարայի ճակատամարտը», *Լրաբեր հասարակական գիտութիւնների*, Երեւան, 1969, թիւ 10, էջ 62-63։

պիտի պայքարէին հայ լեգէոնականները, ըստ համաձայնագիրին, պիտի անցնէր Ֆրանսայի տիրապետութեան տակ։

Արդարեւ, Լոնտոնի ֆրանսական դեսպանատան մէջ հայերուն տրուած խոստումները, ինչպէս նաեւ յետագայ բոլոր համաձայնութիւնները, եղած են բանաւոր։ Պատմաբան Շ. Թորոսեան կը գրէ.

«Արեւելեան լեգէոնի կազմաւորման եւ 1916 թ. Լոնդոնում կայացած խորհրդակցութեան մասին խօսող բոլոր հեղինակները յիշատակում են ֆրանսիական կառավարութեան եւ Ազգային պատուիրակութեան միջեւ կայացած համաձայնութեան, անգամ ստորագրուած պայմանագրի մասին, որով Ազգային պատուիրակութիւնը խոստանում էր օժանդակել ֆրանսիական կառավարութեանը կամաւորներ հաւաքագրելու գործում, իսկ Ֆրանսիան դրա դիմաց խոստանում էր հայերին ինքնավարութիւն տալ Կիլիկիայում։ Այդ մասին են վկայում նաեւ Պօղոս Նուբարի վերոյիշեալ նամակները։ Սակայն, ինչպէս պարզւում է, նման գրաւոր համաձայնագիր, պայմանագիր չի ստորագրուել։ Հետեւաբար, հայ-ֆրանսիական զինուորական համագործակցութիւնը հիմնըւած է եղել Ֆրանսիայի բանաւոր երաշխաւորութեան, նրա «ասպետական» ազնիւ խօսքի, Պօղոս Նուբարի եւ նրա համախոհների դէպի ֆրանսիական դիւանագիտութիւնն ունեցած կոյր հաւատքի վրայ։

«Ազգային պատուիրակութեան քաղաքական կարճատեսութիւնը, որը յետագայում ի չարս օգտագործուեց ֆրանսիական գաղութարարների կողմից, իրաւացիօրէն քննադատուել է մի շարք հեղինակների կողմից։»[4]

Աւետիս Եափուճեան եւս կը շեշտէ համաձայնութեան բանաւորութիւնը. «[Ֆ]րանսացիները Պօղոս Նուպար փաշայի հետ իրենց ըրած ԲԵՐԱՆԱՑԻ համաձայնութեան մէջ խոստացան, որ ան [Արեւելեան Լեգէոնը, Հ.Ա.] ինքնավար հայկական Կիլիկիոյ ազգային բանակին կորիզը պիտի կազմէ։»[5]

Միհրան Տամատեան կը տեղեկացնէ՝ որ Հոկտեմբեր 27-ի խորհրդակցութեան ժամանակ «[բ]անագնացները առանձին առանձին նօթագրութիւններ կը բռնեն, բայց բրօթօքօլ մը չստորագրուիր։ Պօղոս փաշա գոհ կը մնայ բանակցութեանց արդիւնքէն։»[6] «Եւ այս պարագան», կ՚առարկէ Եափուճեան, «հնարաւո-

---

[4] Շ. Թ. Թորոսեան, նշ. յօդ.ը, էջ 68։

[5] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 13 Մարտ 1978, 63-րդ տարի, թիւ 17.922, էջ 3։

[6] Միհրան Տամատեան, «Վահան Թէքէեան. նշմարներ ու նշխարներ իր կեանքէն ու գործէն», *Արեւ*, 2 Յունիս 1945, Լ. տարի, թիւ 8044, էջ 2։

րութիւն պիտի տար ֆրանսացիներուն, յետագային ուրանալու իրենց յանձնառութիւնը։»[7]

Լեգէոններու կազմութեան համար Եգիպտոսի մէջ կը կազմուի Ազգային Միութիւնը չորս կուսակցութիւններու մասնակցութեամբ՝ Հնչակեան, Դաշնակցական, Վերակազմեալ Հնչակեան եւ Ռամկավար։ 1916 Նոյեմբերի վերջաւորութեան Ազգային Միութիւնը իր պաշտօնական կոչը կը հրապարակէ եգիպտահայ մամուլին մէջ։[8]

Եափուճեան կը տեղեկացնէ. «Ազգային Միութեան կոչին անմիջականօրէն պատասխանեցին Փոր-Սայիտի մուսա-լեռցիները, որոնցմէ 500-600 հոգի կամաւոր արձանագրուեցան. անոնց հետեւեցան 300ի չափ եգիպտահայեր, որոնց եկան միանալու մօտ 250 զինուորներ՝ թրքական բանակէն անգլիացիներուն ձեռքը գերի մնացած հայեր, որոնք կը գտնուէին Հնդկաստան՝ գերեկայանի մը մէջ։»[9]

Ամերիկայէն կամաւորներ հաւաքագրելու համար Եգիպտոսէն երեք կուսակցութիւններու ներկայացուցիչներ՝ Ստեփան Սապահ-Գիւլեան (հնչակեան), Արտաւազդ Հանըմեան (դաշնակցական) եւ Միհրան Տամատեան (ռամկավար), կը մեկնին Միացեալ Նահանգներ։ Իրենց բանակցութեան շնորհիւ կը կազմուի Հայ Ազգային Միութիւն Ամերիկայի, որ կը յաջողի 5000 կամաւորներու արձանագրութիւններ ձեռք բերել, որոնցմէ միայն 1200-ը կը փոխադրուի Ֆրանսա։ Առաջին խումբը կը մեկնի 1917 Յունիս 9-ին, իսկ վերջինը՝ Նոյեմբեր 3-ին։[10]

Այսպէս, կը կազմուի Արեւելեան Լեգէոնի հայկական թեւը՝ որ պիտի մարզուէր ու գործէր ֆրանսական տնօրինութեան տակ։ «Ֆրանսացիներուն տրամադրութեան տակ կը մնային այն սուրիացիները, որոնք Եգիպտոս կը գտնուէին, ընդհանրապէս իբրեւ գերի անգլիական բանակին ձեռքը», կը տեղեկացնէ Եափուճեան։[11]

Հաւաքուած բոլոր լեգէոնականները կը փոխադրուին Կիպրոս՝ մարզուելու համար ֆրանսացիներուն կողմէ։ Լեգէոնի չորս գումարտակները բաղկացած

---

[7] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 4 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.939, էջ 3։

[8] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 5 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.940, էջ 3 - 6 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.941, էջ 3։

[9] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 6 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.941, էջ 3։

[10] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 8 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.943, էջ 3 - 10 Ապրիլ 1978, 63րդ տարի, թիւ 17.944, էջ 3։

[11] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 12 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.946, էջ 3։

էին շուրջ 5000 անձերէ, որոնցմէ մէկը կազմուած էր արաբներէ՝ 1000 անձ, միւս երեքը հայերէ՝ 4000 անձ:[12]

Թուրքերուն չգրգռելու նպատակով, ինչպէս նաեւ Լեգէոնի ոչ-հայ անդամներուն գոյութիւնը պաշտպանելու համար, Լեգէոնը կ'անուանուի Արեւելեան Լեգէոն եւ ոչ թէ Հայկական Լեգէոն:

Երկու տարի Կիպրոսի մէջ մարզուելէ ետք, 1918 Մայիսին լեգէոնականները կը բաժնուին իրարմէ: Եափուճեան կը գրէ. «Վերջապէս Մայիսի սկիզբները առաջին եւ երկրորդ վաշտերը Մոնարկայէն Ֆամակուսթա [երկուքն ալ Կիպրոսի քաղաքաներ, Հ.Ա.] կը հասնէին, ուրկէ նաեւ Փոր-Սայիտ, անկէ ալ Իսմայիլիա, ուր զինավարժութիւններ կը կատարէին: Երրորդ վաշտի զինուորներէն մաս մը Կիպրոս կը մնար անորոշ ժամանակաշրջանի մը համար: Գումարտակ կը ղրկուէր Քանթելիրիզը կղզին իբր պահակ: Իսկ ջոկատ մըն ալ Սուրիոյ մօտակայքը Ռուատ կղզին գրաւելու համար: Հետագային, այս երեք խումբերը Պէյրութ կը հաւաքուէին, այնտեղէն ալ Կիլիկիա կը մեկնէին:»[13]

Փոր-Սայիտի վաշտը կ'անցնի Պաղեստին եւ Օգոստոսի վերջ դիրք կը գրաւէ Արարայի բարձունքին դիմաց:[14]

Նախքան Լեգէոնին ժամանումը Պաղեստին, անգլօ-ֆրանսական զօրքը երեք անգամ յարձակած էր Արարայի բարձունքը գտնուող գերմանա-թուրքական զօրքին, եւ երեք անգամ ալ պարտութիւն կրած: Արարայի բարձունքը կարեւոր յենակէտ մըն էր, որուն գրաւումով ճամբայ կը բացուէր դէպի հիւսիս: Որոշեալ օրը՝ 1918 Սեպտեմբեր 19-ի լուսաբացին, կը սկսի անգլօ-ֆրանսական զօրքին ընդհանուր յարձակումը: «Արեւելեան լեգէոնը, աջում ունենալով ալժիրական, իսկ ձախում՝ հնդկական զօրամասեր, առաջադրանք էր ստացել գրոհել ռազմաճակատի ամենադժուարին ու անմատչելի հատուածի վրայ», կը գրէ Թորոսեան:[15] Այս «ամենադժուարին ու անմատչելի հատուածը» Արարայի բարձունքն էր:

«Պաղեստինի ամբողջ ճակատին վրայ, Մեռեալ Ծովէն մինչեւ Միջերկրականի արեւելեան ափը, չկար դիրք մը այնքան դժուարանցանելի ու թերեւս այն-

[12] Շ. Թ. Թորոսեան, նշ. յօդ.ը, էջ 63-64:

[13] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 17 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.950, էջ 3:

[14] Շ. Թ. Թորոսեան, նշ. յօդ.ը, էջ 64:

[15] Անդ, էջ 65:

քան անառիկ որքան Արարայի արեւմտեան կողքին վրայ գտնուող Հայկական Լէգէոնի բաժին հանուած դիրքը», կը գրէ լեգէոնական Տիգրան Պօյաճեան։[16]

Ուրիշ լեգէոնական մը՝ Մ. Զարիկեան, եւս կը հաստատէ դիրքին դժուարութիւնը.

«Ընդհանուր թրք. ճակատի ռազմական կարեւոր կէտերն էին Րաֆաթ-Արարա լեռնաշղթան, ուր բնութեան վայրենութիւնը իր լրիւ կատարելագործումը ստացած էր իր ներկայացուցած դժուարին դիրքերովը։

«15 մղոն երկարութեան մը վրայ տարածուած յարձակողական գծին էն կարեւոր կեդրոնը այն լեռներն էին, որոնք կ'իշխէին բարձրէն տիրականօրէն, աջ ու ձախ տարածուած դաշտամասերուն վրայ, դաշնակից բանակներուն կատարած ոեւէ ռազմական շարժումներուն։ Րաֆաթն ու Արարան ու Ուատի Պալուտի (մեր պահեստի գիծը) անդնդախոր կիրճը, որպէս անառիկ դիրքեր մէկ ամբողջութիւն մը կը կազմէին, մինչեւ Նապլուս քաղաքը։

«Բնականէն ամուր, սեպ ժայռերու ու անմատչելի ապառաժներու այս զիրար գերազանցող գահենը, յաջորդական միջանցքներով իրար զօդուած դժուարանցանելի կիրճերու եւ բլուրներու այն շղթան էր, ուր թուրքը Երուսաղէմի ճակատամարտէն վերջ իր այնքան խուճապահար փախուստի մէջ դիւրութեամբ կրցած էր ժամանակին կասեցնել անգլ. բանակներու յաղթական առաջխաղացքը, եւ հոն՝ ամիսներէ ի վեր աշխատած էր կազմակերպել ահեղ դիմադրութիւն մը ապաւինած անառիկ ու բնական ամրոցներու, եւ գերմանացի մեծ զօրավար Լիման ֆոն Զանտերս փաշայի ռազմագիտական հանճարին։

«Գերման միլիթարիզմը՝ իր զինուորական բոլոր հնարամտութիւնը չէր խնայած այս ճակատի ամրացման շուրջ, ան որքան երեւոյթներով վայրի՝ այնքան ալ պաշտպանութեան տեսակէտէն դժոխային էր դարձեր։ Քանի՛ քանի՛ անգամներ յարձակող բանակներ ետ ետ ընկրկած էին մեծ կորուստներով, եւ քանի՛ քանի յարձակման փորձեր անյաջող վիժումի դատապարտուած էին այս գեհենաշնորհ դիրքերու դէմ։

«Ընդհ. ռազմաճակատի վրայ ոեւէ՛ մէկ կողմէն ապահով առաջախաղացում մը ունենալու համար հարկ էր խորտակել այս բնական ամրոցը, որ իր աննուաճ դիրքերովը այդ ճակատին փորձաքարը եղած էր, եւ ատով ալ կը փրկէր ամբողջ թրք. ռազմաճակատին բախտը։

---

[16] Տ. Յ. Պօյաճեան, «Յաղթական Արարան», *Արարա*, նուիրուած Արարայի հինգերորդ տարեդարձին, Պոսթոն, Հայ Լէգէոնական Միութիւն, 19 Սեպտեմբեր 1923, էջ 6։

«Հո՛ն էր թուրքին բոլոր ուժը, հոն էր բռնութեան մեծագոյն որջը, եւ հետեւաբար՝ հոնկէ պէտք էր հարուածել թուրքին սիրտը ու խորտակել միջնաբերդը։»[17]

Պատմաբանները եւս կը հաստատեն ասիկա։ Սամուէլ Պօղոսեան 2014-ին կը գրէ. «Ռաֆաթ-Արարան 350 մետր բարձրութեամբ եւ 3 կմ ձգուող լեռ էր։ Հայկական զօրախումբը կանգնած էր Ռաֆաթի դիմաց, իսկ Արարայի ուղղութեամբ բրիտանական 10-րդ դիվիզիայի հնդկական զօրամասերն էին։ Հայկական լեգէոնը յանձնարարութիւն ստացաւ գրաւել Ռաֆաթի բարձունքը, որը ռազմաճակատի ամենադժուար ու գրեթէ անառիկ հատուածներից էր համարւում։»[18]

Արդէն յստակ է՝ որ ռազմական առումով որքան մեծ կարեւորութիւն կը ներկայացնէր Արարայի բարձունքը։

Այդ բարձունքը գրաւելու համար զօրքի կեդրոնական հատուածի առաջնային շարքերը յատկացուած էին 600 հայ լեգէոնականներու։ Տիգրան Պօյաճեան կը նկարագրէ 1918 Սեպտեմբեր 19-ը՝ Արարայի ազատագրութեան օրը.

«Հայկական Լէգէոնի 600 զինուորները կռուեցան երկու մղոն տարածութեան վրայ։ Անոնք իրենց առջեւ ունէին երեք բարձր բլուրներ որոնց իւրաքանչիւրին ետեւ շինուած էին Թրքական առաջին, երկրորդ եւ երրորդ պաշտպանութեան գիծերը յաջորդաբար։ Լէգէոնի ձախ կողմը կը բռնէին մէկ վաշտ Ալճերացիներ, իսկ աջ կողմը կը գտնուէր Րաֆաթ գիւղը, Արարայի արեւմտեան կողքին վրայ շինուած, որ յանձնուած էր Սիւրիացիներու պաշտպանութեան, որոնք ամբողջ կռուի տեւողութեան մէկ գնդակ անգամ չարձակեցին։

«Նկատի ունենալով ուրեմն ճակատի աննպաստ դիրքը, դժուար չպիտի ըլլայ եզրակացնել թէ Հայ զինուորները պարտաւորուած էին թշնամի արագահարուածներու արձակած գնդակներուն տեղատարափին տակ բարձրանալ բլուրն ի վեր իրենց առջեւ չունենալով քարի, թուփի եւ հողակոյտի պաշտպանութիւնն անգամ, եւ բոլորովին ենթակայ հարուածներու։»[19]

Երեկոյեան ժամը 7-ին Արարան վերջնականապէս ազատագրուած էր, ինչպէս կը նկարագրէ Պօյաճեան.

---

[17] Քաղուածքը կատարած եմ հետեւեալ աշխատութենէն՝ Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 19 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.952, էջ 3։

[18] Սամուէլ Ա. Պօղոսեան, «Մեգիդոյի ճակատամարտը եւ հայկական լեգէոնը», *ՎէՄ*, համահայկական հանդէս, Զ (ԾԲ) տարի, թիւ 3 (47), Յուլիս-Սեպտեմբեր 2014, էջ 149-150։

[19] Տ. Յ. Պօյաճեան, նշ. յօդ.ը, էջ 6։

«Ժամը իրիկուան 7ն էր արդէն, երբ կռիւը կանգ առաւ, թնդանօթները լռեցին երկու կողմէն, յաջորդ արեւծագին կրկին գոռալու պատրաստութեամբ։

«Մեր զինուորները պահեցին իրենց դիրքը։ Վաղուան կռիւը պիտի մղուէր թարմ ուժերու կողմէ, որովհետեւ առաջին վաշտը կուգար գրաւելու երկրորդին տեղը, վճռական յաղթանակ մ՚ալ ինք տանելու հաստատամտութեամբ։

«Արշալոյսի [20 Սեպտեմբեր, Հ. Ա.] ճառագայթները հազիւ սկսած էին լուսաւորել ռազմադաշտը, երբ մեր հետախոյզներու խումբը լուր բերաւ թէ թշնամին իր դիրքերը ձգած փախած էր։»[20]

Հայ լեգէոնականները կու տան 23 զոհ եւ 76 վիրաւոր։[21]

Շարունակելով պատմութիւնը՝ Կլիմենտ Յարութիւնեան կը բացատրէ, թէ օգտուելով Արարայի շնորհիւ բացուած ճանապարհէն, բրիտանական զօրքը յաջորդ օրը՝ 1918 Սեպտեմբերի 20-ին, «15-20 մղոն ճանապարհով, 50 մղոն խորութեամբ» փախուստի կը մատնէ գերմանա-թրքական բանակը։ Միջերկրական ծովէն մինչեւ Մեռեալ Ծով կը քայքայուի թրքական ռազմաճակատը։ «Շարունակելով առաջխաղացումը՝ դաշնակիցների զօրքերը, որոնց հետ նաեւ Արեւելեան լեգէոնը, հոկտեմբերի 1-ին ազատագրում են Դամասկոսը, հոկտեմբերի 6-ին՝ Բէյրութը, իսկ 26-ին՝ Հալէպը։ Լեգէոնականների մարտական ուղին Ռաֆաթ Արարայից ձգուեց հիւսիս՝ աւելի քան 250 կմ։ Նրանք ակտիւ մասնակցութիւն ունեցան Պաղեստինի, Յորդանանի, Սիրիայի եւ Լիբանանի տարածքների ազատագրմանը օսմանեան լծից եւ նպաստեցին այն բանին, որ այդ երկրների ժողովուրդները յետագայում ստեղծեն ինքնուրոյն պետութիւններ։ Բէյրութում լեգէոնին միացաւ Կիպրոսից ժամանած նորակազմ 5-րդ գումարտակը, որը այնուհետեւ մասնակցեց յետագայ մարտական գործողութիւններին։»[22]

Պէյրութի մէջ անուանումը Արեւելեան Լեգէոնէ կը փոխուի Հայկական Լեգէոնի։

Կլիմենտ Յարութիւնեան կը շարունակէ. «Թուրքիայի պարտութիւնը կատարեալ էր, եւ նա ստիպուած էր 1918 թ. հոկտեմբերի 30-ին Էգէյեան ծովի Լեմնոս կղզու Մուդրոս նաւահանգստում խարիսխ նետած անգլիական «Ագամեմնոն» հածանաւի վրայ Մեծ Բրիտանիայի հետ կնքել զինադադարի պայմանագիր [ծանօթ է Մուտրոսի Զինադադար - Armitrice of Mudros անունով, Հ. Ա.]։

---

[20] Անդ, էջ 7։

[21] Շ. Թ. Թորոսեան, նշ. յօդ.ը, էջ 66։

[22] Կլիմենտ Յարութիւնեան, «Ֆրանսիական բանակի հայկական լեգէոնը 1916-1920 թուականներին», *Պատմա-բանասիրական հանդէս*, Երեւան, 1999, թիւ 2-3, էջ 107։

Ըստ Մուդրոսի պայմանագրի, Անտանտայի երկրները իրաւունք են ստանում գրաւել Բոսֆորի եւ Դարդանէլի նեղուցների ամրութիւնները, իրենց ռազմանաւերը կարող էին ազատօրէն լողարկել այդ նեղուցներով եւ մուտք գործել Սեւ ծով: Թուրքական կայազօրները կապիտուլացւում են Հիջազում (այժմ Սաուդեան Արաբիայի մի մասը, որտեղ գտնւում են մուսուլմանական սրբավայրերը), Իրաքում, Սիրիայում եւ Եմէնում, իրենց զօրքերը դուրս են բերում Իրանից, Անդրկովկասից եւ Կիլիկիայից: Կիլիկիայից թուրքական զօրքերը պէտք է յետ քաշուէին մինչեւ 1918 թ. դեկտեմբերի 18-ը, իսկ հայերին իրաւունք էր տրւում ներգաղթել իրենց հայրենիք: Մինչեւ նշուած ժամկէտը Կիլիկիայից չնահանջած թուրքական զինուորներն ու սպաները գերուելու էին, իսկ նրանց զէնքն ու զինամթերքը ենթակայ էին բռնագրաւման:»[23]

Մուտրոսի Զինադադարը կը նախանշէր Առաջին Համաշխարհային Պատերազմի գոնէ ձեւական, «պաշտօնական» աւարտը 1918 Նոյեմբեր 11-ին, համաշխարհային պատերազմ մը՝ որուն «ոչ-համաշխարհային» ռազմական գործողութիւնները բաւական աւերիչ հետեւանքներով տակաւին պիտի շարունակուէին քանի մը տարի:

Ըստ Եափուճեանի տուեալներուն՝ «հայ լեգէոնականները նաւերով Կիլիկիա կը մեկնին: Անոնցմէ մաս մը Դեկտեմբեր 19, 1918ին Մերսին կը ժամանէ, եւ կը տեղաւորուի Մերսին, Տարսոն, Ատանա, Պօզանթի եւ շրջակայ գիւղերը: Մինչ ուրիշ մաս մը, Նոյեմբեր 22ին Ալեքսանտրէթ հասած էր արդէն եւ կը տեղաւորուէին Իսլահիէ, Հէօրթ-Եոլ, Օսմանիէ եւ Պաղչէ:»[24]

Յարութիւնեան եւս կը նշէ թուականներ.

«[1918] Նոյեմբերի 21-ին Բէյրութից՝ Ալեքսանդրէտի վրայով, նաւերով Կիլիկիա է ուղեւորւում լեգէոնի առաջին գումարտակը եւ տեղ հասնելով խորանում երկրի ներքին շրջանները: Դեկտեմբեր 16-ին Կիլիկիա փոխադրուեցին լեգէոնի 2-րդ եւ 5-րդ գումարտակները, որոնք շարժւում են դէպի հիւսիս: Նրանցից առաջինը գրաւում է Դէօրթ-Եոլ [Տէօրթ-Եոլ], Թոփրակ-կալէ [Թոփրաք Քալէ], Իսլահիէ բնակավայրերը, իսկ երկրորդը մտնում է Ադանա: Լեգէոնի 3-րդ գումարտակը այդ ընթացքում գրաւում է Կիլիկիայի Մերսին, Տարսոն եւ Բոզանթի [Պոզանթի] քաղաքները: Լեգէոնի զգալի ուժեր տեղաւորուեցին նաեւ Այնթապ, Մարաշ քաղաքներում եւ այլ բնակավայրերում:

[23] Անդ, էջ 107:

[24] Աւետիս Եափուճեան, նշ. յօդ.ը, 24 Ապրիլ 1978, 63-րդ տարի, թիւ 17.956, էջ 3:

Փաստօրէն ողջ երկրամասն անցնում է Հայկական լեգէոնի վերահսկողութեան տակ։»[25]

Լեգէոնականներու պատմութեան շարունակութիւնը՝ մինչեւ անոնց պարտադիր կազմալուծումը ֆրանսացիներուն կողմէ, համառօտ կերպով կը ներկայացնէ պատմաբան Կլիմենտ Յարութիւնեան.

«Այդ խոստումներից ոգեւորուած Կիլիկիա վերադարձած հայերը անմիջապէս ձեռնամուխ եղան իրենց աւերուած բնակավայրերը վերականգնելու, կորցրած կայքն ու գոյքը բերելու, մշակութային, հասարակական մեռած կեանքը վերակենդանացնելու գործին։ Սակայն հայերի այդ ոգեւորութիւնը երկար չտեւեց, որովհետեւ շուտով ինչպէս Կիլիկիայի, այնպէս էլ արաբական երկրների բաժանման հարցում սրուեցին անգլօ-ֆրանսիական յարաբերութիւնները, որի հետեւանքով անգլիացիները երկրամասից հանեցին իրենց ենթակայութեան տակ գտնուող զօրքերը ե դրանք փոխադրեցին այսպէս կոչուած Կարմիր գօտի։ Կիլիկիայում թուրքական մեծաթիւ զինուած զանգուածների դէմ մնացին ալժիրցի մահմեդականներից կազմուած, թուաքանակով քիչ ֆրանսիական ստորաբաժանումներ, որոնք բարեացակամօրէն էին տրամադրուած իրենց հաւատակիցների նկատմամբ, եւ Հայկական լեգէոնը, որի անձնակազմը հասնում էր շուրջ 3000-5000-ի։ Սակայն լեգէոնի ուժերը ցրուած էին Կիլիկիայի տարբեր մասերում, որը յետագայում աղէտալի հետեւանքներ ունեցաւ նրանց համար։ Բացի այդ, շատ անորոշ էր լեգէոնականների կարգավիճակը. նրանք թէեւ պաշտօնապէս չէին մտնում ֆրանսիական բանակի մէջ, սակայն աշխատավարձ եւ մատակարարում ստանում էին այնտեղից։ Նրանք մշտապէս գտնւում էին սպասողական վիճակում, քանի որ կարծում էին, թէ Ֆրանսիան Կիլիկիային ինքնավարութիւն կը շնորհի, իսկ լեգէոնն էլ պէտք է վերակազմաւորուի Կիլիկիայի հայկական պետութեան բանակի։ Այս անորոշ վիճակն աւելի բարդացաւ, երբ 1919 թ. մայիսին գնդապետ Ռոմիէոյի փոխարէն Հայկական լեգէոնի հրամանատար նշանակուեց գեր-գնդապետ Ֆլի-Սէյնթ Մարին, իսկ նոյն տարուայ դեկտեմբերի 2-ին Բէյրութից Ադանա փոխադրուեց Մերձաւոր Արեւելքում ֆրանսիական առաջին զօրաբաժնի հրամանատար գեներալ Ժուլիէն Տիւֆոն։ Վերջինս Կիլիկիայում ստեղծեց ոչ թէ հայկական ինքնավարութիւն, այլ զինուորական իշխանութիւն՝ իր տրամադրութեան տակ չունենալով համապատասխան քանակութեան ուժեր։ Զինուորականների այդ վերաբերմունքը հայերի նկատմամբ պատահական չէր եւ բխում էր ֆրանսիական կառավարման շրջաններից, որոնց նպատակը ոչ թէ հայերին ինքնավարութիւն

[25] Կլիմենտ Յարութիւնեան, նշ. յօդ.ը, էջ 107-108։

տալն էր, այլ Կիլիկիան իրենց գաղութ դարձնելը: Հէնց այդ են հաստատում Ֆրանսիայի վարչապետ Բրիանի խօսքերը, որոնք ասուել են 1920 թ. մարտի 27-ին կառավարութեան նիստի ժամանակ. «Կիլիկիան շատ հարուստ երկիր մըն է: Վաղը եթէ մենք չըլլանք, ո՛վ պիտի ըլլայ մեր տեղը: Եթէ տեսնենք, որ մեր տեղը ուրիշն եկած է, այն ատեն պիտի հասկանանք մեր սխալը եւ պիտի զղջանք... Կիլիկիա կը նշանակէ բամբակ, որ կը պակսի մեզի, ինչպէս նաեւ շատ մը հարստութիւններ»: Ֆրանսիայի վարչապետր «ուրիշն» ասելով հասկանում էր առաջին հերթին հայերին, որոնք միամտօրէն հաւատացել էին, թե «ազատարար» Ֆրանսիան Կիլիկիան վերադարձնելու է իրենց: Ուստի պատահական չէր, որ երբ 1920 թ. օգոստոսի 3-ին Ադանայից արեւելք գտնուող Սիհան եւ Ճիհան գէտերի միջեւ ընկած տարածքում հայ ազգային կուսակցութիւններն առանձին-առանձին հռչակուեցին «Միջագետքի հանրապետութիւն», ապա գնդապետ Բրեմոն հէնց նոյն օրը վերացրեց այդ հանրապետութիւնները: Նոյն ճակատագրին արժանացաւ նաեւ օգոստոսի 4-ին Ադանայում Հայ ազգային պատուիրակութեան Կիլիկիայի լիազօր ներկայացուցիչ Միհրան Տամատեանի նախագահած Ազգային գերագոյն խորհրդի կողմից Ֆրանսիայի հովանաւորութեան ներքոյ հռչակուած ինքնավար Հայաստանի Հանրապետութիւնը: Վերջինս գոյութիւն ունեցաւ ընդամէնը երկու օր եւ ֆրանսիացիների կողմից ցրուեց օգոստոսի 6-ին: Ֆրանսիացիների այդ հակահայկական գործողութիւնները արժանացան տեղական թուրքերի, ինչպէս նաեւ Անկարայի քէմալական Թուրքիայի կառավարութեան գովեստներին: Դրանից յետոյ ֆրանսիական իշխանութիւնները սկսեցին աստիճանաբար կրճատել Հայկական լեգէոնի թուական կազմը՝ 5000-ից այն հասցնելով 1500-ի: Դա քէմալականների հռչակած ազգային պատերազմի օրերին ոչ միայն սխալ էր, այլեւ դաւաճանութիւն հայերի նկատմամբ:

«Այդ շրջանում Օսմանեան կայսրութեան ամբողջականութիւնը պահպանելու համար քէմալականները իրենց պայքարն սկսեցին Կիլիկիայի ճակատից, որտեղ անգլիական զօրքեր չկային, իսկ ֆրանսիացիները չափազանց թոյլ էին եւ վատ չէին տրամադրուած թուրքերի նկատմամբ: Քէմալականները, շարունակելով երիտթուրքերի հակահայկական քաղաքականութիւնը, ծրագրել էին վճռական պայքար մղել բոլոր այն շարժումների դէմ, որոնց նպատակը անկախ Հայաստանի ստեղծումն էր:

«1919-1921 թթ. քէմալականները Կիլիկիայում գործողութիւններ ծաւալեցին: Նրանք իթթիհաթականների (երիտթուրքերի) հետ միասին մահմեդական ազգաբնակչութեանը բորբոքում էին հայերի դէմ, նրանց գաղտնի կերպով զինում եւ ապահովում էին ռազմամթերքով: «Օրը ցերեկով, - գրել է դէպքերի

ականատես ֆրանցիսկեան հայրերի Մարաշի վանքի վանահայր Մատերն Միւրէն, - քէմալական ղեկավարները տեղական իշխանութիւնների հետ գործակցած զէնք ու ռազմամթերք էին բաժանում քաղաքի ու շրջակայքի բնակիչներին, գնդացիրներ առաքում քաղաք, տների պատերի մէջ հրակնատներ պատրաստում եւ, վերջապէս, բարիկադներ կառուցում: Ֆրանսիական հրամանատարութիւնը ոչինչ չձեռնարկեց քէմալականների գործողութիւնների դէմ եւ չօգնեց հայերին դիմակայելու թուրքերին: Դեռ աւելին, 1920 թ. օգոստոսի 19-ին, Սեւրի պայմանագրի կնքումից 9 օր անց, Մերձաւոր Արեւելքի ֆրանսիական զօրքերի գլխաւոր հրամանատար գեներալ Գուրոն, առաջին զօրաբանակի հրամանատար գեներալ Տիֆոն եւ Հայկական լեգէոնի հրամանատար գնդապետ Ֆլի-Սէյնթ Մարին հրաման ստորագրեցին Հայկական լեգէոնը կազմացրելու մասին:

«Լեգէոնի ցրումից յետոյ լեգէոնականների մի զգալի մասը ֆրանսիացիների կողմից զինաթափ արուեց եւ հեռացուեց Կիլիկիայից, իսկ մի մասը չենթարկուելով ֆրանսիացիներին, մնաց եւ մասնակցեց Կիլիկիայի տարբեր քաղաքներում թուրքերի դէմ հայերի մղած հերոսամարտերին:

«Աւարտելով 1916-1920 թթ. ֆրանսիական բանակի կազմում գոյութիւն ունեցած Հայկական լեգէոնի մասին մեր սոյն համառօտ ակնարկը, գալիս ենք այն եզրակացութեան, որ Հայ ազգային պատուիրակութեան եւ Անգլիայի ու Ֆրանսիայի կառավարութիւնների համաձայնությամբ վերոյիշեալ ժամանակամիջոցում ստեղծուած, հիմնականում Մեծ եղեռնից փրկուած հայ կամաւորներից կազմաւորուած շուրջ 5000 անձնակազմ ունեցող հայկական այդ զօրամասը կարեւոր դեր է կատարել Մերձաւոր Արեւելքում դաշնակից երկրների զօրքերի՝ թուրքերի դէմ տարած յաղթանակում:»[26]

Հասարակական ու քաղաքական գործիչ Սարգիս Հացպանեան եւս կը համառօտագրէ հայ լեգէոնականներուն եւ հայկական Կիլիկիայի ողբերգական աւարտը.

«Գնդապետ Է. Բրեմոնին 1918 թ. դեկտեմբերի 25-ին նշանակել էին «Հայաստանի կառավարիչ», սակայն 1919 թ. փետրուարի 1-ին նա Ադանա ժամանեց որպէս «Դաշնակիցների կողմից գրաւուած թշնամի տարածքների» կառավարիչ: Ֆրանսիայի փոփոխուող քաղաքականութեան պատճառով հետզհետէ սկսուեցին տարաբնոյթ սադրանքներ՝ հիասթափեցնելով հայ մարտիկներին, ովքեր լաւ գիտակցելով, որ Կիլիկիայում կենտրոնացող հայութեան բեկորների կեանքի միակ երաշխաւորը իրենք են, դիմանում էին: Կիլիկիան ազատագրող

[26] Անդ, էջ 109-110:

բանակը, որ մինչեւ 1919-ի մայիսի 28-ը կազմուած էր միայն հայկական լեգէոնից, համալրուեց Ալժիրից բերուած մուսուլման զինուորներով: Ֆրանսիացիները փորձում էին հայկական լեգէոնը հնարաւորինս թուլացնել: Իսկ մայիսի վերջին նոյնիսկ մասնակի զօրացրում կատարեցին, երբ իրականում հնարաւոր էր հայ կամաւորների թիւը հասցնել մինչեւ 20 հազար զինուորի: Նախ լեգէոնը հեռացրին հայաշատ քաղաքներից՝ Ադանա-Հալէպ երկաթգծի պաշտպանութեան պատրուակով, իսկ 1919-ի աշնանը, երբ անգլիական զօրքերը լրիւ հեռացան Կիլիկիայից, լեգէոնի երկու ստորաբաժանումներն իրարից բաժանելով՝ մէկը Մարաշում, միւսը՝ Այնթապում տեղակայեցին: 1919-ի վերջերին Կիլիկիայում հայ կեանքը կանոնաւորուած լինելով հանդերձ, վաղուայ օրը առաւել քան անորոշ էր: Որոշակի դարձաւ 1920-ի յունուարի 21-ին, երբ տեղի ունեցաւ Մարաշի յայտնի աղէտը: Մարաշի հայութիւնը լեգէոնականներին ապաւինեց, ամէնուր ստորաբաժանումների կայազօրների գտնուած տեղերը անպաշտպան ժողովրդի կուտակման վայրերի վերածուեցին, իսկ սա նշանակում էր թուրքական յարձակումների կենդանի թիրախներ դառնալ: Լեգէոնը Մարաշի կռիւներում ու մինչեւ Իսլահիէ նահանջում կորցրեց բաւականին մարտիկներ, շատերը վիրաւորուեցին: Զօրացրուած կամաւորներից ոմանք անդամագրուեցին տեղի ինքնապաշտպանութեան խմբերին, եւ նոյնիսկ բանակային կազմակերպուած կառոյցից դուրս շարունակեցին կիլիկեան հողի պաշտպանութիւնը: Մեծ է լեգէոնականների դերակատարութիւնը յատկապէս Սիսի եւ Ուրֆայի ինքնապաշտպանութեան կռիւներում:

«Ֆրանսիան թուրքերի հետ մեծ առեւտուր էր սկսել՝ Օսմանեան կայսրութիւնում իր տնտեսական երբեմնի խոշոր առանձնաշնորհումների վերականգնման դիմաց Կիլիկիան յանձնելով, Սիրիան պահպանելու համար: Կիլիկիայի բոլոր հայաշատ քաղաքներում, Ամանոսեան եւ Տաւրոսեան լեռնաշղթաների երկայնքով մէկ Արարայի խելահեղ ճակատամարտից շատ աւելի ծանր ու արիւնալի մարտերին մասնակցած, կոտորածներից մի կերպ ազատուած հայ տարագիրներից կամաւորական սկզբունքով կազմուած Հայկական լեգէոնը, որը կռուելու էր թուրքերի դէմ եւ դառնալու էր ապագայ հայկական բանակի կորիզը եւ իր արեան գնով Կիլիկիայում Ֆրանսիայի ներկայութիւնն էր ապահովում, Սեւրի դաշնագրի ստորագրումից միայն հաշուած օրեր անց՝ 1920 թ. օգոստոսի 19-ին լուծարուեց: Գրեթէ այդ ժամանակ՝ 1920-ի վերջին եւ 1921-ի սկզբին հայ լեգէոնականները ստիպուած եղան Կիլիկիայից հեռանալ: Մնացածն էլ 1921-ի տարեվերջին ամբողջ կիլիկիահայութեան հետ հեռացաւ: Ճակատագրի հեգնանք էր երեւի՝ Կիլիկիայում մեր վերջին զօրասեան՝ նախ Օսմանեան Թուրքիայի, ապա քէմալական բանակների դէմ ոչ մի տեղ եւ որեւէ պարտութիւն

չկրած Հայկական լեգէոնը, արեւմտահայութեան՝ իր հողի վրայ վառուելով հալուող մոմի յար եւ նմանութեամբ ինքնիրեն մարեց։ Արդարութիւնը պահանջում է, սակայն, որ բարձրաձայնուի այն իրողութիւնը, որ հայ կամաւորականների արեան գնով ազատագրուած Կիլիկիան վերստին թշնամուն թողնելու ողբերգութիւնը իրենց մեղքով չէր։

«Ֆրանսիացի դիւանագէտները միջազգային կոնֆերանսներում սկսել էին անցկացնել իրենց ուրոյն գիծը՝ անջատ համաձայնություններ ձեռք բերելով քէմալականների հետ։ 1919-ի դեկտեմբերին (Մեծ Բրիտանիայից գաղտնի) Սիրիայում եւ Կիլիկիայում Ֆրանսիայի գերագոյն կոմիսար Ժորժ Պիկոյի եւ Մուստաֆա Քէմալի բանակցութիւններում մշակուել էր համաձայնագրի մի նախագիծ, որով Ֆրանսիան, թուրքերին վերադարձնելով Կիլիկիան (ի հակակշիռ Անգլիայի, Իտալիայի եւ Յունաստանի), երաշխաւորելու էր նաեւ նրա անբաժանելիութիւնը։ Պէտք չէ մոռանալ, որ դաշնակից տէրութիւնների Սան Ռեմոյի կոնֆերանսում (1920 թ. ապրիլի 19-26), որտեղ որոշւում էր Օսմանեան կայսրութեան մէջ մտնող տարածքների վերջնական բաժանման հարցը, Ֆրանսիայի ներկայացուցիչները ճամարտակում էին հայերի հանդէպ «դաշնակիցների բարոյական պատասխանատուութեան» մասին։ Ֆրանսիայի վարչապետ Ա. Միլիերանն ու արտգործնախարար Բերտելոն ժխտում էին Կիլիկիայի քրիստոնեաներին սպասող ջարդերի լուրերը։ Սակայն Ֆրանսիան այսքանով չէր բաւարարուել, նրա յաջորդ քայլը, ի վնաս Կիլիկիայի հայերի անվտանգութեան, Անկարայի կառավարութեան հետ 1920-ի մայիսի 28-ի զինադադարի ստորագրումն էր, որը Մուստաֆա Քէմալը որպէս ֆրանսիացիների՝ Ադանայի նահանգից հեռանալու պատրաստակամութիւն էր գնահատել։ Ֆրանսիայի նոր զիջումը բնականաբար խրախուսեց թուրք ազգայնական ուժերին՝ վերսկսելու ջարդարար գործողութիւնները Կիլիկիայի հայ բնակչության դէմ։ Ֆրանսիացիների՝ ամէն գնով թուրքերի հետ համաձայնութեան գալու քաղաքականութիւնը շարունակուեց նաեւ 1920-ի Սեւրի պայմանագրի ստորագրումից յետոյ, որի 88-րդ յօդուածով Թուրքիան Հայաստանը ճանաչում էր որպէս անկախ պետութիւն։ Սակայն դեռ թանաքը չչորացած՝ Ֆրանսիայի պաշտօնական ներկայացուցիչները սկսեցին պահանջել Սեւրի պայմանագրի՝ որպէս «Ֆրանսիայի շահերին խիստ հակասող» փաստաթղթի վերանայումը։ Եւ հէնց ֆրանսիական դիւանագէտների գործողութիւնները յանգեցրին նրան, որ Փարիզի դաշնակցային կոնֆերանսում (1921 թ.) որոշում ընդունուեց Սեւրի պայմանագրի մասնակի փոփոխման եւ միջազգային նոր կոնֆերանս հրաւիրելու մասին։ 1921-ի Լոնդոնի կոնֆերանսում հայ ազգային պատուիրակութեան ղեկավար Պօղոս Նուբարը դիմեց Ֆրանսիայի ներկայացուցչին՝ որպէս «Կիլիկիայի պաշտօնա-

կան հովանաւորի», խնդրելով չլքել հայ բնակչութեանը եւ հասնել Կիլիկիայի համար խառը ոստիկանութեամբ վարչական ինքնավարութեան հաստատման։ Ի պատասխան այդ խնդրանքի, Ֆ. Բերտելոն պատասխանեց, որ «Ֆրանսիան վճռել է անել ինչ կարող է՝ ապահովելու համար լիակատար երաշխիք հայկական փոքրամասնութեանը... Բոլոր դէպքերում Ֆրանսիան կը պահի իր պարտաւորութիւնները, ինչպիսին էլ որ լինեն նրա յարաբերութիւնները Թուրքիայի հետ»։ Իրականում ֆրանսիական դիւանագիտութիւնը առաւելագոյն ջանքեր էր գործադրում Անկարայի կառավարութեան հետ անջատ գործարք կնքելու համար, եւ 1921-ի մարտի 9-ին նրանց միջեւ կայացաւ քաղաքական, ռազմական եւ տնտեսական համագործակցութեան համաձայնութիւն։ Ֆրանս-թուրքական համաձայնութիւնը (որը փաստորէն քէմալականների ձեռքն էր տալիս Կիլիկիայի հայութեան բախտը) մեծ տագնապ առաջ բերեց Կիլիկիայի քրիստոնեայ բնակչութեան մէջ։ 1921-ի ապրիլի 5-ին Փարիզ ուղարկուեց Կիլիկիայի քրիստոնեայ համայնքների ներկայացուցիչների բողոքի հեռագիրը։ Բայց բողոքները բոլորովին չխանգարեցին ֆրանսիական դիւանագիտութեանը՝ շարունակելու յետագայ բանակցութիւնները քէմալականների հետ, որոնք աւարտուեցին 1921-ի թուրք-ֆրանսիական համաձայնագրի ստորագրմամբ։ Քէմալականներն այդ համաձայնագիրն օգտագործեցին Հայկական հարցը Անտանտի տէրութիւնների հետ յետագայ քննարկումից հանելու համար, իսկ տէրութիւններն էլ իրենց հերթին սկսեցին աւելի ու աւելի քիչ զբաղուել դրանով։ 1922 թ. փետրուարին Մեծ Բրիտանիայի վարչապետ Ջ. Քերզոնին ուղղուած նամակում Ֆրանսիայի վարչապետ Պուանկարէն գրում էր. «Թուրքահայաստանի հարցի վերաբերեալ. ես կրկնում եմ, որ դժուար է պահպանել Սեւրի պայմանները, բայց կարծում եմ, որ Հայկական հարցի լուծումը չպէտք է որոնել Կիլիկիայում, որտեղ, եթէ կարելի է այդպէս արտայայտուել, այլեւս հայ չկայ»։ Փաստորէն, ստեղծելով այնպիսի իրադրութիւն, որ հայերը ստիպուած տարագրուեն այլ երկրներ, Ֆրանսիան իր վարչապետի բերանով յայտարարում էր, թէ Կիլիկիայում չի գտնուի անկիւն հայերի համար։ Ի վերջոյ Ֆրանսիայի տնտեսական եւ աշխարհաքաղաքական շահերը կրկին վճռորոշ եղան հայոց վերջին յոյսերի խորտակման հարցում։ Հայկական հարցում Ֆրանսիայի կառավարութեան երեսպաշտ քաղաքականութիւնն իր արտացոլումը գտաւ նաեւ 1922-23-ին Լօզանի կոնֆերանսում, որն աւարտուեց մի պայմանագրի ստորագրմամբ, որտեղ յիշատակութիւն անգամ չկար Հայաստանի մասին։»[27]

---

[27] «Հայկական հարցի լուծումը չպէտք է որոնել Կիլիկիայում, որտեղ այլեւս հայ չկայ», հարցազրոյց Սարգիս Հացպանեանի հետ, հրապարակման պատրաստեց Անահիտ

Արդէն ամէն բան յստակ է։ Ինչպէս Շ. Թորոսեան կը գրէ՝ «Հայկական լեգէոնի ստեղծմամբ բոլորովին այլ նպատակ էր հետապնդում ֆրանսիական կառավարութիւնը։ Չարաշահելով հայերի՝ երիտ-թուրքական կառավարութեան հայաջինջ քաղաքականութեան հետեւանքով կուտակուած ատելութիւնը եւ խաղալով նրանց ազգային զգացմունքների հետ, ֆրանսիական կառավարութիւնը ջանում էր կիլիկահայերին տրուող կեղծ խոստումներով հնարաւորին չափ մեծ թուով հայեր ներգրաւել լեգէոնում։ Այդ բացը լրացնելու միտումով էլ ֆրանսիական կառավարութիւնը որոշում է ստեղծել հայերից ու արաբներից բաղկացած զօրախմբեր՝ լեգէոններ եւ նրանց մասնակից դարձնել Թուրքիայի դէմ մղուող պատերազմին։»[28]

Այսպիսի վախճան կ'ունենայ Կիլիկիոյ հայ բնակչութիւնը։

Արարայի յաղթական ճակատամարտի եւ յետագայ ողբերգական դէպքերուն համար կարելի է զատորոշել մասնակցող-խաղացողներու չորս շերտ.

1. Ֆրանսացիները, որոնք մինչեւ վերջին կաթիլը շահագործեցին հայերը։

2. Քէմալականները՝ որոնք ամէն կերպ աշխատեցան Կիլիկիան վերջնականապէս պարպելու հայերէն եւ ֆրանսացիներու օգնութեամբ հասան իրենց նպատակին։

3. Կիլիկիոյ հետ կապուած հայ քանի մը մեծաւորները (անկարելի է զանոնք առաջնորդ անուանել, քանի որ դէպքերուն բուն առաջնորդողը Ֆրանսան էր)՝ իրենց ցուցաբերած քաղաքական անհաւատալի միամտութեամբ ու անհասութեամբ, որոնք հիմնուելով ֆրանսական բանաւոր «խոստում»-ներուն վրայ եւ միշտ ֆիզիքապէս հեռու մնալով դէպքերու վտանգաւոր դաշտերէն, չփորձեցին (չուզեցին փորձել) վերլուծել իրական գետինի վրայ գործող ուժային յարաբերութիւնները։ Այս հայ մեծաւորները՝ որոնք կ'ակնկալէին Կիլիկիոյ ազատագրումէն ետք ըլլալ երկիրի նախագահները, ոչ մէկ նախապատրաստական աշխատանք տարին մշակելու յետագայ կառավարումի մեթոտներն ու մօտեցումները, ոչ մէկ ծրագիր մշակեցին, ոչ մէկ տարածաշրջանային յարաբերութիւններու հայկական քարտէսներ գծեցին, այն ժամանակ՝ երբ ֆրանսացիներն ու քէմալականները շատոնց արդէն ունէին իրենց յստակ քաղաքական-ռազմական հեռանկարային ծրագիրները։ Հայ մեծաւորները հիմնուեցան իրենց համար de facto ստեղծուելիք երկիրի մը վրայ, յենուելով իրենց մասնակցութեամբ կազմաւորուած բայց իրենցմէ ամբողջապէս անկախ գործող լեգէոնականներու եւ անոնց ղեկավարներու գործողութիւններուն վրայ։

---

Ադամեանը, *Իրատես.am*, 9 Հոկտեմբեր 2015, http://www.irates.am/hy/1444336448։

[28] Շ. Թ. Թորոսեան, նշ. յօդ.ը, էջ 62։

4. Հայ լեգէոնականները՝ դէպքերուն մասնակցած ամենէն գործնապաշտ, անկեղծ, նուիրեալ եւ գաղափարապէս համոզուած անձերը, որոնք միշտ կը գտնուէին կրակի առաջին շարքերը։ Անոնք էին Կիլիկիոյ ազատագրումի իրական առաջամարտիկները։

Այսպէս, Ֆրանսան՝ որ հեռանալով Կիլիկիայէն հայ բնակչութիւնը բացէ ի բաց թողուց քէմալականներու տնօրինութեան տակ, անձամբ պատասխանատու կը դառնայ Կիլիկիոյ վերջին եղեռնին։ Այս նոյն Ֆրանսան է որ այսօր իր խորհրդարաններով ու դատարաններով «կը պաշտպանէ» հայոց ցեղասպանութիւնը, արհեստական պաշտպանութիւն մը՝ որ կը քօղարկէ իր իսկ մասնակցութիւնը հայոց ցեղասպանութեան։

Ֆրանսական Երրորդ Հանրապետութիւնը՝ որ հիմնուած էր Փարիզի Քոմիւնի աճիւնի, աններելի ու ցարդ պաշտօնապէս չդատապարտուած կոտորածներուն վրայ, ոչ մէկ պատճառ ունէր արգիլել Կիլիկիոյ ցեղասպանութիւնը։

## ԱԼՃԵՐԻՈՅ ՊԱՏԵՐԱԶՄԸ 1954-1962

Ութ տարի տեւած ազատագրական պայքարին, ալճերիացի իսլամները տուած են շուրջ վեց հարիւր յիսուն հազար զոհ։

Ալիսթէր Հորն կը փորձէ գտնել զոհուածներուն մօտաւոր քանակը. «Ֆրանսացիները այսպէս կը գնահատեն իսլամներու մահուան քանակը. 141.000 տղամարդ մարտիկներ՝ սպաննուած ապահովութեան ուժերուն կողմէ, Ազգային Ազատագրական Ճակատի (FLN) 12.000 անդամներ՝ սպաննուած ներքին մաքրագործումներու ժամանակ, 16.000 իսլամ քաղաքացիներ՝ սպաննուած ԱԱՃ-ի կողմէ, 50.000 իսլամ քաղաքացիներ՝ առեւանգուած եւ ենթադրաբար սպաննուած ԱԱՃ-ի կողմէ։ Ասոր պէտք է աւելցնել հարքիսի եւ այլ ալճերիացիներու սպանութիւնը 1962-ի ամռան կայացած հաշուեյարդարին, ինչպէս նաեւ թէ՛ ԱԱՃ-էն եւ թէ՛ Ալճերիական Ազգային Շարժումէն (MNA) յաւելեալ 4.300 ալճերիացիներ՝ սպաննուած Մետրոպոլիտ Ֆրանսային մէջ պատերազմի ընթացքին։ Վիրաւորուած իսլամներուն ընդհանուր թիւը կարելի չէ որոշել։ Ըստ Շալլէի Երկրորդ Գրասենեակի նախկին պետ Ժեներալ Ժագէնին, պատերազմէն ետք Պելքասէմ Քրիմ կը հաստատէ՝ թէ ալճերիացիներու զոհերուն ընդհանուր թիւը եղած է 300.000։ Արդարեւ, այսօր Ալճերիան իր զոհերուն համար որդեգրած է մէկ միլիոն կլոր թիւը։ Եթէ հաշուի առնենք նաեւ վիրաւորեալ իսլամները՝ որոնք չդիմանալով իրենց վէրքերուն մահացած են, ֆրանսական

ռմբակոծումներու ընթացքին պատահաբար սպաննուած քաղաքացիները, Ալճերիոյ Մարտ ամսուայ եւ այլ գործողութիւններու ընթացքին խորհրդաւոր կերպով անյայտացածները, եւ սովէ ու անպաշտպանուածութենէ մահացածները (յիշենք՝ որ պատերազմի ժամանակ աւելի քան 1.8 միլիոն իսլամներ տեղահան եղան իրենց տուներէն), հետեւաբար, նոյնիսկ եթէ թիւերը չեն արդարացներ մէկ միլիոնը, անոնք շատ աւելի բարձր պէտք է ըլլան ֆրանսական բանակի կամ Քրիմի հաշուարկումներէն։»[29] Ուրեմն, միջին հաշուով կարելի է նշել 650.000 թիւը։

Մօտաւորապէս նման թիւ մը կ՚առաջարկեն նաեւ Մարթին Ուինտրօու եւ Մայք Չափփէլ. «Իր ճիշդ թիւը անյայտ է։ Շուրջ 25.000 ֆրանսացի զինուորներ պատահաբար կամ հիւանդութեամբ մահացան գործողութիւններու ընթացքին, շուրջ 3.600 եւրոպացի քաղաքացիներ սպաննուեցան կամ անյայտացան եւ նոյն քանակութեամբ իսլամ զինուորներ սպաննուեցան։ Ալճերիացի հայդուկներէն սպաննուեցաւ 155.000 անձ, մինչ բազմաթիւ ուրիշներ մահացան իրենց վէրքերէն։ Տարբեր պատճառներով մահացած իսլամ քաղաքացիներուն քանակը դիւրութեամբ կ՚անցնի 50.000-ը, նոյնիսկ նախքան յետ-հրադադարային վրէժխնդրական արիւնահոսութիւնը՝ որ թողուց նախապէս եղածէն կրկնակի աւելի զոհեր։ Ալճերիացիներու մահուան կապակցութեամբ յաճախ յիշուող մէկ միլիոն թիւը չափազանցում մը կը նկատուի այսօր։ Բայց իրական թիւը հաստատապէս անոր կէսէն աւելի է, որ ինքնին կը ներկայացնէ ըստ բաւականի հրէշային թիւ մը։»[30]

Այս ջարդը մինչեւ այսօր մնացած է անպատիժ ժողովրդավար, մարդասէր եւ հայասէր Ֆրանսայի կողմէ։

## ՌՈՒԱՆՏԱՅԻ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԻՒՆԸ

1994 Ապրիլէն մինչեւ Յուլիս, 800 հազարէն մէկ միլիոն թութցի, ինչպէս նաեւ բնաջնջումի քաղաքականութիւնը մերժող 10-30 հազար հութու կը ցեղասպանուին Ռուանտայի մէջ։ Ինչպէ՞ս ասիկա տեղի ունեցաւ։

Մինչեւ սպիտակ ցեղին ժամանումը, Ռուանտա ինքնաբաւ երկիր մըն էր՝ բարգաւաճ հողագործութեամբ, առատաձեռն հողով, կլիմայական բարենպաստ

---

[29] Alistair Horne, *A Savage War of Peace: Algeria, 1954-1962*, New York: New York Review of Books, 2006, p. 538:

[30] Martin Windrow and Mike Chappell, *The Algerian War 1954-62*, Osprey, 1997, p. 3:

պայմաններով, բնապահպանական մաքրութեամբ: Հակառակ խիտ մարդկային գոյութեան, կարելի էր առատօրէն արտադրել կեանքի գլխաւոր անհրաժեշտութիւնները:[31]

«[Ա]մբողջ երկիրը որոշ չափով կը նմանէր հսկայ, բծախնդրօրէն խնամուած պարտէզի մը», կը գրէ Ժերար Փրիւնիէ:[32]

Ռուանտա հրաշալիօրէն ինքնակազմակերպուած աւատատիրական հասարակութիւն մըն էր, բարձրօրէն զարգացած բանաւոր մշակոյթով: Անարշիւթական հասարակութեան գեղեցիկ նմոյշ մը:

Ռուանտայի բնակչութիւնը կազմուած էր զբաղմունքի առումով բաժնուած երեք խումբերէ՝ հութու, թութցի եւ թուա: Թիմոթի Լոնկման կը բացատրէ այս բաժանումը.

«Մինչդեռ նախագաղութատիրական Ռուանտայի մէջ գործածուած «հութու», «թութցի» եւ «թուա» եզրերուն իմաստները գիտական կարեւոր վիճաբանութեան առարկայ է այսօր, հետազօտողներուն մեծամասնութիւնը համաձայն է թէ այս եզրերը չէին վերաբերիր արդի իմաստով էթնիք խումբերու, քանի որ բոլոր երեք խումբերը կը խօսէին միեւնոյն լեզուն, կը կիրառէին համատեղ կրօնական ծէսեր եւ ցրուած էին նոյն տարածաշրջանին մէջ: Բազմաթիւ ուսումնասիրողներ կը հաստատեն՝ թէ խումբերու միջեւ եղած բաժանումները զբաղմունքային էին, քանզի թութցին կը միտէր աւելի կախում ունենալ եղջերաւոր անասուններուն վրայ, հութուն՝ հողամշակութեան, իսկ թուան՝ որսորդութեան եւ խեցեղէնի վաճառքի: Բայց այս զանազանութիւնը բաւարար չէ բացատրելու եզրերուն իմաստը, քանի որ բազմաթիւ թութցիներ կը զբաղուէին հողամշակութեամբ իսկ բազմաթիւ հութուներ կը պահէին եղջերաւոր անասուններ: Եզրերը կը թուին նախ եւ առաջ արտայայտել կարգավիճակային զանազանութիւն որովհետեւ թութցները կը միտէին տիրել հասարակական եւ քաղաքական նուիրապետութեան: Եզրերուն յարաբերական ճկունութիւնը կը հաստատէ այս եզրակացութիւնը, քանզի հութուներուն այն երեխաները որոնք կը դառնային բաւարար կերպով ուժեղ կը համարուէին թութցիներ եւ կրնային ամուսնանալ թութցիներուն հետ, մինչդեռ այն թութցի ընտանիքները որոնք կը կորսնցնէին իրենց ուժը վերջապէս կը դառնային հութու:»[33]

---

[31] Gérard Prunier, *The Rwanda Crisis: History of a Genocide*, New York: Columbia University Press, 1995, pp. 1-3:

[32] Անդ, էջ 2:

[33] Timothy Longman, *Christianity and Genocide in Rwanda*, Cambridge University Press, 2010b (2009), p. 35:

Կապրիէլ Մոռքա եւս կը հաստատէ նախագաղութատիրացուած Ռուանտայի բնակիչներուն համակեցական գոյութիւնը.

«Արդարեւ, հութուները, թութցիները եւ թուաերը Ռուանտայի մէջ կը խօսին միեւնոյն լեզուն եւ ունին միանման սովորութիւններ ու աւանդոյթներ։ Աւելին, անոնք չեն բաժնուած որոշակի աշխարհագրական սահմաններով։ Հաստատուած է՝ թէ նախա-գաղութատիրական շրջանին, այս խումբերը մէկ ժողովուրդ էին որոնք կը կոչուէին Պանիարուանտա եւ կը խօսէին մէկ լեզու՝ Քինիարուանտա։ Ժամանակի ընթացքին, թութցիները, հութուները եւ թուաերը կը դառնան հասարակապէս եւ քաղաքականապէս աւելի ու աւելի զանազանելի, բայց ոչ թէ ցեղախումբի, տոհմի, լեզուի, սովորութիւններու եւ աւանդութեան հիման վրայ, այլ զբաղմունքի, տնտեսութեան եւ հարստութեան։

«Ինչպէս նախապէս նշուեցաւ, թութցիները աւանդապէս եղջերաւոր անասուններու սեփականատէրեր էին եւ ռազմիկներ, հութուները հողագործներ էին, իսկ թուաերը որսորդներ եւ խեցեգործներ։ [...] [Ե]րեք խումբերն ալ ունին տարբեր պատմական ծագումներ, ակունքներ եւ զբաղմունքներ բայց բոլորն ալ կը կիսեն միեւնոյն սովորութիւնները եւ աւանդոյթը։ Նախա-գաղութատիրական շրջանին, հասարակական կարգավիճակ ձեռք բերելու որոշիչ գործօնն էր հարստութեան տիրացումը։ Արդարեւ, մշակութային արարողութեան միջոցով, հութուները կրնային դիւրութեամբ դառնալ թութցիներ եւ ընդհակառակը։ [...]։

«Հակառակ այս հասարակական կարգադրութեան, նախա-գաղութատիրական շրջանին այս երեք խումբերուն միջեւ տեղի ունեցած են շատ քիչ բախումներ կամ քաղաքացիական պատերազմներ։ Արդարեւ, գաղութատիրական շրջանին կը սկսին ծագիլ լուրջ բախումներ։ Գերմանացիներն ու պելճիքացիները կը քաղաքականացնեն Ռուանտայի մէջ գտնուող հասարակա-քաղաքական եւ տնտեսական տարբերութիւնները իրենց սեփական ռազմավարական շահերուն համար։ Թութցիներու եւ հութուներու միջեւ յարաբերութիւնները ալ աւելի կը բեւեռանան եւ կը սրուին երբ Ա. Համաշխարհային Պատերազմին, գերմանացիներուն պարտութենէն ետք, Քոնկօ-Լէոփոլտվիլ գտնուող պելճիքացիները կը ստանձնեն Ռուանտայի տնօրինութիւնը։ Ժամանակի ընթացքին, ցեղախմբութիւնը կը դառնայ աւելի ու աւելի շեշտուած Ռուանտայի քաղաքականութեան մէջ։»[34]

Սպիտակ մարդը երկիրին բերաւ արեւմուտքի հնարանքներէն մէկը՝ դրամատիրութիւնը։ Ռուանտան կրեց իմփերիալիզմի ամբողջ ծանրութիւնը,

[34] Gabriel Andrew Msoka, *Basic Human Rights and the Humanitarian Crises in Sub-Saharan Africa*, Princenton Theological Monograph Series, 2007, pp. 8-9:

հասնելով մինչեւ Հարտդ-Նեկրիի Կայսրութիւնը: Քանի մը տարուայ ընթացքին անարշիսթական հասարակութիւնը փոխուեցաւ ճնշիչ ու յարձակողական սպառողականի:

Հասկնալու համար, թէ ինչպէս յաջորդաբար գերմանացի, պելճիքացի եւ ֆրանսացի գաղութարարները քանդեցին այդ անարշիզմը՝ բնակչութիւնը հասցնելով մինչեւ Կայսերական բնոյթով ցեղասպանութեան, կարեւոր է պատմութիւնը սկսիլ ամենասկիզբէն:

Սկիզբը կապուած է Նոյի ժառանգորդներուն հետ: Գիրք Ծննդոցը կ'ըսէ.

«Նոյի որդիները՝ որ տապանէն դուրս ելան, Սէմը, Քամը եւ Յափէթն էին. Քամ Քանանի հայրն էր: Այս երեքը Նոյի որդիներն էին, ու ասոնցմէ տարածուեցան ամբողջ երկիրը:

«Նոյ սկսաւ հողագործ ըլլալ. այգի տնկեց, գինիէն խմեց, գինովցաւ եւ իր վրանին մէջ մերկացաւ: Քանանի հայրը՝ Քամ՝ իր հօր մերկութիւնը տեսաւ, ու դուրս ելլելով՝ իր երկու եղբայրներուն պատմեց: Սէմ եւ Յափէթ հանդերձ առին, իրենց երկուքին ուսերուն վրայ դրին, ու դէպի ետեւ երթալով՝ իրենց հօր մերկութիւնը ծածկեցին: Իրենց երեսը ետեւ դարձած ըլլալով՝ իրենց հօր մերկութիւնը չտեսան: Նոյ՝ իր գինովութենէն արթննալով՝ իր պզտիկ որդիին իրեն ըրածը գիտցաւ, եւ ըսաւ. «Անիծեա՛լ ըլլայ Քանան. իր եղբայրներուն ստրուկներուն ստրուկը պիտի ըլլայ:» Նաեւ ըսաւ. «Օրհնեա՜լ ըլլայ Տէրը, Սէմի Աստուածը, ու Քանան անոր ստրուկը ըլլայ: Աստուած թող ընդարձակէ Յափէթը ու Սէմի վրանները բնակի, եւ Քանան անոր ստրուկը ըլլայ:»[35]

Նոյի հանրածանօթ անէծքն է ասիկա: Գաղափարախօսութեամբ պարուրուած անէծք մը, որ երկրորդական ու անտեսանելի կը դարձնէ վերոբերեալ բնագիրի սահմանափակումները: Բնագիրին մէջ ոչ թէ մերկութիւնն է յանցանքը, այլ մերկութիւնը դիտելը, ոչ թէ մերկացողն է յանցաւորը այլ մերկացողին դիտողը:

Նոյ Աստուծոյ ընտրելին էր՝ բարի մարդու տիպարը, իսկ այժմ, ջրհեղեղէն ետք, ի յայտ կու գայ գինեմոլութեան հանդէպ իր ունեցած տկարութիւնը: Պիտի առարկուի թէ Նոյ մարդ մըն էր եւ իւրաքանչիւր մարդկային էակի նման ենթակայ էր թուլութիւններու: Եթէ այսպէս է, ուրեմն ինչո՞ւ միայն Քամի թուլութիւնն է որ յանցագործութիւն պէտք է նկատուի: Թէ ոչ այստեղ ուրիշ խնդիր մը կայ: Ըլլալով ողջ տղամարդկային հասարակութիւն (Նոյ, իր զաւակները, իր զաւակներուն զաւակները), արդե՞օք միասեռական արգիլուած յարաբերութեան դատապարտում մըն է որ կը նախանշէ բնագիրը՝ իբրեւ պատում ունենալով

[35] *Գիրք Ծննդոց*, 9/18-27:

անէծքը, նկատի ունենալով որ մէկ կողմէ կը գտնուի գինովութեան ազդեցութեան տակ անգիտակցաբար մերկացած Նոյ, միւս կողմէ ողջ գիտակցութեամբ այդ մերկութեան հետ յարաբերակցած Քամ:

Բնագրային այս երթեւեկութիւնը, արդարեւ, օրինականութիւն մը կու տայ ապահովելու համար քամեան ժողովուրդներուն ստորադասութիւնը սեմականներուն եւ յաբեթականներուն նկատմամբ, ապահովելով յետագայ մեքենայութիւններու կարելիութիւնները: «Աստուածաշունչը մարդկութեան նախահայրերուն միջեւ ցեղային տարբերութիւններ չի յիշատակեր», կը գրէ Էտիթ Սանտերս եւ կ'աւելցնէ. «Շատ աւելի ուշ է որ ցեղի գաղափարը երեւան կու գայ Նոյի որդիներուն առնչութեամբ, որ կը վերաբերի Քամի շառաւիղին: Բաբելոնեան Թալմուտը՝ հրեաներու բանաւոր աւանդութեան ժողոված մը, կը յայտնուի Զ. դարուն: Ան կը նշէ՝ թէ Քամի ժառանգորդները անիծուած են սեւամորթ ըլլալնուն պատճառով, Քամին կը նկարագրէ իբրեւ մեղաւոր մարդ եւ իր շառաւիղը իբրեւ այլասերուածներ: Այսպէս, սկզբնական աւանդոյթը քամականները կը նոյնացնէ նեկրերուն հետ եւ անոնց կը շնորհէ թէ՛ որոշ դիմագիտական [physiognomical] յատկանիշներ եւ թէ՛ անբաղձալի նկարագիր: Այս հասկացողութիւնը կը շարունակուի Միջին Դարերուն, երբ տակաւին կը կատարուէին Ծննդեան պատմութիւններու ցնորական ռաբբիական ընդարձակումները:»[36]

Իմփերիալիզմի եւ անոր հետ կապուած արեւելապաշտութեան (orientalism) ժամանակ կը փոխուին քամականներուն տրուած եւրոպական մեկնաբանութիւնը: Մահմուտ Մամտանի կը բացատրէ այս փոփոխութեան իմաստը.

«ԺԲ. դարու վերջաւորութեան, գլխիվայր կը շրջուի այն առասպելը թէ նեկրը կը հանդիսանայ Քամի անիծուած շառաւիղը: Քամական վարկածի երկրորդ մարմնաւորումը խթանուած էր 1798-ին Նափոլէոնի Եգիպտոս կատարած արշաւանքով: Լուսաւորութեան մտաւորականներուն հետ միասին Նափոլէոն մեծ սէր ունէր գիտութեան եւ հնութիւններուն նկատմամբ, հետեւաբար արշաւախումբին միանալու հրաւիրեց հնագէտներ եւ ուրիշ գիտնականներ: Իրենց յայտնագործութիւններուն անմիջական ազդեցութիւնը խորապէս պիտի խանգարէր Եւրոպայի տեսակէտը Ափրիկէի նկատմամբ: Նափոլէոնի արշաւախումբին անդամներէն մէկը՝ Վ. Տենոն, կը նկարագրէ եգիպտացիներուն գերիշխող մարմնական յատկանիշները. «լայն, տափակ եւ շատ կարճ քիթ մը, ընդարձակ ու հարթ բերան մը ... հաստ շրթունքներ, եւլն:» Ինչպէ՞ս կրնան Յունաստանն ու

[36] Edith R. Sanders, 'The Hamitic Hypothesis; Its Origin and Functions in Time Perspective', *Journal of African History*, x, 4 (1969), pp. 521-522:

Հռոմը սնած քաղաքակրթութեան արտադրողները ըլլալ սեւ: Ուրիշ ֆրանսացի ճամբորդ մը՝ որ տասը տարի առաջ չորս տարի ապրած էր Եգիպտոս եւ Սուրիա, յայտնի գիրքի մը մէջ նկատած է այս հակասութիւնը. «Որքան զարմանալի է … երբ կը մտածենք՝ թէ ներկայի մեր ստրուկները եւ մեր արհամարհանքի առարկան հանդիսացող նեկրերու ցեղին կը պարտինք մեր արուեստներն ու գիտութիւնները եւ … երբ կը մտաբերենք՝ թէ ինքզինքնին ազատութեան եւ մարդասիրութեան բարեկամներ հռչակող այս պետութիւններուն մէջ արտօնուած է ստրկութեան ամենաբարբարոս տեսակները: Եւ նոյնիսկ խնդիր է թէ նեկրերը հասկնալու տարակարգը որքան կրնայ նմանիլ սպիտակ մարդը հասկնալու տարակարգին:»

«Այս հակասութեան պատասխանը չափազանց պարզ էր. գլխիվայր շրջել Նոյի անէծքը եւ յաւակնիլ թէ քամականները (ներառեալ եգիպտացիները) իրականութեան մէջ սեւ մաշկով կովկասցիներ էին: Փոխանակ նեկրեր ըլլալու, քամականները դիտուեցան իբրեւ նեկրերէն տարբեր, որոնք քաղաքակրթեցին նեկրերը եւ իրենց կարգին փտացան նեկրերուն կողմէ: Ինչքերու այս յատակագիծին մէջ, հին եգիպտացիները համարուեցան քամական՝ ոչ նեկր: Ոչ միայն եգիպտացիները, այլեւ նուպիացիները եւ եթովպիացիները:»[37]

Բնականաբար, այս բաժանումը եւս անբաւարար պիտի ըլլար: Արդարեւ, քամականները տարբերելով նեկրերէն, անոնք չէին կարող հաւասարիլ սպիտակ մարդոց: Մահմուտ Մամտանի մանրամասն կը բացատրէ քամականներու «կովկասացում»-ը եւրոպացիներուն կողմէ, եւ թէ ինչպէս եւրոպացիները անոնց դրութիւնը աստուածաշնչային առասպելէն վերածեցին գիտական վարկածի:[38] ԺԹ. դարու վերջաւորութեան «[ք]ամականներն արդէն վաւերացուած էին իբրեւ Ափրիկէի մեծ «քաղաքակրթողներ»:»[39]

Այս նոր քամականներուն դիմագիծը եւրոպացի գաղութարարները յարմարցուցին թութցիներուն, արտադրելու համար իրենց համար շահագործելի խտրականացուած փոքրամասնութիւն մը, ինչպէս ցոյց կու տայ Մամտանի.

«Քամականներն արդէն դարձան կովկասեան ցեղի ամբողջ ճիւղ մը իսկ թութցիները նկատուեցան բազմաթիւ քամական խումբերէն մէկը: […] Ինչո՞ւ արդեօք քամական վարկածը տասնամեակներ ետք քաղաքական զօրութիւն ստացաւ միայն Ռուանտայի (եւ Պուրունտիի) մէջ եւ ոչ թէ, օրինակ, Պական-

[37] Mahmood Mamdani, *When Victims Become Killers: Colonialism, Nativism, and the Genocide in Rwanda*, New Jersey: Princenton University Press, 2001, p. 82:

[38] Անդ, էջ 82-87:

[39] Անդ, էջ 86:

տայի հետ Ուկանտայի մէջ, Պահիմայի հետ Անքոլի մէջ, Պահումայի հետ Պունիորոյի մէջ, կամ Մասայի հետ Քենիայի եւ Թանկանիիքայի մէջ։ Իմ պատասխանս աւելի քան պարզ է. այն հասկացողութիւնը՝ թէ թութցին մեծամասնութենէն անկախ գոյութիւն ունեցող ցեղ մըն է, միայն Ռուանտայի մէջ էր որ շարք մը հիմնարկներու համար վերածուեցաւ տրամաբանական պատճառաբանութեան, որպէսզի թութցին վերարտադրուի իբրեւ *խտրականացուած* [racialized] փոքրամասնութիւն։ Թութցին խտրականացուեցաւ ոչ միայն գաղափարախօսութեան միջոցով այլ գաղափարախօսութենէն ներշնչուած հիմնարկային շարք մը բարեփոխումներու միջոցով, գաղափարախօսութիւն՝ որուն մէջ մխրճուած էր թութցին եւ որ իր կարգին վերարտադրեց զայն։ Ասիկա Ափրիկէի մէջ թութցին կ'առանձնացնէ այսպէս կոչուած քամականներէն, ինչպէս նաեւ Ռուանտայի մէջ կը խզէ կապը ցեղի եւ գոյնի միջեւ։ [...]

«Ըլլալով թէ՛ գաղափարախօսական եւ թէ՛ հիմնարկային ընթացք մը, թութցիին խտրականացումը արդիւնքն էր գաղութատիրական պետութեան եւ Կաթողիկէ Եկեղեցիին համատեղ նախաձեռնութեան։ Միսիոնէրները հանդիսացան գաղութատիրական Ռուանտայի «առաջին ազգագրագէտներ»-ը։ Իբրեւ այդպիսին, անոնք գաղութատիրութեան առաջին գաղափարախօսներն էին։ Ռուանտայի յետագայ եպիսկոպոս եւ միսիոնէրական քաղաքականութեան գլխաւոր ստեղծող Հայր Լէոն Քլասի համար 1902-ին թութցիններն արդէն «հոյակապ մարդիկ» էին՝ որոնք կը միաձուլէին թէ՛ արիական եւ թէ՛ սեմական յատկանիշներ։ Նոյնն էր նաեւ Հայր Ֆրանսուա Մընարի համար, որ 1917-ին կը գրէ՝ թէ թութցին «եւրոպացի մըն է սեւ մաշկով։» Եթէ 1902-ին եկեղեցին թութցին յայտարարեց իբրեւ «գերագոյն մարդիկ», այս նոյն եկեղեցին 1994-ին պիտի դառնար թութցիի ջարդի գլխաւոր վայրը։

«Գաղութատիրական պետութիւնը սկիզբէն կը դիմէ միսիոնէրական գիտելիքի։ Գաղութականութենէն անմիջապէս ետք, պելճիքական պետութիւնը Սպիտակ Հայրերուն [White Fathers] կը պատուիրէ անդրադառնալ Ռուանտայի մասին։ Նպատակն էր զարգացնել եւ իրագործել «ցեղային քաղաքականութիւն»։ Իբրեւ պատասխան, եկեղեցիի փորձագէտ հայրեր՝ Հայրեր Առնու, Հիւրէլ, Փաժէ եւ Շումաչէր, կը պատրաստեն անթրոփոլիճիք ձեռնարկներ։ Ապա Ռուանտայի Կաթողիկէ Եկեղեցիի պետ Լէոն Քլասի կողմէ կը կազմուի միաւորուած փաստաթուղթ մը, որ կը ներկայացուի կառավարական իշխանութիւններուն։ 1916-ին գրուած այս փաստաթուղթը կ'ունենայ ընթերցանութեան լայն շրջանակ։ Զարմանալի չէ՝ թէ ան ելք մը եղաւ ցեղային մտածողութեան համար, որուն խորապէս գիտակցուած համոզումով կառչեցաւ եկեղեցական նուիրապետութիւնը։ 1925-էն սկսեալ, գաղութատիրական իշխանութեան

համար «ցեղային քաղաքականութիւն»-ը դարձաւ այնպիսի մտահոգութիւն մը, որ գաղութատիրական վարչակարգին տարեկան տեղեկագիրներուն «ցեղային քաղաքականութիւն» անունով գլուխները կը պարունակէին «ցեղ»-ի ընդարձակ նկարագրութիւններ: Այդ ժամանակ, եկեղեցին դարձած էր պետութեան աշխատանքներուն բաղկացուցիչը: 1925-էն սկսեալ, գաղութատիրական տարեկան տեղեկագիրները կը պարունակէին հատուածներ որոնք նուիրուած էին մի միայն Catholic Société Belge de Missions Protestantes au Congo-ի (SBMPC, նախապէս՝ Պերթէլ պատուիրակութիւն), Church Missionary Society-ի (CMS) եւ Adventists պատուիրակութիւններու պետերուն կողմէ գրուած տեղեկագիրներու:

«Պելճիքական կառավարութեան համար մէկ տասնամեակէն քիչ մը աւելի պէտք եղաւ որպէսզի յաջողէր քաղաքակրթական յանձնարարութիւնը թարգմանել հիմնարկային դրոշմի: Այս թարգմանութեան կեդրոնը քամական վարկածն էր: Քինիարուանտա լեզուով համառօտուած իբրեւ Ռիւպանտա Նիամուինշի՝ որ կը նշանակէ մեծամասնութիւն եւ սովորական մարդիկ, պելճիքական իշխանութիւնը քամական ցեղային գերազանցութիւնը գաղափարախօսութենէ վերածեց հիմնարկային իրականութեան, զայն դարձնելով քաղաքական, հասարակական եւ մշակութային յարաբերութիւններուն մէջ տեղի ունեցող փոփոխութեան հիմքը: Ցեղապաշտական գաղափարախօսութեան նեցուկ կանգնող հիմնարկները ստեղծուեցան 1927-1936-ի տասնամեակի ընթացքին: Գլխաւոր հիմնարկները՝ սկսելով կրթութենէն, անցնելով պետական վարչականութենէն, տուրքերէն եւ աւարտելով եկեղեցիէն, կազմակերպուեցան (կամ վերակազմակերպուեցան՝ ըստ պարագայի) այս ինքնութիւններու աշխոյժ ճանաչութեան շուրջ: Բարեկարգութեան կ'ուղեկցէր մարդահամար մը, որ ողջ բնակչութիւնը կը դասակարգէր իբրեւ թութցի, հութու եւ թուա, եւ իւրաքանչիւր անձի կը յանձնէր իր պաշտօնական ինքնութիւնը հռչակող փաստաթուղթ մը:»[40]

Յետագայ էջերուն մէջ, Մահմուտ Մամտանի մանրամասն կը վաւերագրէ հիմնարկային կաղապարները, «որոնց ընդմէջէն թութցիներն ինքզինքնին կը գտնեն հակասական դիրքի մէջ, հութուներուն համեմատութեամբ առանձնաշնորհեալ, բայց եւրոպացիներուն համեմատութեամբ ճնշուած:»[41]

Ինչպէս արդէն Մամտանի ակնարկեց, քրիստոնեայ եկեղեցին եւ միսիոներները լուրջ դեր խաղացին ռուանտական հասարակութեան մէջ սրսկելու ցեղա-

---

[40] Անդ, էջ 87-88:

[41] Անդ, էջ 88:

յին հակամարտական ըմբռնումը։ Էլիզէ Ռութակամպուա կը բացայայտէ հասարակութեան էթնիքականացումին փորձերը հոգեւորականներուն կողմէ.

«Կաթողիկէ միսիոներները բեկանեցին ռուանտական քաղաքացիական հասարակութիւնը՝ արգիլելով բնիկ կրօնական եւ մշակութային աւանդոյթները եւ մարդոց պարտադրելով հրաժարիլ իրենց աշխարհիկ դաւանանքներէն։ Մասնաւորապէս, ներմուծելով երկակի Մանիքեան աշխարհայեացք մը՝ ուր մարդիկ կամ «փրկուած» են եւ կամ «անիծուած», միսիոներները ռուանտական քաղաքացիական հասարակութեան մէջ ստեղծեցին նշանակալի պառակտում։ Նոր կրօնափոխները բաժնուեցան իրենց ընտանիքի չկրօնափոխուած անդամներէն, որուն պատճառով վերացաւ իրենց նախահայրերուն դերը, իսկ նախահայրերը աւանդապէս կը ծառայէին իբրեւ միջսերունդային «սոսինձ», այսինքն՝ իբրեւ միջնորդներ կենդանութեան եւ մահուան միջեւ։ Հետեւաբար, աւանդական եռաբեւեռ հայեացքին փոխարինեց հրեայ-քրիստոնէական երկբեւեռ մտապատկերը՝ բաժնուած Պաքրիսթուներու (քրիստոնեաներ) եւ Պափականի-Պաշենզիներու (հեթանոսներ) միջեւ։ Նոր մկրտուած անդամները (Պաքրիսթուներ) դարձան բնորոշ հասարակական խումբ մը՝ քիչ նմանութիւն ունենալով ոչ-կրօնափոխներուն (Պաշենզիներ) հետ։ Պաքրիսթուները Պափականի-Պաշենզիներէն զանազանող հասարակական տիպաբանութիւնը իրականացաւ նոր կրօնափոխները վերատեղաւորելով ոչ-կրօնափոխներէն հեռու եւ ներմուծելով նոր խորհրդանիշներ ու արարողութիւններ, ինչպէս տէրողորմեաներու կամ կրօնական մետալիոններու կրումը։

«Ինքնութեան այս նոր նախագիծը հիմք ծառայեց ռուանտացիներու նոր հաւաքական յիշողութեան կազմաւորումին, ի վնաս իրենց ինքնութեան։ Ռուանտացիներու մեծամասնութեան մկրտութենէն եւ աւանդական կրօնքին արգելումէն ետք, Պաքրիսթու-Պաշենզի երկակի ինքնութեան նախագիծը կը դառնայ անպատեհ։ Իսկ երբ գաղութատիրութեան հետեւանքով կը յայտնուի նոր եւ ուժեղ էթնիքական գաղափարախօսութիւնը, ան կը ձեւափոխուի հութուներու եւ թութցիներու նոր երկակի ինքնութեան։

«Դժբախտաբար, քարոզչութեամբ զբաղուած միսիոներները օժանդակեցին նաեւ «տրոհել եւ իշխել» գաղութատիրական քաղաքական մարտավարութեան։ Անոնք հաստատեցին հութուներուն, թութցիներուն եւ թուաերուն միջեւ էթնիքական բաժանումները։ Սակայն այս էթնիքական բաժանումը կեղծօրէն ընկալուած էթնիքական գաղափարախօսութիւն մըն էր, որ զանոնք ներկայացուց իբրեւ բացառիկ եւ թշնամի խումբեր։ Ըստ գաղութատիրական այս էթնիքական գաղափարախօսութեան, բոլոր թութցիները ղեկավարներ էին եւ բոլոր հութուները ծառաներ։ Ուստի, ճիշդ այնպէս ինչպէս գաղութատէրերը իրենց

քաղաքական իշխանութիւնը պնդացնելու համար հիմնուեցան թութցի պետերուն վրայ, այնպէս ալ միսիոնէրները իբրեւ քարոզչութեան գործիք ընտրեցին թութցի նուիրապետութիւնը։ Ռուանտական եկեղեցիին աջակցութեամբ, գաղութատիրական ղեկավարութիւնը թութցի նուիրապետութիւնը պաշտօնի կը կոչէ նոր գաղութատիրական ղեկավարութեան մէջ։ Իր կարգին, թութցի վերնախաւը կը ստանայ բազմաթիւ առաւելութիւններ, ներառեալ իր երեխաներուն համար յատուկ կառուցուած սեփական դպրոցներ՝ որոնց նպատակն էր երեխաները նախապատրաստել աշխատելու գաղութատիրական ղեկավարութեան համար։

«Հութուները եւ թութցիները չեն պատկանիր բացառիկ եւ թշնամի էթնիքական խումբերու։ Աւանդական Ռուանտան նշանակալիօրէն տարբեր էր։ Ռուանտական մշակոյթին մէջ անասնապահութիւնը կ'առնչուէր հարստութեան եւ դիրքի հետ։ Հետեւաբար, քանի որ թութցիները ընդհանրապէս անասնապահեր էին եւ հութուները հողագործներ, թութցիներն ունէին աւելի ազդեցութիւն եւ կը տիրէին ղեկավարութեան։ Արդարեւ, մինչ թութցի անասնապահները կը զբաղուէին նաեւ հողագործութեամբ, հութուներու եւ թութցիներու դասակարգումները կը դառնային այնքան տինամիք որ զանոնք կարելի չէր պարզապէս ընկալել իբրեւ ամրացած խումբեր։ Ինչպէս Ռուանտայի մասին գրած բազմաթիւ պատմաբաններ նկատած են, հարուստ հութու մը կրնար դառնալ թութցի եւ աղքատ թութցի մը կրնար դառնալ հութու։ Բաց աստի, տարածուած էր խառն ամուսնութիւնը։ Իրենց միջեւ եղած հասարակական-տնտեսական բաժանումը, ուրեմն, մեծապէս դրդուած էր ռուանտական եկեղեցիի միսիոնէրներուն դիմած էթնիքական մեկնաբանութեններ։»[42]

Միսիոնէրական-քրիստոնէական վտանգաւոր դերակատարութեան մասին ամբողջ հատոր մը յատկացուցած է Թիմոթի Լոնկման, ուր, ի միջի այլոց, կը կարդանք.

«[Մ]իսոնէրները եւ բնիկ քահանաները նոյնպէս Ռուանտայի մէջ կարեւոր դեր խաղացին վերասահմանելու էթնիքականութիւնը։ Միսիոնէրները հութուն, թութցին եւ թուան դիտեցին իբրեւ յստակօրէն տարբեր, միատարր եւ փոխադարձաբար հակառակորդ ցեղային խումբեր, եւ այս սխալ մեկնաբանութիւնը հիմք հանդիսացաւ գաղութատիրական քաղաքականութեան եւ, վերջապէս,

---

[42] S.J. Elisée Rutagambwa, 'The Rwandan Church: The Challenge of Reconciliation', *The Catholic Church and the Nation-State: Comparative Perspectives*, edited by Paul Christopher Manuel, Lawrence C. Reardon, Clyde Wilcox, Washington, D.C.: Georgetown University Press, 2006, pp. 175-176։

կազմաւորեց երկիրի էթնիք ինքնութեան բնոյթը։ Միսիոնէրներու աջակցութիւնը թութցիին՝ ինչպէս սկիզբը ըրին, թէ հութուին՝ ինչպէս շատերը ըրին ուշ գաղութատիրական շրջանին, նախադէպ ստեղծեց եկեղեցիներու աշխոյժ մասնակցութեան էթնիք քաղաքականութեան մէջ։»[43]

Լոնկման կը շարունակէ.

«Քրիստոնեայ միսիոնէրական գործունէութեան առաջին օրերէն սկսեալ, հակամարտութիւն կը ծագի միսիոնէրներու երկու խումբերու միջեւ, որոնցմէ մէկը կը կարծէր թէ քրիստոնէութեան տարածումը լաւագոյն կերպով կարելի է առաջ մղել շնորհիւ եկեղեցիներուն սերտ դաշնակցութեան պետութեան հետ, իսկ միւս խումբը կը կարծէր թէ քրիստոնէական պատգամը եկեղեցիներէն կը պահանջէ դաշնակցիլ աղքատին եւ անտեսուածին հետ։ Այն փաստը՝ որ թէ՛ բողոքական եւ թէ՛ կաթողիկէ եկեղեցիներուն մէջ գերիշխող կը դառնայ առաջին խումբը, վճռորոշ ազդեցութիւն կ'ունենայ քրիստոնէութեան բնոյթին վրայ Ռուանտայի մէջ, ուր, հակառակ հակաճառող ձայներուն, չափանիշը կ'ըլլայ եկեղեցիներուն եւ պետութեան միջեւ սերտ համագործակցութիւնը։ [...]

«Ռուանտա հասնելնէն ի վեր, կաթողիկէ եկեղեցիին առաջնորդները յանձն կ'առնեն դառնալու կարեւոր քաղաքական դերակատարներ։ Անոնք ռուանտական ուժային յարաբերութիւնները կը մեկնաբանեն էթնիքական եզրերով եւ իրենց առաջնային նպատակը կը դնեն վաստակիլ թութցիներուն աջակցութիւնը եւ վերջապէս կրօնափոխել զանոնք։ Այս նպատակին հասնելու համար, անոնք գիտակցաբար խուսափեցան հութուներու զանգուածին շահերը պաշտպանել ընդդէմ թութցի պետերուն եւ այլ թութցիներու, վախնալով որ պետերը զանոնք կ'ընդունին իբրեւ իշխանութեան ձգտող մրցակիցներ։»[44]

Միսիոնէրները մշակեցին ցեղապաշտական յատուկ ծրագիր մը, ինչպէս կը գրէ Լոնկման.

«Իրենց սկզբնական գրութիւններուն մէջ, միսիոնէրները ցոյց տուին թէ իրենք հութուին եւ թութցիին միջեւ բաժանումը կը դիտեն ոչ միայն իբրեւ երկու երկիրներուն մէջ [իմա՝ Պուրունտի եւ Ռուանտա, Հ.Ա.] գոյութիւն ունեցող հիմնական հասարակական բաժանում այլեւ իբրեւ անջատ ցեղային խումբերու միջեւ բաժանում։ Քանի որ անոնք հութուն եւ թութցին կը նկատէին երկու անջատ ցեղեր՝ մէկը քամական եւ միւսը նեկր, միսիոնէրները կը ձախողին ճանչնալ եզրերու գործածութեան տեղական տարբերակները, դասակարգումներու ճկունութիւնը եւ իւրաքանչիւր դասակարգումի մէջ եղած լուրջ

---

[43] Timothy Longman, նշ. աշխ.ը, էջ 27-28։

[44] Անդ, էջ 33։

բաժանումները։ Ռուանտայի եւ Պուրունտիի միջեւ միւս հասարակական բաժանումները մեկնաբանուեցան ցեղապաշտական դիտակի միջոցով, արտադրելով Ռուանտայի հասարակութեան մասին գերպարզեցուած եւ աղաւաղուած ըմբռնում մը։ Միսիոնէրները բոլոր պետերը համարեցին թութցի, մինչդեռ հութուները դիտեցին իբրեւ թութցիներուն ենթակաները՝ «ժողովուրդը», անտեսելով հութու թագաւորութիւններուն հաստատակամութիւնը եւ հութու պետերուն գոյութիւնը նոյն ինքը Ռուանտայի թագաւորութեան մէջ, ինչպէս նաեւ այն բազմաթիւ թութցիները որոնք պետեր չէին, օրինակ՝ հիւսիսային Ռուանտայի աղքատ շրջուն թութցիները։ Նմանապէս, միսիոնէրները անտեսեցին այն փաստը՝ թէ Պուրունտիի մէջ ղեկավարները կ'ընտրուէին Կանուա խումբէն, որ կը համարուէր ոչ հութու եւ ոչ թութցի։ Միսիոնէրները պատկերացուցին՝ թէ յաճախորդային [clientelistic] հիմնարկները, ինչպէս՝ *ուպուհազէ*ն, անխառն կերպով բաժնուած են նաեւ ցեղային սահմանագիծերով։ Միսիոնէրները իրենց վերլուծութեան մէջ չափազանցեցին շահագործումի աստիճանը անտեսելով Ռուանտայի մէջ գոյութիւն ունեցող փոխադարձ կապերը, բազմաթիւ յաճախորդային կարգադրութիւնները եւ յաճախորդային այլազան ձեւերը։ Մէկ խօսքով, ռուանտական հասարակութեան եւ քաղաքական կառուցուածքներուն վերաբերեալ միսիոնէրներուն մեկնաբանութիւնները ազդուած էին քամական վարկածէն, ըստ որուն անոնք թութցիները համարեցին գերադաս ցեղ մը, նուաճողներ՝ որոնք կ'իշխեն նուաճուած հութու զանգուածներուն վրայ։

«Ռուանտական հասարակութեան մասին քահանաներուն կողմէ առաջարկուած մեկնաբանութիւնները ունեցան խոր ազդեցութիւն, քանզի տեղական մշակոյթը բացատրելու համար Ռուանտայի եւ Պուրունտիի քանի մը գերմանացի վարչականները մեծապէս յենուեցան միսիոնէրներուն վրայ։ Սխալ է այն կարծիքը, թէ Ռուանտայի մէջ միսիոնէրները «հնարեցին» էթնիքականութիւնը։ Միսիոնէրները վերցուցին գոյութիւն ունեցող հասարակական դասակարգումները եւ ձեւափոխեցին անոնց իմաստները։ Ռուանտայի մէջ հութուի եւ թութցիի միջեւ բաժանումները դարձան աւելի ու աւելի կարեւոր եւ առ նուազն Ռուապուկիրիի թագաւորութենէն սկսեալ՝ աւելի ու աւելի անհաւասար։ Հութուի եւ թութցիի միջեւ եղած տարբերութեան հաղորդելով ցեղային նշանակութիւն, միսիոնէրները օգնեցին ամրացնել բաժանումը՝ քանի որ ցեղը կը նկատուի անհատական ինքնութեան անշարժ ոլորտը, ինչպէս նաեւ գաղափարախօսական հենք հայթայթեցին հութուները հնարաւորութիւններէ եւ իշխանութենէ զրկելու համար։ Միսիոնէրներուն անձնական գործողութիւն-

ները սրեցին երկու խումբերուն անհաւասարութիւնները եւ նպաստեցին աւել-ցընելու թութցիներուն ուժն ու հեղինակութիւնը ի վնաս հութուներուն։»[45]

Ժան-Մարի Քայիշեմա Ռուանտայի ցեղասպանութիւնը կը տեսնէ անոր նախորդած երկարատեւ մշակութային ցեղասպանութեան մէջ. «Ռուանտայի 1994-ի ցեղասպանութիւնը կարելի դարձած էր նախորդած մշակութային ցեղասպանութեան շնորհիւ։ Ամէն բան կը սկսի գաղութատիրութեան եւ Սպի-տակ Հայրեր միսիոնէրներուն ժամանումով, որոնք Ափրիկէի այս փոքր երկի-րին մէջ ներմուծեցին Արեւմուտքի «ցեղային զառանցանք»-ը։ Ռուանտացի վեր-նախաւերը վերջապէս կը վերայարմարին այս աղէտալի գաղափարախօսու-թեան եւ կը խզեն ազգային համերաշխութիւնները որոնք պահպանուած էին իրենց մշակոյթին միջոցով՝ առասպելներ, ծէսեր, հաւատամքներ, արգելում-ներ, եւլն.։ Հետեւաբար, ոչ մէկ բան կրնար ընդդիմանալ ոճիրներու ոճիրին։»[46]

Քայիշեմայի համաձայն, գաղութարարներն ու քրիստոնեայ միսիոնէրները երկարատեւ ու մշակուած ծրագիր բանեցուցին քանդելու Ռուանտայի հաւա-տալիքն ու առասպելը.

«Սակայն կարելի չէ բաւարար բացատրութիւն գտնել ներկայ Ափրիկէէն անցնող դժբախտութիւններու մեծամասնութեան մասին անտեսելով ցամաքա-մասը կործանած գաղութատիրական-միսիոնէրական ջրհեղեղը։ Պատմութեան այս ահաւոր արկածը քանդեց մշակութային խարիսխը եւ, հետեւաբար, հասա-րակական հաւասարակշռութիւնները եւ ուխտերը որոնք կ'ամրացնէին յարա-բերութիւնները աւանդական համայնքներուն միջեւ։

«Ըստ էութեան, բոլոր մշակոյթներուն մէջ կը գտնուին հիմնադիր առասպել-ներ, որոնց պատումին նպատակն է մատուցանել ժողովուրդի մը սովորաբար հեղինակաւոր արմատները, հաստատել իր ինքնութիւնը ուրիշներու դիմաց եւ ամրացնել միութիւնը։ Ռուանտայի մէջ այս դերը խաղացած են Քիկուայի եւ Կիհանկայի առասպելները եւ ոչինչ կրնար քանդել իրենց ստեղծած ռուանտա-կանութեան կառոյցը բացի անոնց կազմալուծումը գործադրելու անյապաղ պայմանը։»[47]

Քայիշեմա կը մեկնաբանէ առասպելներու բանեցումին կերպը բանաւոր միջավայրին մէջ եւ անոնց տրամախօսային արտադրութիւնը, ապա կը

---

[45] Անդ, էջ 44-45։

[46] Jean-Marie Kayishema, ‘Aux origines du génocide des Tutsi du Rwanda: l'ethnocide culturel’, Catalina Sagarra Martin, *Le génocide des Tutsi Rwanda, 1994: Lectures et écritures*, Canada: Les Presses de l'Université Laval, p. 9:

[47] Անդ, էջ 10։

բացատրէ Քիկուան, Կիհանկան եւ բնիկ հաւատալիքներն ու աւանդոյթները, եզրակացնելով՝ որ «Ռուանտան ունէր ամրապինդ մշակութային խարիսխ մը որ իրեն կ'ապահովէր խաղաղութիւն, ներդաշնակութիւն, եռանդ եւ ուժ։ Պէտք է աւելցնենք ուրիշ տարրեր եւս, ինչպէս՝ միեւնոյն լեզուն, անխտրական բնակութիւնը միեւնոյն տարածութեան վրայ, խումբերու (տակաւին ինքնութեան փաստաթուղթերով չհաստատուած) շարժականութիւնը, դաշինքները՝ ամուսնութեամբ, ընծաներով, Լիանկոմպ հաւատամքին մէջ կիրառուող կնքահայրութեամբ, արիւնի ուխտերով, տնտեսական փոխանակումներով եւ տարբեր առիթներով միմեանց օգնութեամբ, օրինակ՝ *քումպիթ*ը (*ուպուտեհէ*), ինչպէս նաեւ առանց խտրականութեան դիեցումը՝ իբրեւ հասարակական պարտականութիւն, տուներու կառուցումը, գիշերը ճանապարհին մնացած ճամբորդներուն հիւրասիրութիւնը, եւլն.։» Ապա կ'աւելցնէ.

«Աւելորդ չէ կրկնել՝ թէ կարելի չէ յաղթահարել առասպելներու եւ հաւատալիքներու այսպիսի կառոյց մը առանց համբերատար կերպով խափանելու իր հիմքերը եւ, անհրաժեշտութեան պարագային, զանոնք հակադրելու համար ստեղծել բոլորովին նոր հակա-առասպելներ։ Այս դանդաղ կազմալուծումի աշխատանքն է որ պիտի կատարուի Ռուանտայի մէջ, երբեմն անգիտակցաբար, բայց յաճախ քաղաքական-գաղափարախօսական ռազմավարութեան հմուտ հաշուարկումներով։ Եւ քանի որ խրամի աշխատանքը աւելի դիւրին է քան շինութեան աշխատանքը, յիսուն տարի բաւարար էր խորտակելու դարաւոր ստեղծագործութիւնը։

«Գաղութատիրական-միսիոնէրական արկածախնդրութիւնը հասնելով Ռուանտա, իր հետ կը բերէ երկիրի հասարակութեան հանդէպ տարբեր հայեցք մը, ծայրայեղօրէն ծանրակշիռ ցեղապաշտական հայեցք մը՝ որ յետագային պիտի ունենար իր կործանիչ հետեւանքները։ Այս հայեցքէն պիտի առաջ գար ռուանտական ազգին կազմալուծումը՝ իր առասպելներուն, դաւանանքներուն եւ հասարակա-քաղաքական կազմակերպութեան կազմալուծումի համբերատար աշխատանքի ընդմէջէն։ Մէկ խօսքով, իրական մշակութային ցեղասպանութիւն մը։»[48]

Քայիշեմա ցոյց կու տայ, թէ ինչպէս քամականութիւնը՝ որ հրաշալիօրէն տարազաւորուած էր թութցիներուն համար որպէսզի ապահովէր անոնց ցեղային գերադասութիւնը հութուներուն նկատմամբ, դարակէսին կը վերաիմաստաւորուի իբրեւ բացասական իմաստ, որպէսզի այս անգամ հաստատուի հութուներուն գերադասութիւնը։ Ասոր համար գաղութարար-միսիոնէրները

[48] Անդ, էջ 21-22։

նոյնիսկ կը ստեղծեն հութուներուն գերադասութիւնը հաստատող հակա-առասպել մը.

«Գաղութատիրութեան ընթացքին, թութցի ազնուականութիւնը կը հաւատայ քամական առասպելի խաբկանքին եւ պատրաստ կ'ըլլայ ընդունիլ իր բնական գերազանցութիւնը ուրիշներուն նկատմամբ։ Այդ ժամանակուայ գրութիւնները, մասնաւորապէս Քակամէ աբբահօր, կը յարին քամական առասպելին։ Սպիտակներուն ուժեղ եւ անսխալական առասպելը իր ազդեցութիւնը կ'ունենայ ռուանտացիներու հոգիներուն վրայ։

«Սակայն 1950-ականներէն սկսեալ, երբ Ափրիկէն վարակուած էր Պանտէօնկի համաժողովէն (1955) ծնած անկախութիւններու յայտարարութեան տենդով, քամականութիւնը աստիճանաբար կը կորսնցնէ իր հմայքը։ Թութցի վերնախաւը կը գայթակղի Ռուսաստանի եւ այլ համայնավար երկիրներու կողմէ ուժեղօրէն թելադրուող միջազգային ազգայնականութենէն եւ կը պահանջէ Ռուանտայի անկախութիւնը։ Դառնացած Սպիտակ Հայրեր միսիոներները եւ գաղութատէր ղեկավարները կը փոխեն իրենց դաշինքը եւ կը լծուին զարգացնելու պանթու-հութու հակա-առասպել մը։ Քամականին վերագրուող բոլոր դրական վերագրումները կը դառնան թերութիւններ՝ խորամանկ, բռնակալ, ծոյլ, եւլն., մինչդեռ պանթու (հութու) նեկրին նախկին արժեզրկումը իր դիրքը կը զիջի մեծամասնական բարի, համեստ եւ աշխատասէր ժողովուրդին, որ զոհն էր փոքրամասնական թութցիի ֆէոտալիզմին։

«Հութու վերնախաւերը մոլեգին կերպով կ'ընկղմին այս նոր ծուղակին մէջ՝ որ, ճիշդ է, իրենց կը շնորհէ քաղաքական այնպիսի առաւելութիւններ որոնք նախապէս արգիլուած էին գաղութատիրութեան կողմէ։ Ուրեմն, այս նոր առաջնորդները կէտ առ կէտ կը տիրանան կոպինեան [ցեղապաշտական, Հ.Ա.] թէզերուն եւ կը վերափոխեն զանոնք։ Քամական թութցին այլեւս կը դադրի քաղաքակրթութեան կրողը ըլլալէ եւ կը վերածուի դաժան եւ օտար զաւթիչի՝ որ եկած է խլելու Ռուանտայի բուն բնակիչներուն հողերը։ Իբր հետեւանք, այս ինքնակոչը պէտք է ընդունի ապրիլ իբրեւ երկրորդ կարգի քաղաքացի կամ պէտք է վերադառնայ իր տեղը՝ Եթովպիա, ամենակարճ ճանապարհով, այսինքն՝ Նիապարոնկօ գէտով (իբրեւ դիակ)։

«Ուրեմն կը սկսի ռուանտական հասարակութեան ցեղապաշտական մատակարարումը, նախ 1961-ին MDR-Parmehutu-ի կողմէ եւ ապա MRND-ի [Ազգային Հանրապետական Շարժում Ժողովրդավարութեան եւ Զարգացումի համար, Հ.Ա.] եւ ուրիշ CDR-երու [Դաշնակցութիւն Հանրապետութեան Պաշտպանութեան համար, Հ.Ա.] կողմէ։ Ասիկա պիտի երկարէր շուրջ 40 տարի, երկարատեւ գողգոթայի ճամբայ մը բանալով թութցիներուն համար՝

ընդգրկելով ջարդեր, աքսորներ եւ բազմաթիւ այլ նուաստացումներ, որոնց ցանկը շատ երկար է այստեղ նշելու համար։ 1994-ի ցեղասպանութիւնը այս ճանապարհին թագադրութիւնն է։

«Հետեւաբար, ցեղասպանութիւնը կարելի դարձաւ երիտասարդներուն մօտ յառաջացած գաղափարախօսական գրոհի շնորհիւ։ Եթէ 1959-ին՝ երբ տեղի ունեցաւ թութցիներուն ջարդը, ցեղասպանութիւնը կարելի չէր, քանզի հասարակական-մշակութային պատնէշները տակաւին ամբողջապէս չէին քանդըւած, 1994-ի ցեղասպանութիւնը գործադրող երիտասարդները արդէն ոչ մէկ գաղափար ունէին հութուներու եւ թութցիներու միջեւ գոյութիւն ունեցած աւանդական յարաբերութիւններուն մասին։ Անոնք գիտէին այն ինչ իրենց սորվեցուցած էր քաղաքական ատելութեան երկար քարոզչութիւնը։ Անոնք կը նմանէին շուներու՝ որոնք կանգնած էին ատելու եւ սպաննելու համար։»[49]

Լինտա Մելվերն կը թուարկէ պելճիքացիներուն գործադրած յատուկ մեքանիզմները՝ որոնց նպատակն էր խարխլել թութցի-հութու հակամարտութիւնը.

«Իրականութեան մէջ պատահածը այն էր՝ որ գերմանացիներուն վարած անուղղակի կառավարութեան քաղաքականութիւնը պելճիքացիները աստիճանաբար փոխեցին ուղղակի կառավարութեան։ Յետագայ տարիներուն պելճիքացի վարչականները քայքայեցին թագաւորին իշխանութիւնը։ 1922-ին թագաւորը ստիպուած էր իբրեւ օգնականներ ընդունիլ գաղութատիրական կեցութիւն ունեցող պելճիքացի ներկայացուցիչներ իսկ 1923-ին իրաւունք չունէր շրջանային պետեր նշանակել։ 1931 Նոյեմբերին, պելճիքացի վարչականները գահընկէց կ'ընեն Մուսամի Մուսինկա թագաւորը՝ իր հակագաղութատիրական դիրքին համար։ Ազգերու Լիկան շատ մեղմօրէն կ'առարկէ։ Թագաւորին կը փոխարինէ իր ամենէն զիջողական զաւակներէն մէկը՝ Մութարա Ռուտահիկվա։ Ռուտահիկվա կը հռչակուի իբրեւ սպիտակներու թագաւորը։ Ան կը հագուի արեւմտեան տարազներ եւ կը վարէ իր սեփական ինքնաշարժը։ 1943-ի իր կրօնափոխութիւնը դէպի քրիստոնէութիւն մաս կը կազմէր զանգուածային կրօնափոխութիւնը քաջալերելու պելճիքական քաղաքականութեան։ Քրիստոնէութիւնը նախապայման կը դառնայ թութցի վերնախաւի անդամը ըլլալու համար։

«Պելճիքա կը միջամտէ նաեւ տեղական վարչութեան մէջ։ Երկրորդ Համաշխարհային Պատերազմին Ռուանտա բաժնուած էր նուիրապետական կազմակերպութիւններու [chiefdoms] որոնք կ'առնչուէին հասարակութեան իւրաքան-

[49] Անդ, էջ 27-28։

չիւր ոլորտին։ Կը ներմուծուին դրամն ու կրթութիւնը, թէեւ վերջինս վերապահուած էր պետերու [chiefs] զաւակներուն։

«Պելճիքական կառավարութիւնը ռուանտական վարչականութեան մէջ կը ստեղծէ թութցի օլիկարքիի անդամներէն կազմուած ափրիկեան քաղաքացիական ծառայութիւն մը։ Պելճիքական իշխանութիւնը դաժան էր, եւ մինչ կ'ամրապնդուէր պելճիքական իշխանութիւնը, հարիւր հազարաւոր հութու գիւղացիներ կը փախչէին դէպի դրացի Ուկանտա, դառնալով գաղթական բանուորներ։ Գաղութատիրական կառավարութիւնը կ'օգտագործէր իւրաքանչիւր բլուրի վրայ գտնուող պետերը, որպէսզի իրենց միջոցով կարենար հութու զանգուածներէն պահանջել բռնի աշխատանք, մասնաւորապէս ճանապարհի շինութեան համար։ Յօգուտ գաղութատիրական ղեկավարներուն տնօրինուեցաւ ամէնօրեայ ծեծ ու մարմնական պատիժ։ Բռնի աշխատանքը սովորական էր եւ խստօրէն հարկադրուած։ Պետերը ուղղակի հսկողութեան տակ էին պելճիքացի գաղութատէր ղեկավարի մը, որ որոշ տարածքի մը պատասխանատուն էր։

«1933-ին պելճիքական կառավարութիւնը մարդահամար կը կազմակերպէ եւ պելճիքացի վարչականներու խումբեր ողջ բնակչութիւնը կը դասակարգեն իբրեւ հութու կամ թութցի կամ թուա։ Իւրաքանչիւր ռուանտացի կը թուագրուի եւ կը չափագրուի՝ հասակը, քիթին լայնքը, աչքերուն ձեւը։ Իւրաքանչիւրը կը դասակարգուի՝ թութցիները աւելի բարձրահասակ, հութուները աւելի կարճահասակ ու լայն, հակառակ որ բազմաթիւ ռուանտացիներու համար կարելի չէր էթնիքականութիւնը սահմանել մարմնական տեսքի հիման վրայ։ Հիւսիսի ռուանտացիները ընդհանուր առմամբ խառն արմատներ ունէին իսկ խառն արմատներով ռուանտացիներուն մեծամասնութիւնը դասակարգուեցաւ իբրեւ հութու, թէեւ անոնցմէ շատերը բնորոշ կերպով կը նմանէին թութցիներուն՝ բարձրահասակ եւ նիհար։ Հիւսիսը խառն ամուսնութիւնները հազուադէպ էին։ Որոշ մարդոց տրուեցաւ թութցիի փաստաթուղթ որովհետեւ ուրիշներէ աւելի դրամ ունէին կամ ունէին կովերու անհրաժեշտ քանակը։ Իւրաքանչիւր Ռուանտացի կը դասակարգուի եւ կը ստանայ ինքնութեան փաստաթուղթ։ Նկատի ունենալով քրիստոնեայ պարտադիր կրօնափոխութիւնը, թութցի միապետութիւնը սկիզբը դէմ կանգնեցաւ միսիոնէրական դպրոցներու հիմնադրութեան։ Բայց 1946-ին Մութարա թագաւորին կը համոզեն Ռուանտան նուիրել Քրիստոս Արքային։ Տեղի կ'ունենայ երեքօրեայ տօնակատարութիւն։ Ամէնուրեք Ռուանտայի մէջ կը տարածուին կաթողիկէ պատուիրակութիւնները։ Կրթութեան շնորհիւ հասարակութեան բաժանումները դարձան աւելի շեշտուած։ Վարչական ուսուցումի համար բացուած դպրոցները (Groupe Scolaire-ը

Աստրիտայի (այժմ՝ Պութարէ) մէջ) գլխաւորաբար թութցի վերնախաւին համար էին, արտադրելով գիւղատնտեսագէտներ, բժիշկներ եւ անասնաբուժեր։ 1945-1954-ին, 447 ուսանողներէն միայն տասնըվեցը հութու էին։ Կրթութիւն ստանալ կարողացած հութու ուսանողներուն մեծամասնութիւնը աշխատանք գտնելու նուազ հնարաւորութիւն ունէր, իսկ անոնք որոնք վերջ ի վերջոյ միսիոներական դպրոցներէն եւ ճեմարաններէն շրջանաւարտ կ՚ըլլային, կը ստանձնէին վարչական ցած պաշտօններ կամ կը դառնային արհեստաւորներ ու խանութպաններ։ Հութու կիներուն կտրականապէս արգիլուած էր կրթութիւնը։»[50]

Դէպքերը կը շարունակուին ողբերգական հետեւանքներով.

- 1950-ականներու վերջաւորութեան կը կազմուին Ռուանտայի առաջին քաղաքական կուսակցութիւնները՝ հիմնուած էթնիք կառուցուածքի վրայ. Parti du Movement de l’Emancipation Hutu (Parmehutu)՝ որուն համար թութցիական գաղութատիրութեան վերացումը աւելի առաջնային էր քան պելճիքական գաղութատիրութեան, եւ Union National Rwandaise (UNAR), որ թութցիական կուսակցութիւն մըն էր՝ թագաւորամէտ եւ հակա-պելճիքական։

- 1959 Յուլիս 24-ին Ռուանտայի 46-ամեայ թութցի թագաւոր Մութարա Գ. Ռուտահիկուա կը մահանայ կասկածելի պայմաններու մէջ։ Թութցիները կը մեղադրեն պելճիքացիներն ու հութուները։

- 1960 Յունիս-Յուլիսին տեղի կ՚ունենայ առաջին համայնական ընտրութիւնները, ուր, ինչպէս կ՚ակնկալուէր, մեծամասնութիւն կը կազմէ Parmehutu կուսակցութիւնը։ UNAR ընտրութիւնները կը յայտարարէ զեղծուած եւ հութուներու յաղթանակին պատճառը կը համարէ պելճիքացիներուն աջակցութիւնը։

- 1959 Նոյեմբեր 1-ին UNAR-ի մարտիկները կը յարձակին հութու առաջնորդ Տոմինիք Մպոնիումութուայի վրայ։ Կը տարածուի խառն կատաղութիւն, հութուները կը յարձակին թութցիներուն վրայ, բազմաթիւ թութցիներ կը փախչին երկիրէն։ Արդիւնքը՝ շուրջ 200 զոհ։

- 1960 Յունիսին թութցի թագաւոր Քիկելի Ե. վերջնականապէս կը թողու երկիրը։

- 1960 Յունիսին տասնեակ հազարաւոր թութցիներ պարտադրաբար կ՚աքսորուին դրացի երկիրներ։

- 1961 Յունուարին հութու Կրեկուար Քայիպանտա կը կազմակերպէ զանգուածային հանրահաւաք մը, ուր քուէարկութիւն կը կատարուի ի նպաստ

---

[50] Linda Melvern, *A People Betrayed: The Role of the West in Rwanda’s Genocide*, London, New York: Zed Books Ltd., 2007g (2000), pp. 10-11:

թագաւորութեան (թութցի) վերացումին: Ռուանտա կը յայտարարուի հանրապետութիւն:

- 1961 Սեպտեմբերին Քայիպանտա պելճիքացիներուն օգնութեամբ արդէն կազմած էր ազդեցութեան ցանցեր որով 1961-ի խորհրդարանական ընտրութիւններուն Քայիպանտայի Parmehutu կուսակցութիւնը կ'ունենայ մեծ յաղթանակ: UNAR կը հակաճառէ: Բռնութիւն թութցիներուն դէմ եւ զանգուածային նոր արտագաղթ:

- 1962 Փետրուարին 135 հազար թութցի գաղթականներ կը գտնուէին դրացի երկիրները: Կը բանտարկուին UNAR-ի առաջնորդները եւ թութցիները կը վտարուին քաղաքական ու հանրային ոլորտէն:

- 1962 Յուլիս 1-ին Քայիպանտա հանդիսաւոր արարողութեամբ կը յայտարարուի նախագահ: Թութցի թագաւորական բռնատիրութիւնը կը փոխարինուի հութու հանրապետական բռնատիրութեամբ: Պելճիքան անկախութիւն կը «շնորհէ» Ռուանտային:

- Քանի մը տարուայ արիեստական հակամարտութեան զոհ կ'ըլլայ երկու հազար մարդ:

- Աքսորուած թագաւորը Քամփալայի (Ուկանտա) մէջ կոչ կ'ուղղէ կազմել ազգային միասնութեան կառավարութիւն մը:

- Քամփալայի մէջ թագաւորամէտ անձեր՝ հաւաքելով 1500 գաղթականներ, կը կազմեն Ինիենզի գաղտնի կազմակերպութիւն մը: 1963 Նոյեմբեր 14-ին այս կազմակերպութիւնը կը յարձակի Ռուանտայի վրայ: Պելքճիքացի սպաներուն կողմէ հրամանատարուած Gendarme National Rwandaise կը հակաճառէ անոնց: Քայիպանտա կ'ոչնչացնէ ներքին ընդդիմութիւնը, կը կազմակերպէ թութցիներու սարսափելի կոտորած: Չորս օր շարունակ Քայիպանտայի մարդիկ կը կոտորեն թութցիները: Կը զոհուի 5000 մարդ: 6000 թութցի նոր գաղթականներ կը յայտնուին Ուկանտայի մէջ: Ոմանք այս կոտորածը նոյնիսկ կ'անուանեն Ողջակիզում:

- 1962-ին, Ռուանտա-Պուրունտի գաղութատիրական միացեալ տարածութիւնը կը քայքայուի եւ Պուրունտի կը ստանայ իր անկախութիւնը՝ փոքրամասնական թութցիները իշխելով մեծամասնական հութուներուն: 1972 Ապրիլին Պուրունտիի մէջ տեղի կ'ունենայ հութուներու ձախողած յեղաշրջում մը, որուն կը յաջորդէ 200,000 հութուներու կոտորումը եւ նոյնքան անձերու գաղթը դէպի Ռուանտա: Ռուանտայի նախագահ Կրեկուար Քայիպանտա առիթէն կ'օգտուի յաւելեալ ճնշումներ բանեցնելու բնիկ թութցիներուն վրայ եւ սրելու խտրականութիւնը:

- Տարածուած հակա-թութցիական արշաւի պատասխանատուներէն մէկն էր բանակի ղեկավար՝ մայոր Ժուվենալ Հապիարիմանա։ 1973 Յուլիսին, ոչ-արիւնալի յեղաշրջումով Հապիարիմանա կը վտարէ Քայիպանտան եւ ինքզինք կը յայտարարէ նախագահ։[51]

1973-ի յեղաշրջումով պետութեան գլուխը անցած Հապիարիմանա շուտով դարձաւ բռնակալ մը, երկիրը վերածեց միապետութեան եւ վարեց թութցիներուն նկատմամբ խիստ անբարենպաստ քաղաքականութիւն։ «Հութու մեծամասնութիւնը ունէր աշխատանքներու գրեթէ լրիւ մենատիրութիւն։ Դաժանօրէն կ'ամրապնդուի «խտրականութեան» համակարգ մը, ուր նոյնիսկ դպրոցի մէջ հութու եւ թութցի երեխաները կը պահուէին իրարմէ հեռու, վստահ ըլլալու համար որ միայն հութուները յետագային ընդունակ ըլլան ձեռք բերել կառավարական կամ մասնագիտական պաշտօն», կը գրէ Անտրու Ուալլիս։[52]

Իսկ Լինտա Մելվերն կու տայ հետեւեալ տեղեկութիւնները.

«Խստօրէն վերահսկուած այս հասարակութեան մէջ թութցիները մեկուսացուած էին։ Քայիպանտայի մասնաբաժնային համակարգը կը պահպանուի Հապիարիմանայի կողմէ, ըստ որուն թութցիներու լոկ որոշ տոկոս մը իրաւունք ունէր դպրոց եւ համալսարան յաճախել։ 19 նախարարէ կազմուած վարչակարգին մէջ կար մէկ թութցի, արտաքին ծառայութեան մէջ՝ մէկ դեսպան, ազգային խորհրդարանի 70 աթոռներուն մէջ՝ երկու պատգամաւոր, եւ իշխող կուսակցութեան կեդրոնական յանձնախումբին մէջ՝ երկու անդամ։ Բանակին մէջ թութցիները զրկուած էին դառնալ սպաներ եւ զինուորներուն արգիլուած էր ամուսնանալ թութցիներուն հետ։

«Վարչակարգին կողմէ երբեք լրջօրէն չէ քննարկուած երկիրէն դուրս ապրող ռուանտացի փախստականներու երաշխաւորութեան խնդիրը, որոնք խոյս տուած են Ռուանտայէն 1957-ին սկսած հակա-թութցի արշաւներուն ժամանակ, ժամանակաշրջան մը՝ զոր կարգ մը ռուանտացի պատմաբաններ անուանեցին «ընկերային յեղափոխութիւն»։ Այս աքսորեալ ռուանտացիները ստեղծեցին Ափրիկէի քանակապէս ամենամեծ փախստականներու խնդիրը։ Պաղեստինցիներուն նման, անոնք մնացին առանց քաղաքացիութեան։»[53]

Հապիարիմանայի նախագահութեամբ աստիճանաբար կ'ամրանայ Ֆրանսայի ազդեցութիւնը Ռուանտայի վրայ։ Ժերար Փրիւնիէ կը գրէ. «Անցեալ

---

[51] Անդ, էջ 13-22։

[52] Andrew Wallis, *Silent Accomplice: The Untold Story of France's Role in Rwandan Genocide*, London, New York: I.B. Tauris & Co Ltd, 2007b, էջ 18։

[53] Linda Melvern, նշ. աշխ.ը, էջ 25։

տասնհինգ տարիներու ընթացքին [իմա՝ 1975-էն սկսեալ, Հ. Ա.], Ռուանտայի մէջ իբրեւ խնամակալ ուժ Պելճիքային փոխարինեց Ֆրանսան, քանի որ վերջինս Ռուանտային երաշխաւորեց ֆինանսական ու յատկապէս ռազմական այնպիսի աջակցութիւններ՝ որոնց անկարող էր Պելճիքան։ 1975-ին Փարիզը Քիկալիի հետ կը ստորագրէ ռազմական համագործակցութեան եւ մարզումի համաձայնութիւն մը (բայց ոչ պաշտպանական համաձայնութիւն մը, բան մը որ 1990 Հոկտեմբերի ֆրանսական զաւթումը դրաւ անօրէն գետինի վրայ) եւ կանոնաւոր կերպով աւելցուց իր տնտեսական օգնութիւնը։ Ֆրանսան Ռուանտայի մէջ կը տեղադրէ աւելի քան 400 *coopérant*-ներ, իսկ 1990-ին զարգացումի համար իր տրամադրած 37.2 միլիոն ամերիկեան տոլլարի նպաստը կը զիջէր միայն Պելճիքային։»[54]

Ֆրանսայի դիրքաւորումի մասին կը նշէ նաեւ Ալիսոն տէ Ֆորժ.

«Հապիարիմանային թիկունք կանգնելու պատրաստակամութեան հիմքերը շատ աւելի ընդարձակ էին քան անձնական յարաբերութիւնները։ Բազմաթիւ ֆրանսացի քաղաքական գործիչներու նման, Միթերան կը հաւատար որ Ֆրանսան՝ եթէ երբեւէ կ'ուզէ որեւէ դիրքաւորում ունենալ միջազգային թատերաբեմին վրայ, պէտք է շարունակէ ուժեղ կապեր մշակել ափրիկեան դաշնակիցներուն հետ։ Իբրեւ սկզբունք, այս դաշնակիցները ֆրանսախօս էին։ Ասոնց մէջ Ռուանտան մասնայատուկ կարգավիճակ ունէր որովհետեւ ան նախկին ֆրանսական գաղութ մը չէր եղած, այլ դաշնակից մը որ վաստակուած էր Պելճիքայէն՝ իր հին գաղութարար տիրոջմէ։»[55]

1980-ին, Ուկանտա գտնուող ռուանտացի փախստականներ Քամփալայի (Ուկանտայի մայրաքաղաք) մէջ կը հիմնեն Ազգային Միութեան Ռուանտական Դաշնակցութիւնը (Rwandese Alliance for National Unity)։ Սկզբնական շրջանի իր նպատակն էր խորհրդակցիլ աքսորեալները Ռուանտա վերադարձնելու հարցը։ «RANA գլխաւորապէս մտաւորականներու կազմակերպութիւն մըն էր, որ ընդարձակ տեղ կու տար բանավէճի, վիճաբանութեան եւ ներկայացուցչականութեան», կը գրէ Մահմուտ Մամտանի։[56] Յետագային ան կը վերաճի զինեալ խումբի՝ Ռուանտայի Հայրենասիրական Ճակատ (Rwanda Patriotic Front)։ ՌՀՃ-ը 1990 Հոկտեմբեր 1-ին կը յարձակի Ռուանտայի վրայ։ Պատերազմին սկիզբը

[54] Gérard Prunier, նշ. աշխ.ը, էջ 89։

[55] Alison Des Forges, *"Leave None to Tell the Story": Genocide in Rwanda*, New York, Washington, London, Brussels: Human Rights Watch, March 1999, p. 150։

[56] Mahmood Mamdani, նշ. աշխ.ը, էջ 166։

ՌՀՃ-ի առաջնորդ Ֆրէտ Ռուիկիէմա կը մահանայ, որուն կը յաջորդէ հանրայայտ Փօլ Քակամէ՝ Ռուանտայի ներկայ նախագահը։

Յստակ է, որ ՌՀՃ-ը «ազգայնական» նպատակներէ դրդուած ռազմախումբ մը չէր բնաւ։ Մահմուտ Մամտանի կը գրէ. «Ռուանտայի Հայրենասիրական Ճակատի 1990 Հոկտեմբերի յարձակումը տեղի ունեցաւ Ռուանտայի մէջ կատարուող ներքին բարեփոխումներու, եւ ոչ թէ ճնշումի, ժամանակ։ Այդ ժամանակ յառաջացեալ փուլի մը հասած էին Ուկանտայի եւ Ռուանտայի միջեւ բանակցութիւնները, որոնք նկատի ունէին ռուանտական քաղաքացիութիւն պահանջելու փախստականներուն իրաւունքը։ Ուկանտա գտնուող Ռուանտացի փախստականներու ճամբարին մէջ անկախ հետազօտութիւն մը պիտի կատարուէր՝ գիտնալու համար Ռուանտա վերադառնալ փափաքողներուն քանակը, ինչպէս նաեւ ռուանտական քաղաքացիութիւն հայցող բայց Ուկանտայի մէջ ապրիլ նախընտրողներուն քանակը։ ՌՀՃ-ի յարձակումէն ընդամէնը երեք օր առաջ՝ 1990 Սեպտեբեր 28-ին, նախագահ Ժուվենալ Հապիարիմանա դիմեց ՄԱԿ-ի Ընդհանուր Ժողովին Նիւ Եորքի մէջ եւ յայտարարեց փախստականներուն նկատմամբ երկու գլխաւոր արտօնութիւններ՝ Ռուանտայի կողմէ քաղաքացիական եւ ճամբորդական փաստաթուղթերու շնորհումը բոլոր անոնց, որոնք իրենց ապաստարան երկիրներուն մէջ քաղաքացիութիւն չեն ցանկար, եւ վերադառնալ փափաքողներուն հայրենադարձումը։»[57]

Էտուարտ Հերման եւ Տէյվիտ Փեթերսոն ունին իրենց բացատրութիւնը.

«Ընդունելու համար «Ցեղասպանութեան» օրինաչափ տիպարը, պէտք է անտեսել հութուներուն լայնածաւալ սպանութիւնը եւ էթնիքական մաքրագործումը, զորս կատարեց ՌՀՃ-ը 1994 Ապրիլ-Յուլիս ժամանակաշրջանէն շատ առաջ, երբ 1990 Հոկտեմբեր 1-ին ուկանտական ուժերը՝ նախագահ (եւ բռնապետ) Եոուերի Մուսեւենիի հրամանատարութեամբ, սկսան արշաւել Ռուանտայի վրայ։ Սկիզբը ՌՀՃ-ը ուկանտական բանակի ճիւղ մըն էր, իսկ ՌՀՃ-ի առաջնորդը՝ Փօլ Քակամէ, 1980-ականներուն ծառայած էր իբրեւ ուկանտական ռազմական գաղտնի սպասարկութեան տնօրէն։ Ուկանտական արշաւանքը եւ անոր հետեւող մարտը «քաղաքացիական պատերազմ» մը չէր այլ *յարձակումի* յստակ դէպք մը։ Բայց եւ այնպէս կշտամբանքի կամ աջակցութեան դադարեցումի ոչ մէկ նշոյլ երեւաց Միացեալ Նահանգներու կամ Բրիտանիայի կողմէ, եւ ի հակադրութիւն ընդամէնը երկու ամիս առաջ կատարուած Իրաքի արշաւանքին Քուէյթի վրայ՝ երբ Անվտանգութեան Խորհուրդը [Security Council] անմիջական պահանջեց Իրաքէն հեռացնել իր զօրքերը, Խորհուրդը մինչեւ 1993

[57] Անդ, էջ 159։

Մարտ ոչ մէկ վերաբերմունք ցուցաբերեց Ռուանտայի վրայ Ուկանտայի արշաւանքին վերաբերեալ եւ մինչեւ 1993 Յունիսի վերջը նոյնիսկ արտօնութիւն չտուաւ առաքել դիտորդական պատուիրակութիւնը (UNOMUR)։ Մինչ այդ, ՌՀՃ-ը գրաւած էր հիւսիսային Ռուանտայի մեծամասնութիւնը եւ վռնտած հազարաւոր հութու հողագործներ։

«Յստակ է՝ որ Մուսեւենի եւ ՌՀՃ կը ծառայէին ԱՄՆ-ի շահերը, մինչ նախագահ Հապիարիմանայի կառավարութիւնը թիրախուած էր պաշտօնաթող ըլլալու։ ՄԱԿ-ի Անվտանգութեան Խորհուրդի անգործունակութիւնը բխած էր այս քաղաքական կողմնակցութենէն։ Գնահատելով Ափրիկէի մէջ ԱՄՆ-ի շահերը ներկայացնելու համար իր անցուցած տարիները, նախկին պետքարտուղարի օգնական Հերման Քոհէն կը բարձրացնէ այն հարցը, թէ ինչո՞ւ 1990 Հոկտեմբեր 1-ին, իր անուանումով՝ «ճգնաժամի առաջին օրերուն», ԱՄՆ-ը «ինքնաբերաբար չդիմեց դիւանագիտական տարբերակին՝ մերժելով Ուկանտայի նախագահ Մուսեւենիին տեղեկացնել, թէ կտրականապէս անընդունելի է Ռուանտայի նուաճումը Ուկանտայի բանակի զգեստաւորուած անդամներուն կողմէ եւ թէ Միացեալ Նահանգներու եւ Ուկանտայի միջեւ բարի յարաբերութիւնները կրնան շարունակուիլ միայն ՌՀՃ-ը սահմանէն այս կողմ վերադարձնելու պարագային։» Ասիկա միամիտ բայց բացայայտիչ հարցում մըն է։ Նոյն առումով կարելի է հարցնել նաեւ՝ թէ ինչո՞ւ Միացեալ Նահանգները լռպպիական արշաւ մղեց Ռուանտայէն հեռացնելու ՄԱԿ-ի ուժերը, ճիշդ այն ժամանակ երբ 1994 Ապրիլին «ցեղասպանութիւն»-ը ընթացքի մէջ էր։ Երկու հարցումներուն պատասխանը նոյնն է. ուկանտական բանակը եւ ՌՀՃ-ը կը կատարէին Միացեալ Նահանգներուն ցանկութիւնը Ռուանտայի մէջ։

«Միացեալ Նահանգները եւ իր դաշնակիցները 1990-ականներուն սկիզբը լրջօրէն աշխատեցան տկարացնելու Ռուանտայի կառավարութիւնը, ստիպելով անոր հրաժարիլ 1959-ի հասարակական յեղափոխութեան բազմաթիւ տնտեսական եւ հասարակական ձեռքբերումներէն, հետեւաբար Հապիարիմանայի կառավարութիւնը դարձնելով նուազ սիրուած եւ օգնելով ամրացնել թութցի փոքրամասնութեան տնտեսական ուժը։»[58]

Միւս կողմէն, Ֆրանսա ազդեցիկ կերպով թիկունք պիտի կանգնէր իր պաշտպանեալին՝ Հապիարիմանային, եւ հզօրագոյն կերպով զինէր ռուանտական զօրքը։

---

[58] Edward S. Herman and David Peterson, *The Politics of Genocide*, New York: Monthly Review Press, 2010, pp. 53-54։

Ինչո՞ւ Ռուանտան այդքան կարեւոր է Ֆրանսայի համար։ Նախ կը գտնուի ֆրանքոֆոնիի հարցը իբրեւ նոր-գաղութացումի կարեւոր միջոց, ինչպէս ցոյց կու տայ Անտրու Ուալլիս.

«1980-ականներու վերջաւորութեան եւ 1990-ականներու սկիզբը Ֆրանսայի զինուած միջամտութիւնը Ռուանտայի մէջ կը հանդիսանար Փարիզի կողմէ կատարուած փորձ մը նախ եւ առաջ անվթար պահելու իր նախասիրած ֆրանքոֆոնին։ Այս փորձը կ'ախտանշէր ցամաքամասին մէջ Փարիզի 30 տարուայ ռազմական միջամտութիւնը։ Հակառակ Ֆրանսային «յաճախորդ» համարուող ափրիկեան կառավարութիւններուն դրսեւորած մարդկային իրաւունքներու ահռելի չարաշահումներուն, Ֆրանսան շարունակեց նեցուկ կանգնիլ բռնակալներուն եւ վարչակարգերուն, որոնց վարած մարդասպան քաղաքականութիւնները իրենց սեփական ժողովուրդին հանդէպ հիմնաւորապէս փաստագրուած են։ Այս քաղաքականութեան շարունակականութիւնը նոյնքան ապշեցուցիչ է որքան իր յարատեւութիւնը նախագահներ տը Կօլի, Փոմփիտուի, Ժիսքար տ'Էսթէնի եւ Միթերանի ընդմէջէն, վերապրելով փոփոխուող ժամանակներ, արժէքներ եւ համաշխարհային քաղաքականութիւններ։»[59] Այլեւ «Ռուանտայի ողբերգութեան մէջ, Փարիզ կը վախնար ոչ միայն կորսնցնել յաճախորդ կառավարութիւն մը որուն հետ կարելի էր գործարք կնքել, այլ փոխարինուիլ նախագծային մրցակիցներու ամենէն անարգականով՝ '*les anglais*'-ով [անգլիացիներ]։ Այն մտահոգութիւնը թէ ֆրանսական Ափրիկէն մշտական սպառնալիքի տակ էր անգլօ-սաքսոններուն կողմէ՝ որոնք իրենց ազդեցութեան տարածութիւնը կ'ընդարձակեն Եթովպիայէն մինչեւ Հարաւային Ափրիկէ, դարձած է գրեթէ ախտաբանական։»[60]

Ֆրանքոֆոնին եւ ֆրանսական շահերը նոյնական են՝ առաջինը կը ծառայէ երկրորդին։ Տանիելա Քրոսլաք կը բացատրէ.

«Ֆրանսայի ներգրաւումը Ռուանտայի մէջ նշանաւորուած էր ֆրանսական եւ ռուանտական իշխանութիւններուն միջեւ սերտ յարաբերութեամբ։ Իբրեւ ֆրանքոֆոնի խմբաւորումին մաս կազմող պետութիւն, Ռուանտան կարեւոր դաշնակից կը հանդիսանար հետապնդելու ֆրանքոֆոնիին (այսինքն՝ ֆրանսական) շահերը Միջին Ափրիկէի մէջ։ Հետեւաբար, ըստ ռազմական համագործակցութեան պայմանագրութեան, անսպասելի չէր որ ֆրանսացի նախագահ Ֆրանսուա Միթերան առանց վարանելու օգնէր Ռուանտայի վարչակարգը ընդդէմ ապստամբ յարձակումի մը։

---

[59] Andrew Wallis, նշ. աշխ.ը, էջ 11։

[60] Անդ, էջ 12։

«Սառ Պատերազմի աւարտէն ետք, Ֆրանսան նոր ուղղութիւն մը կ'որդեգրէ իր ափրիկեան քաղաքականութեան համար, ուր օգնութիւն մատակարարելու (ենթադրաբար) համար պայման կը դնէ ժողովրդավարութիւնը։ Քաղաքացիական պատերազմի կիզակէտին, Ռուանտայի կառավարութիւնը քաղաքական եւ ռազմական օգնութեան շարունակականութիւնը ապահովելու համար 1990 Յունուարին կը սկսի ժողովրդավարութեան ընթացք մը։ Երբ 1990 Հոկտեմբեր 1-ին Ռուանտայի Հայրենասիրական Ճակատը (RPF) կը յարձակի Ռուանտայի վրայ, Փարիզ կ'ընդլայնէ բանակը, ոստիկանութիւնը եւ Նախագահական Պահակախումբը (ցեղասպանութեան յետագայ յանցագործները) մարզելու եւ անոնց նեցուկ կանգնելու նախապէս սահմանափակ ռազմական համագործակցութեան ծրագիրը։ Ֆրանսա թէ՛ քաղաքականապէս եւ թէ՛ ռազմականապէս կը դառնայ Ռուանտայի ամենակարեւոր դաշնակիցը Ճակատին դէմ կռուելու համար։»[61]

Լինտա Մելվերն եւս առաջ կը բերէ ֆրանքոֆոնիի եւ անգլիականութեան հարցը. «Ռուանտա մաս կը կազմէր ֆրանքոֆոնի ընտանիքին, որ կը ներկայացնէր իրարու հետ կապուած պետութիւններու խումբ մը՝ կոչուած պահպանելու եւ խրախուսելու ֆրանսերէն լեզուն։ Ֆրանսերէն լեզուի եւ մշակոյթի այս սեւեռունութեան հետ սերտօրէն կապուած էր Ֆրանսայի վախը Ափրիկէի մէջ անգլիախօս ներխուժումէն, որ սնուցուած էր ցամաքամասին մէջ անգլօ-ֆրանսական դարաւոր հակամարտութեամբ։ Ռուանտան կարեւոր էր ոչ միայն ֆրանսերէնը իր երկրորդ լեզուն ըլլալուն պատճառով, այլ որովհետեւ Ռուանտան կը գտնուէր ֆրանսախօս եւ անգլիախօս արեւելեան Ափրիկէի սահմանագիծին։ Սառ Պատերազմի աւարտէն ետք այս բաժանումները կեանքի նոր կոչում կը ստանան։ Ֆրանսան օտար ռազմական ուժային մեծ միջնորդ մըն էր Ափրիկէի մէջ։ Ռուանտայի դրացին էր Զաիրը՝ ընդարձակ հարստութիւններու տէր հսկայ երկիր մը, իսկ Ռուանտան, Պուրունտին եւ Զաիրը բոլորն ալ կը պատկանէին ֆրանքօ-ափրիկեան ընտանիքին։»[62]

Բացի ֆրանքոֆոնիի ուղղակի շահոյթներէն, կը գտնուի Ռուանտայի միջոցով շրջակայ տարածաշրջաններուն վրայ վերահսկելու հանգամանքը։ Ալիսոն տէ Ֆորժ կը հաստատէ այս կէտը՝ երբ կը գրէ, թէ «ֆրանսացի քաղաքական գործիչները Ռուանտային թիկունք կանգնեցան որպէսզի ամուր յենավայր ունենան Զաիրի հնարաւոր ճգնաժամին հետ առնչուելու համար։ 1993

[61] Daniela Kroslak, *The Role of France in the Rwandan Genocide*, London: C. Hurst & Co. Ltd, 2007, p. 3:

[62] Linda Melvern, նշ. աշխ.ը, էջ 24:

Յունուարին, ֆինանսական բաժանմունքի տեղեկագիր մը կ'եզրակացնէ՝ թէ «նկատի առնելով Զաիրի հնարաւոր փլուզումի վտանգը, Ռուանտա կը մնայ քաղաքական եւ տնտեսական ազդեցութեան կարեւոր բեւեռ մը տարածաշրջանին մէջ։»[63]

Զաիր՝ որ 1997-ին կը վերանուանուի Քոնկոյի Ժողովրդավարական Հանրապետութիւն (ՔԺՀ), իր արեւելեան կողմով սահմանամերձ է Ռուանտայի։ Իսկ ՔԺՀ-ի արեւելքը հարուստ է հւրայատուկ հանքանիւթերով։ «Անցեալ 15 տարիներուն [իմա՝ 1990-ականներու երկրորդ կէսին, Հ.Ա.], Քոնկոյի Ժողովրդավարական Հանրապետութիւնը բջիջային հեռաձայնի արդիւնաբերութեան համար բնական հումքերու գլխաւոր աղբիւր մը եղած է», կը գրէ Ֆրանք Փուլսըն։[64] ՔԺՀ-ի արեւելեան տարածքը կը գտնուին Coltan հանքաքարերը, «որոնցմէ կ'արդիւնահանեն tantalum եւ niobium մետաղները, որոնք զանազան գործածութիւններ ունին թեքնոլոճիք յառաջացեալ արտադրանքներու մէջ, մասնաւորապէս քամերաներու, բջիջային հեռաձայններու եւ այլ խտացած [compact] ելեկտրոնային սարքաւորումներու մէջ գործածուող բարձր թանձրութեամբ խտարաններու [capacitors] մէջ։»[65]

Ռուանտայի Հայրենասիրական Ճակատի յարձակումին իբր պատասխան, 1990 Հոկտեմբեր 4-ին ֆրանսական զօրքը անձամբ կը կատարէ ռազմական գործողութիւն մը Opération Noroît անունով։ Թէեւ Միթերանի վարչակարգին պաշտօնական յայտարարութիւնը Ռուանտա գտնուող ֆրանսացիներուն պաշտպանութիւնն էր, բայց ան իրականութեան մէջ ՌՀՃ-ին դէմ կատարուած ռազմական գործողութիւն մըն էր։ Հոկտեմբեր 5-ին ֆրանսացիները կը վերականգնեն Ռուանտական Զինուած Ուժերը (Forces armées rwandaises), որմէ 1992-ին կը ծնի հութու աշխարհազօրայիններու Իմփուզամուկամպի խումբը եւ ապա 1994-ին հութու ռազմականացուած Ինթերահամուէ կազմակերպութիւնը։ Տեղի կ'ունենան հութու-թութցի ահռելի բախումներ, պատճառելով սարսափելի զոհեր ու մարդկային ողբերգութիւններ եւ ուղղակիօրէն առաջնորդելով դէպի 1994-ի ցեղասպանութիւնը։

---

[63] Alison Des Forges, նշ. աշխ.ը, էջ 152։

[64] Frank Piasecki Poulsen, 'Children of the Congo Who Risk Their Lives to Supply our Mobile Phones', 7 December 2012, *The Guardian*, https://www.theguardian.com/sustainable-business/blog/congo-child-labour-mobile-minerals:

[65] Ewan Sutherland, *The Connection Between Your Mobile Phone and Human Rights Abuses in Africa*, 11 April 2011, Social Science Electronic Publishing, p. 3, http://papers.ssrn.com/sol3/papers.cfm?abstract_id=1752822:

«Ռազմական առումով, շնորհիւ Էլիզէի բարձրագոյն շրջանակներէն արձակուած ուղղակի հրահանգներուն, Ռուանտայի մէջ մուտք կը գործէ մեծաքանակ զէնք ու ռազմամթերք», կը գրէ Ժերար Փրիւնիէ:[66] Փրիւնիէ կը շարունակէ. «1992 Մարտին, ֆրանսական կառավարութիւնը Եգիպտոսէն դէպի Ռուանտա փոխադրուող զէնքը կ'ապահովագրէ Crédit Lyonnais ազգայնացուած պանքային միջոցով: Ներգրաւուած ընդհանուր գումարը կը կազմէր 6 միլիոն ամերիկեան տոլլար: Տարեվերջին, ֆրանսական գործակալները հանդէս եկան իբրեւ միջնորդներ որպէսզի դիւրացնեն 5.9 միլիոն ամերիկեան տոլլար արժողութեամբ զէնքի մատակարարութեան պայմանագիրի մը ստորագրութիւնը Հարաւային Ափրիկէի հետ: Ֆրանսա ներգրաւուած էր ոչ միայն զէնքերու առաքումով, այլ իրական գործողութիւններով: Իրականութեան մէջ, ֆրանսական բանակի ամբողջական վերահսկողութեան տակ կը գտնուէին հակաապստամբային գործողութիւնները: Ֆրանսական ռազմական առաքելութեան փոխգնդապետ Շոլլէ հանրային ուշադրութեան կեդրոնը կը դառնայ երբ մամուլին ձեռքը կ'անցնի ռուանտական կառավարութեան նամակ մը՝ որ իրեն կու տար գործողութիւններու ընդհանուր հրամանատարութիւնը: Այս բացայայտումին պատճառով ան պարզապէս պահ մը կ'անյայտանայ, որմէ ետք Ռուանտական Զինուած Ուժերուն հրամանատարութիւնը կը փոխանցէ իր աջ բազուկին՝ փոխգնդապետ Մօրէնին:»[67]

Մինչեւ ցեղասպանութիւնը, Ֆրանսան Ռուանտային կը տրամադրէ մեծաքանակ արդիական զէնքեր, ինչպէս կը նշէ Անտրու Ուալլիս.

«1990-94-ի ժամանակաշրջանին, Ֆրանսան Ռուանտայի կառավարական բանակը կը սպառազինէ մատչելի ամենէն արդիական զէնքերով: Ափրիկէի քաղաքացիական պատերազմները յաճախ կը կատարուին հին ռուսական կամ արեւելեան եւրոպական պահեստային եւ աժան զէնքերով, բայց Ֆրանսան իր դաշնակիցներուն կ'ապահովէ Կազելլա ուղղաթիռներ, ծանր հրասանդեր, ռատարային սարքեր, Միլան հրթիռներ, Փանհարտ թանքեր եւ զրահաւորուած փոխադրամիջոցներ, ինչպէս նաեւ այլազան փոքր զէնքեր: Արդարեւ, ֆրանսացիները ռազմուժը պէտք է ֆինանսաւորէին եւ առաքէին FAR-ին [Ռուանտայի Զինեալ Ուժեր, Հ.Ա.], եւ ապա բարդ զէնքերը գործածելու համար մարզէին մեծապէս անշահագրգիռ եւ անընդունակ բանակ մը:»[68]

---

[66] Gérard Prunier, նշ. աշխ.ը, էջ 148:

[67] Անդ, էջ 148-149:

[68] Andrew Wallis, նշ. աշխ.ը, էջ 29-30:

Ալիսոն տէ Ֆորժ կը խօսի ֆրանսական մարզումներուն մասին. «Բացի քաղաքական ու բարոյական հաստատուն աջակցութենէ, Ֆրանսան Ռուանտային տուաւ աւելի անյապաղ գործնական օգնութիւն՝ զինուորներու զօրաբաժին մը 1990 Հոկտեմբերին եւ ամրակայումներ ճգնաժամի ուշ շրջաններուն։ Թէեւ ֆրանսական իշխանութիւնները ընդհանրապէս կը պնդեն՝ թէ ընդամէնը 600 զինուոր կը գտնուէր Ռուանտայի մէջ, իրականութեան մէջ անոնք շրջան մը պահած են 1100 զինուոր։ Զօրքերը բաղկացած էին երկու խումբէ, որոնցմէ մէկը կը կոչուէր Նորուա՝ որ ենթադրաբար այնտեղ կը գտնուէր ֆրանսացի քաղաքացիները պաշտպանելու համար, իսկ միւսը կը հանդիսանար ռուանտացի զինուորները «մարզելու» համար նախատեսուած ռազմական աջակցութեան առաքելութիւն մը։ «Ֆրանսացի քաղաքացիներու պաշտպանութիւն»-ը ծածկոց մըն էր, քանի որ ընդամէնը քանի մը հարիւր ֆրանսացիներ կը գտնուէին այնտեղ, մինչդեռ մարզումը իրական էր։ Մինչ ռուանտական բանակին քանակը նուազ քան 10 հազարէն աճեցաւ աւելի քան 30 հազար զինուորի, ֆրանսացին կարեւոր դեր խաղաց մարզելու թէ՛ մարտիկները եւ թէ՛ զինուորները, որոնք իրենց կարգին պիտի դաստիարակէին ուրիշները։ Ֆրանսական մարզում ունեցող այս զինուորներէն ոմանք իրենց գիտելիքը փոխանցեցին Ինթերահամուէ եւ Իմփուզամուկամպի ռազմախումբերուն։»[69]

Շնորհիւ ֆրանքոֆոնիի ուժեղ պաշտպան Պութրոս Պութրոս-Ղալիի, Ռուանտայի կառավարութիւնը կը յաջողի նաեւ Եգիպտոսէն ստանալ որոշ քանակութեամբ զէնք։ Ի տարբերութիւն Ֆրանսայէն, ըստ երեւոյթին Եգիպտոս քաղաքական շարժառիթ չունէր Ռուանտային զէնք ուղարկելու։ Բայց, ինչպէս պիտի յստակուի, Պութրոս-Ղալի ունէր շարժառիթ, թէեւ հիմնականապէս անձնական։

Լինտա Մելվերն իր ձեռքի տակ ունի Եգիպտոս-Ռուանտա զէնքի գործարքի բոլոր փաստաթուղթերուն պատճէնները, որոնց բնագիրները Ռուանտայի ցեղասպանութենէն ետք անհետացան Գահիրէի Ռուանտայի դեսպանատունէն։[70] Ան կը պատմէ գործարքին ամբողջ ընթացքը.

«Երկուշաբթի, 16 Օգոստոս 1990-ին, Ռուանտայի դեսպանը Եգիպտոսի մէջ՝ Սելեսթին Քապանտա, Գահիրէի Արտաքին Գործոց Նախարարութիւն կ'երթայ հաւաքոյթի համար։ Եօթը տարի Եգիպտոս մերժած էր զէնք վաճառել Ռուանտային։ Բայց այժմ յաւելեալ հրատապութիւն կար։

---

[69] Alison Des Forges, նշ. աշխ.ը, էջ 152-153։

[70] Linda Melvern, նշ. աշխ.ը, էջ 37, Ծնթգր. 19։

«Քապանայի այդ օրուայ հաւաքոյթը Տր. Պութրոս Պութրոս-Ղալիի հետ էր, որ ՄԱԿ-ի վեցերորդ Ընդհանուր Քարտուղար դառնալու համար իր ընտրելարշաւը չէր սկսած տակաւին։ Այդ ժամանակ անյայտ փրոֆեսիոնէլ դիւանագէտ մըն էր, փաստաբան մը եւ միջազգային օրէնքի եւ քաղաքագիտութեան մասին գիրքերու եւ յօդուածներու հեղինակ։ Ան արտաքին գործերու հարցերով նախարարն էր եւ վերջերս օգնած էր վերահսկել Հապիարիմայի պետական այցելութիւնը Գահիրէ։ Քապանտա կ'ըսէ թէ ամէն գնով պէտք ունի Պութրոս-Ղալիի օգնութիւնը եւ իրեն կը յանձնէ զէնքերու ցանկ մը։ Եգիպտոս վաճառքի համար ունէր զանգուածային արտադրութեամբ աժան զէնք։ Եգիպտոսէն զէնք գնել՝ իր արտադրական ցած ծախսերով, ցոյց տուաւ մրցակցային առաւելութիւն։ Քապանա Պութրոս-Ղալիէն կը խնդրէ միջամտել եգիպտական կառավարութեան ի նպաստ Ռուանտայի, բացատրելով որ Պելճիքայի ռազմական օգնութիւնը վերջերս ջնջուեցաւ։ [...]

«Տասներկու օր ետք, Հոկտեմբեր 28-ին, Ռուանտայի եւ Եգիպտոսի միջեւ կը կնքուի զէնքի առաջին պայմանագիրը՝ 5.889 միլիոն տոլլար արժողութեամբ։»[71]

Մելվերն մանրամասն կը թուէ գնուած զէնքերուն տեսակները եւ առաքումի միջոցներն ու զանազան փուլերը՝ իւրաքանչիւրը իր գումարներով եւ թուականներով։[72] Ան կ'աւելցնէ.

«Յայտնի չէ եթէ նախագահ Մուպարաք իրազեկ էր զէնքի գործարքի մանրամասնութիւններուն թէ ոչ բայց իբրեւ բարեացակամութեան քայլ Ռուանտային նուիրեց երկու դաշտային հիւանդակառքեր [ambulances], որոնք յետագային առաքուեցան նաւով։ Կրնայ ըլլալ այլապէս ուրիշ ճնշումներ եղած են Եգիպտոսի վրայ Ռուանտային զէնք ծախելու համար։ Բայց յետագային Քապանտա շնորհակալագիր կ'ուղարկէ Պութրոս-Ղալիին գրելով. «Ձեր անձնական միջամտութիւնը նպաստեց իրագործել պայմանագիրը։ Ձեզի կը յայտնեմ իմ անկեղծ շնորհակալութիւններս։» Քապանտա հետեւեալը կը գրէ իր արտաքին գործերու նախարար Քազիմիր Պիզիմունկուին. «Պութրոս-Ղալիի անձնական միջամտութիւնը իր պաշտպանութեան նախարարութեան գործընկերներուն հետ որոշիչ գործօն հանդիսացաւ իրականացնելու զէնքի պայմանագիրը քանի որ ան մօտէն կը հետեւէր մեր սահմաններու իրադարձութիւններուն։»[73]

1991-ին Պութրոս-Ղալի կը սկսի իր քարոզարշաւը ՄԱԿ-ի ընդհանուր քարտուղարի պաշտօնին համար։ Ան Ֆրանսայի եւ ֆրանքոֆոնիի ընտրեալ

[71] Անդ, էջ 31։

[72] Անդ, էջ 31-32, 65-66։

[73] Անդ, էջ 32։

թեկնածուն էր, առաւել արաբական լիկային։ 1992 Յունուար 1-ին կը ստանձնէ իր նոր պաշտօնը։ 1994-ի Ռուանտայի ցեղասպանութիւնը արգիլելու համար ոչ մէկ լուրջ քայլ կը նախաձեռնէ եւ ոչ ալ կը փորձէ զօրահաւաքել հանրային կարծիքը։ Հաւատարմաբար կը ծառայէ ՄԱԿ-ի «միջազգային համայնք»-ի շահերուն։

Իսկ «[յ]ետագային, երբ հարցազրոյցի մը ընթացքին Պութրոս-Ղալիին հարցուցին զէնքերու վաճառքին մասին, ան իր դերակատարութիւնը նկարագրեց իբրեւ «խթանող»։ Ըսաւ՝ թէ ինք արտաքին գործերու նախարար էր եւ իր պաշտօնն էր ծախել իր երկիրի զէնքերու արտադրութիւնը, թէ նոյն քայլին պիտի դիմէր Եգիպտոսէն զէնք ուզող որեւէ կառավարութեան հետ։ Եգիպտական զէնքերը աժան էին եւ եգիպտացիները կը հպարտանային առաքումի արագութեան համար։ Պութրոս-Ղալի ըսաւ՝ թէ Քապանտան իրեն դիմեց որովհետեւ եգիպտական կառավարութեան մէջ ոչ մէկուն կը ճանչնար։ Այն հարցումին՝ թէ որքան ողջամտութիւն է զէնքերու վաճառք կարգադրել մինչ միջազգային խաղաղութեան ուժերը ընթացքի մէջ էին, Պութրոս-Ղալի կը պատասխանէ՝ թէ ինք չի կարծեր որ «քանի մը հազար հրացան կրնար փոխել կացութիւնը»։»[74]

Այլեւս, այս բոլորէն ետք, 1994 Ապրիլ-Յուլիսի ցեղասպանութիւնը շատոնց կանխատեսելի իրադարձութիւն մը պէտք է ըլլար։ Ռուանտայի մէջ հութուները կը ցեղասպանեն մէկ միլիոնէն քիչ մը նուազ թութցիներ, ինչպէս նաեւ բնաջնջումի քաղաքականութիւնը մերժող 10-30 հազար հութուներ։ Կը վերանայ թութցի բնակչութեան 70%-ը եւ Ռուանտայի ընդհանուր բնակչութեան 20%-ը։ Ափրիկէի ամենախիտ բնակչութիւնը ունեցող փոքրիկ երկիրին մէջ պարապ տարածութիւններ կը բացուին զբաղուելու սպառողականութեամբ, հիմնելու սպառողական կէտեր եւ աւելի հանգիստ կերպով տեղակայել գաղութատիրական զօրքերը։

Ֆրանսան կատարելապէս իրազեկ էր կատարուող ցեղասպանութեան մասին։ Տանիելա Քրուլաք կը գրէ.

«Ֆրանսական կառավարութեան պատասխանատուութիւնը կարելի է գնահատել երեք նիւթերու յարակցութեամբ՝ իրազեկութիւն, ներգրաւում, կարողութիւն։ Ո՞ր աստիճան Ֆրանսան իրազեկ էր ցեղասպանութեան նախապատրաստութեան մասին կամ, ցեղասպանութեան ընթացքին, անոր իրականացումին մասին։ Ո՞ր աստիճան ֆրանսական իշխանութիւնները ներգրաւուած էին նեցուկ կանգնելու այն վարչակարգին՝ որ նախ պատրաստեց եւ ապա գործադրեց ցեղասպանութիւնը։ Եւ ի՞նչ էին ֆրանսական կառավարու-

[74] Անդ, էջ 32-33։

թեան որեւէ եղանակով, կերպարանքով կամ ձեւով միջամտելու *կարողութիւնները*, որպէսզի արգիլէր կամ դադրեցնէր ցեղասպանութիւնը:

«Ռուանտայի մէջ 1990-1994-ին Ֆրանսայի խաղացած դերին մասին ներկայացնելով բազմակողմանի եւ քննական վերլուծութիւն, այս գիրքը կը բացայայտէ՝ թէ Ֆրանսան իրապէս շատ լաւ տեղեակ էր Ռուանտայի վատթարացող իրավիճակին մասին թէ՛ ցեղասպանութենէն առաջ եւ թէ՛ անոր ընթացքին: Ան ուժեղօրէն ներգրաւուած էր տեղանքին վրայ եւ բարի յարաբերութիւններ կը պահպանէր ցեղասպանութիւնը գործադրող վերնախաւերուն հետ: Բաց աստի, ան ունէր քաղաքական եւ ռազմական կարողութիւն միջամտելու ի նպաստ կառավարութեան կողմէ հարստահարուածներուն: Կառավարական փաստաթուղթերը եւ հարցազրոյցները կը հաստատեն՝ թէ ֆրանսական կառավարութիւնը պատասխանատուութիւն կը կրէ ցեղասպանութիւնը արգիլելու եւ կասեցնելու առնչութեամբ իր ունեցած անտարբերութեան համար:»[75]

Սպանութիւններուն մեծ մասը արդէն կատարուած էր երբ 1994 Յունիս 15-ին, Ֆրանսայի ընկերվարական նախագահ Ֆրանսուա Միթերան կ՚արձակէ «Թիւրքուազ» անունով գործողութիւնը Ռուանտայի մէջ, որուն յայտարարուած նպատակը պէտք է ըլլար բացառապէս մարդասիրական միջամտութիւն: Այս ծիրին մէջ, Թիէրի Փրիւնիօ մասնակցած է 27-30 Յունիսին Պիսեսերոյի մէջ յատուկ գործողութիւններու հրամանատարութեան յանձնուած առաքելութեան: Ըստ իր վկայութեան, իր խմբակը Յունիս 27-ի կը ժամանէ Պիսեսերօ, ուր կը գտնէ վերապրած թութցիներու խումբ մը: Հութու զինուորականներու ներկայութեամբ, խմբակը խորհուրդ կու տայ թութցիներուն պահուըտիլ: Փրիւնիօ կը հաղորդէ, որ այդ երեք օրերուն ընթացքին, «ի տես բոլորին տեղի ունեցաւ ցեղասպանութիւն», կոտորուելով շուրջ հազար թութցի: Ան կ՚ըսէ՝ թէ «այս երեք օրերուն ընթացքին չշարժեցանք, որովհետեւ մեր ղեկավարները այդպէս որոշեցին, որովհետեւ անոնք արգիլեցին մեզի շարժիլ:»[76]

Այսպէս, ուրեմն, կաթողիկէ միսիոնէրներուն (Վաթիքան), Պելճիքայի, ԱՄՆ-ի եւ Ֆրանսայի դերը ռուանտական ցեղասպանութեան երկար նախապատրաստութեան եւ գործադրութեան մէջ ակնյայտ է:

Այս երկիրները ընդունելով հայոց ցեղասպանութիւնը կամ խօսելով անոր մասին (Պելճիքայի, ԱՄՆ-ի եւ Ֆրանսայի խորհրդարաններուն պարագաները, ինչպէս նաեւ հայոց ցեղասպանութեան 100-ամեակի առիթով Վաթիքանի

---

[75] Daniela Kroslak, նշ. աշխ.ը, էջ 3-4:

[76] Laure de Vulpian, Thierry Prungnaud, *Silence turquoise: Rwanda, 1992-1994: Responsabilités de l'État français dans le génocide des Tutsi*, Don Quichotte, 2012:

յայտնի յայտարարութիւնը), քօղարկած կ՚ըլլան իրենց անմիջական ու յարձակողական մասնակցութիւնը ուրիշ ցեղասպանութիւններու, մարդասիրական դիմակով մը ծածկելով իրենց ոճրագործութիւնները։ Անոնց համար անհրաժեշտ է հայոց ցեղասպանութիւնը դարձնել իրենց շահերուն խաղաքարտը։ Ընդունելով հայոց ցեղասպանութիւնը եւ քօղարկելով *իրենց* գործադրած ցեղասպանութիւնները, այս բարեսիրտ երկիրները դուռ կը բանան եւ արտօնութիւն տուած կ՚ըլլան յետագայ նորանոր ցեղասպանութիւններու աշխարհի որեւէ վայրի մէջ։ Հայերու մէկ ու կէս միլիոն անմեղ զոհերը կը դառնան «միջազգային» գարշելի քաղաքականութեան վտանգաւոր գործիք։

Անհրաժեշտ է որ ցեղասպանուած ու ճնշուած ժողովուրդներու քաղաքացիական հասարակութիւնները (եւ ոչ թէ իշխանութիւնները) ստեղծեն ընդհանուր, համայնական, հաւաքական, հասարակական, միաւորուած համակեցութիւն մը եւ մշակեն դիմադրութեան ծրագիրներ։ Միայն այսպէս կարելի է վերջ տալ ցեղասպանութիւնները ու ընդհանրապէս սպանութիւնները։ Այսպէս կարելի է նոյնիսկ վերացնել դրամատիրական գերիշխանութիւնը, յանուն համագործակցական ու փոխհասկացողութեամբ յագեցած համայնքներու, որոնք ինքն ըստ ինքեան կը մերժեն ցեղասպանութիւնները։

Սակայն ճնշուած ժողովուրդներու միջեւ յարաբերութիւնները այսօր զերօ են, իսկ եթէ կան, անոնք անիրական, ձեւական կամ պատահական բնոյթ կը կրեն։ Ընդհակառակը, ճնշուածներուն միջեւ գոյութիւն ունի «մրցակցութիւն»՝ թէ ո՞վ աւելի ճնշուած եղած է անցեալին։ Ցեղասպանուած ժողովուրդները՝ աւելի եւս շեշտելու համար իրենց ցեղասպանութեան բացառիկութիւնը, յաճախ կը հերքեն ուրիշ ցեղասպանութիւններու գոյութիւնները։ Մինչ ճնշուածները կը մրցակցին իրարու միջեւ, անոնք կը համագործակցին ցեղասպան իշխանութիւններու հետ «փաստելու» համար *իրենց* ցեղասպանութիւնը։ Հարտդ-Նեկրիի Կայրութեան ուզածը ճիշդ ասիկա է։

## ՕՏԱՐԱՑՈՒՄԸ ԻԲՐԵՒ ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԳՈՐԾՕՆ

Ցեղասպանութիւն իրականացնելու համար ազգային պետութեան գործօնը պէտք է ուղեկցի յստակօրէն ծրագրուած մեքենայութիւններով։ Անոնցմէ մէկը գաղափարախօսութեան միջոցով զանգուածային ատելութեան սերմանումն է ցեղասպանուելիք ժողովուրդին դէմ։ Իսկ այդ ատելութեան տարրերը կը գտնուին նոյն ինքը դրամատիրական յարաբերութիւններուն մէջ։ Զանգուածային ատելութիւնը կը սերմանուի վերէն՝ իշխանութիւններէն, այն վերնախաւին կողմէ որուն ձեռքը կը գտնուին արտադրամիջոցները։ Նման ատելութիւն չի կրնար բխած ըլլալ վարէն՝ սովորական ժողովուրդէն։ Անձնական ատելութիւնը ուրիշ բան է, զանգուածային ատելութիւնը բոլորովին տարբեր։ Մարքսի օտարացումի (alienation) յայտնի ըմբռնումը դիւրութեամբ կրնայ զանգուածային ատելութեան գործօն հանդիսանալ։ Նման ատելութեան համար ատողը պէտք է օտարանայ ատուողէն, այլապէս մէկ զանգուածը չի կրնար սպաննել միւսին։ Զանգուածային օտարացում կարելի չէ իրականացնել առանց կեանքի բոլոր մեծ ու փոքր երեւոյթներու, առարկաներու եւ դէպքերու փոխօտարացումով։ Կենցաղն ամբողջ պէտք է կազմուած ըլլայ անվերջանալի օտարացումներով։

Օտարացումը կը հանդիսանայ դրամատիրական հասարակարգի եւ համակարգի գլխաւոր յատկանիշներէն մէկը, հասարակարգ մը՝ որուն մէջ մենք, այսօր, կ՚ապրինք, հասարակարգ մը՝ զոր մեր իւրաքանչիւր քայլով կը քաջալերենք ու կ՚ուժեղացնենք։

Օտարացումը իր նուազագոյն աստիճանին հասած էր Փարիզի Քոմիւնին մէջ, իր առաւելագոյն աստիճանին հասած է Կայսրութեան մէջ։

Օտարացումը եւ անոր քննադատութիւնը կը հանդիսանան Մարքսի ամենաէական մտայղացումներէն մէկը։ Օտարացումի գաղափարը միշտ կենդանի եղած է Մարքսի գրութիւններուն մէջ, թէեւ *Դրամագլուխ*ի հինարար հատորներուն մէջ օտարացումի մասին յատուկ գլուխ կամ բացատրութիւն չկայ։ Մարքսի օտարացումի գաղափարին էութիւնն ու կարեւորութիւնը բացայայտուած է Ի. դարու երկրորդ կէսէն սկսեալ։

Կայօ Փեթրովիչ կը համառօտագրէ Մարքսի գաղափարը. «Ըստ Մարքսի, [օտարացումը] գործողութիւն մըն է որուն միջոցով (կամ կացութիւն մըն է ուր) անձ մը, խումբ մը կամ հիմնարկ մը կը դառնայ (կամ կը մնայ) օտար՝ (1) իր սեփական գործունէութեան արդիւնքներուն կամ արտադրանքներուն (կամ նոյն ինքը գործունէութեան) հանդէպ, եւ/կամ (2) իրեն շրջապատող բնութեան

հանդէպ, եւ/կամ (3) ուրիշ մարդկային էակներու հանդէպ, եւ, այս երեք կէտե-րուն կամ առնուազն մէկուն հետ միասին եւ միջոցով, նաեւ (4) ինքզինքին հան-դէպ (իր անձնական պատմականօրէն ստեղծած հնարաւորութիւններուն հան-դէպ)։»[1]

Աւելի մասնայատուկ մօտեցումով մը՝ օտարացումին հիմքը կը գտնուի մարդու եւ արտադրութեան միջեւ եղած անջրպետին մէջ։ Տէյվիտ Ուոքըր եւ Տանիէլ Կրէյ կը բացատրեն. «Արդարեւ, դասակարգային հասարակութեան մէջ, եւ մասնաւորապէս դրամատիրութեան մէջ, արտադրութիւնը ընթացք մըն է՝ ուր անհատները կը դառնան օտարացած։ Առաջին, անհատները օտարացած են իրենց արտադրածներէն։ Օրինակ, գործարանի աշխատաւորի մը ստեղծած արտադրանքը գործարանատէրը կը ծախէ երբ, ուր, որուն եւ ինչ գինով որ յարմար գտնէ։ Աշխատաւորը իր ստեղծած արտադրանքին վրայ ոչ մէկ վերա-հսկողութիւն ունի։ Երկրորդ, անհատը օտարացած է աշխատանքի ընթացքի պայմաններէն, այսինքն՝ ոչ մէկ իշխանութիւն ունի արտադրութեան ընթացքին վրայ, արտադրութեան գործիքները իր սեփականութիւնը չեն հանդիսանար, եւ որքան կը յառաջանայ դրամատիրութիւնը այնքան աւելի պէտք է կատարէ բթամիտ, կրկնողական պարտականութիւններ՝ որոնք կը պահանջեն շատ քիչ երեւակայութիւն, հմտութիւն կամ ստեղծագործականութիւն։ Երրորդ, անհատ մը օտարացած է իր «տեսակայնութենէն» [“species-being”], այսինքն՝ ան անկա-րող է մշակել եւ արտայայտել իր էական մարդկային յատկանիշները։»[2]

Անցնելով կեանքի վայելքէն դէպի ապրուստի պարտադրանք, մարդ կորսնցուցած կ՚ըլլայ կեանքի գլխաւոր յատկանիշը, ինչպէս կը գրէ Մարքս. «Իմ աշխատանքս պէտք է ըլլայ *կեանքի ազատ արտայայտութիւն*, ուրեմն՝ *կեանքի վայելք*։ Մասնաւոր սեփականութեան գոյութեամբ, իմ աշխատանքս *կեանքի օտարացում* մըն է, քանզի կ՚աշխատիմ *որպէսզի ապրիմ*, որպէսզի ինքզինքիս համար ապահովեմ կեանքի *միջոցներ*ը։ Իմ աշխատանքս իմ կեանքս չէ։»[3]

Այս օտարացումը կ՚առաջնորդէ դէպի տմարդկայնացում (dehumanisation)։ Տմարդկայնացումը գոյութիւն ունի բուն դրամատիրական արտադրութեան մէջ։

---

[1] Gajo Petrović, ‘alientation’, *A Dictionary of Marxist Thought*, Second edition, edited by Tom Bottomore, Oxford, Malden: Blackwell, 2001, p. 11։

[2] Daniel Walker and Daniel Gray, *Historical Dictionary of Marxism*, The Scarecrow Press, 2007, pp. 9-10։

[3] Karl Marx, ‘[Comments on James Mill, Élémens d’économie politique, translated by J. T. Parisot, Paris, 1823]’, in Marx & Engels, *Collected Works*, Volume 3, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 228։

1844-ին Մարքս կը գրէր. «Արտադրութիւնը ոչ միայն պարզապէս մարդուն կ'արտադրէ իբրեւ *ապրանք* մը, *մարդկային ապրանք*ը, մարդը *ապրանք*ի դերին մէջ, այլ, համաձայն ապրանքի դերին, կ'արտադրէ մարդը իբրեւ մտաւորապէս եւ ֆիզիքապէս *տմարդկային* էակ մը՝ աշխատաւորներու եւ դրամատէրերու անբարոյականութիւն, այլանդակութիւն եւ բթացում: Իր արտադրանքն է *ինքնագիտակից եւ ինքնագործ ապրանք*ը՝ *մարդկային* ապրանքը...: Սմիթի եւ Սէյի նկատմամբ մեծ յառաջխաղացում մըն է Ռիքարտոյի, Միլլի եւ ուրիշներու յայտարարութիւնը՝ թէ մարդկային էակի գոյութիւնը (ապրանքի աւելի կամ պակաս մարդկային արտադրողականութիւնը) անտարբեր է եւ նոյնիսկ վնասակար:»[4]

Մարդ էակը վերածուելով ապրանքային դրութեան, ան կը զրկուի իր մարդկային յատկութիւններէն՝ դառնալով օտարացած ու տմարդկային: «Մէ՛ մը որ թէքնոլոժին կը դառնայ անտարբեր հոգեւոր արժէքներուն նկատմամբ, ան անպայմանօրէն կը յառաջացնէ օտարացում եւ կ'առաջնորդէ դէպի տմարդկայնացում», կը շեշտէ Նիքոլաս Չուրչիչ,[5] աւելցնելով՝ որ «[դ]րամատիրութիւնը՝ եսասիրական պահանջներու եւ սեփական շահու շեշտադրութեամբ, չի կրնար գոյութիւն ունենալ առանց շահագործումի, տմարդկայնացումի եւ օտարացումի:»[6]

Ընդհանուր առմամբ, ինչպէս Էրիք Ֆրոմ կը գրէ՝ Մարքսի փիլիսոփայութիւնը «շարժում մըն է ընդդէմ մարդու տմարդկայնացումին [dehumanization] եւ մեքենականացումին [automatization]՝ որ ներյատուկ է արեւմտեան արդիւնաբերականութեան զարգացումին:»[7]

Մարքս եւ Էնկէլս օտարացումին մէջ կը տեսնեն ընտրելախաւին ամրացումը. «Սեփականաշնորհեալ դասակարգը եւ բանուորական դասակարգը կը ներկայացնեն միեւնոյն ինքնօտարացումը: Բայց առաջին դասակարգը ինքզինքը ազատ եւ ամրացած կը զգայ այս ինքնօտարացումին մէջ, օտարացումը ճանչնալով իբրեւ իր սեփական ուժը եւ այնտեղ տեսնելով մարդկային գոյութեան *առերեւութականութիւն*ը: Բանուորական դասակարգը ինքզինքը

---

[4] Karl Marx, 'Economic and Philosophic Manuscripts of 1844', in Marx & Engels, *Collected Works*, Volume 3, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 284:

[5] Nicholas Churchich, *Marxism and Alienation*, London and Toronto: Associated University Presses, 1990, p. 216:

[6] Անդ, p. 277:

[7] Erich Fromm, *Marx's Concept of Man*, New York: Frederick Ungar Publishing Co., p. v:

բնաջնջուած կը զգայ օտարացումին մէջ, այնտեղ տեսնելով իր սեփական անզօրութիւնը եւ անմարդկային գոյութեան իրականութիւնը։»[8]

Ստորեւ պիտի բաւարարուիմ օտարացումի մասին քանի մը բացատրութիւններով.

Ա.- ՕՓԵՐԱՅԻ ԲՆԱԳԱՒԱՌԸ

Օտարացումը ԺԹ. դարէն սկսեալ աստիճանաբար կը տարածուի բոլոր բնագաւառներուն մէջ։ Ոչ միայն բնագաւառները կ'օտարանան իրարմէ եւ բնագաւառները կ'օտարանան մարդոցմէ, այլեւ իւրաքանչիւր բնագաւառ կը տրոհուի ինքն իր մէջ՝ «նեղ մասնագիտութիւն» անունին տակ։ Այսօր, մարդ որքան դառնայ «նեղ» մասնագէտ, այնքան աւելի կը գնահատուի հասարակութեան կողմէ։

Յատկանշական է երաժշտութեան եւ մասնաւորապէս օփերայի պարագան։ Նիքոլաս Թիլ կը բացատրէ՝ թէ ինչպէս ԺԹ. դարու ընթացքին «ներկայացումի «իրադարձայնութիւն»-ը [eventness] տեղի կու տայ կլանիչ ուշադրութեան վարկածին թատերգականութեան [drama] մտացածին աշխարհին մէջ։»[9]

Իրադարձութիւնը ենթակայական երեւոյթ մըն է, որ երաժշտութեան պարագային կը ներկայանայ իբրեւ կատարողի եւ ունկնդիրի միջեւ եղած փոխազդեցութիւնը, մանաւանդ երբ ունկնդիրը իր էութեամբ, մարմինով, բացագանչութիւններով եւ ամբողջ միտքով կը մասնակցի կատարումին, քանի որ տակաւին չկայ օտարացում կատարուած թատերգականութեան եւ ընկալումին միջեւ։ Այս իրադարձայնութիւնն է որ ԺԹ. դարուն աստիճանաբար վերացաւ, իր տեղը զիջելով ունկնդիրի բացարձակ լռութեան ու մինչեւ վերջ անշարժ պահուածքին։ Ի. դարուն արդէն օտարացումը կատարեալ էր կատարուածին եւ ունկնդրութեան միջեւ։

Նիքոլաս Թիլ դիտել կու տայ, օրինակ, որ ԺԸ. դարու սկիզբը ֆրանսացի ունկնդիրը հակում ունէր երգելու դերասաններուն հետ, բան մը որ Նիւ Եորքի Մեթրոփոլիթընի ունկնդիրը շարունակեց մինչեւ ԺԹ. դարու վերջաւորութիւնը, իսկ ԺԸ. դարու իտալացի ունկնդիրը կը սիրէր ներկայացումի հիմնական պա-

---

[8] Karl Marx and Frederick Engels, 'The Holy Family, or Critique of Critical Criticism', 'Economic and Philosophic Manuscripts of 1844', in Marx & Engels, *Collected Works*, Volume 4, Lawrence & Wishart Electric Book, 2010, p. 36:

[9] Nicholas Till, 'The Operatic Event: Opera Houses and Opera Audiences', *The Cambridge Companion to Opera Studies*, edited by Nicholas Till, Cambridge University Press, 2012, p. 85:

հերուն ունեցած իր հակազդեցութիւնը մարմնականացնել՝ «պարոքի ոճով կրօնական յափշտակութեան» ցուցադրութեամբ։[10]

Թիլ կ՚աւելցնէ. «ԺԸ. դարու վերջաւորութեան գոյութիւն ունեցող զգայնականութեան [sensibility] պաշտամունքը եւս թատրոններուն մէջ իր ազդեցութիւնը ունեցաւ ունկնդիրներու վարքագիծին վրայ։ Զգայնականութիւնը դրսեւորումն էր բնականութեան հանդէպ նոր միջին դասակարգի ունեցած գաղափարախօսութեան, որ ձեւաւորուած էր իբրեւ բացայայտ ընդդիմութիւն բացարձակապաշտ եւ ազնուական մշակոյթներու վերահսկութեան եւ հնարամտութեան։ Զգայնականութեան սովորոյթը կը պահանջէր՝ որ մարդիկ իրենց զգացումները արտայայտէին իբրեւ նշան իրենց անկեղծութեան եւ համեստութեան, փոխանակ ծածկելու զանոնք։ Զգայնականութեան ժամանակաշրջանին, թատրոնի եւ օփերայի ունկնդիրներուն կը խրախուսուէր շռայլօրէն ցուցադրել ներկայացումի իրենց զգացական արձագանգները։ Յատուկ երեւան եկան դիւրազգած թատերական սեռեր, ինչպէս՝ *comédie larmoyante*-ը եւ *opera semiseria*-ն, որպէսզի ունկնդիրներուն առիթ ընծայուի ցուցադրել իրենց զգայնականութիւնը։ Երբ օփերայի զգայնականութեան ամենածողովրդական նմոյշներէն մէկը՝ Փաիզիելլոյի *Նինա* օփերան, 1790-ին ներկայացուեցաւ Նափոլիի մէջ, ունկնդիրները համակրութեան ճիչերով ոտքի կանգնեցան որպէսզի օփերայի հերոսուհիին հաւաստիացնեն թէ իր սրտառուչ ‘Il mio ben’ արիայէն ետք ամէն ինչ պիտի լուծուի լաւագոյն կերպով։»[11]

Այս իրադարձային վիճակին համար կարեւոր նշանակութիւն ունեցաւ ԺԸ. դարու վերջաւորութեան սկիզբ առած ունկնդիրի դասակարգին փոփոխութիւնը «վսեմազոյն» ազնուականէն (aristocrat) դէպի «անսանձ» քաղքենին (bourgeois)։

Կը զտնուի շատ յայտնի օրինակ մը։ 1830 Օգոստոսին հասունցած էր պելճիքական յեղափոխութեան մը բոլոր նախադրեալները։ Կը մնար վերջնական քայլին դիմելու անհրաժեշտ կայծը։ Այդ կայծը կը բոցավառէ օփերայի մը բեմադրութիւնը։ 1830 Օգոստոս 25-ին, Պրուքսէլի La Monnaie թատրոնին մէջ կը բեմադրուի Տանիէլ Ֆրանսուա Օպէրի *La muette de Portici* օփերան։ Օփերան կը պատմէ 1647-ին Նափոլիի մէջ Մազանիէլլոյի ապստամբութիւնը սպանիական իշխանութեան դէմ։

Օփերան կը պարփակէ հրահրիչ նախադասութիւններ, ինչպէս Բ. արարի Մազանիէլլոյի եւ Փիեթրոյի զուգերգը.

[10] Անդ, էջ 80-81։

[11] Անդ, էջ 81։

«Հայրենիքի սրբազան սէր՝
Տուր մեզի քաջութիւն եւ հպարտութիւն,
Իմ կեանքիս համար պարտական եմ երկիրիս,
Ան ինծի ազատութիւն է պարտական:»[12]

Կամ Գ. արարի վերջաւորութեան երգչախումբի կրկներգը.
«Քալե՛նք զէնքերով եւ ջահերով:»[13]

Հանդիսատեսը, ներշնչուելով նման խօսքերէ, օփերայի թատրոնէն դուրս կու գայ սկսելու համար յեղափոխական գործընթաց մը՝ որ կ՚աւարտի Պելճիքան անջատելով Հոլանտայէն եւ դարձնելով անկախ երկիր:

Ասիկա կրնար պատահիլ միայն այն պարագային՝ երբ կենդանի ըլլար իրադարձային դրութիւնը, երբ ներկայացումի թատրերգականութիւնը օտարացած չըլլար հանդիսատեսէն, հանդիսատեսը չներկայանար իբրեւ լռելեայն ընկալող եւ միայն արարներու վերջաւորութեան ծափահարութեամբ իր գնահատանքը արտայայտող զանգուած: Իրադարձայնութենէն դէպի կլանիչ ուշադրութեան (Նիքոլաս Թիլ) անցումը, ուրեմն, խիստ կարեւոր էր դրամատիրական վերնախաւին համար, պահպանելու համար իր իշխանութիւնը եւ վերահսկողութիւնը անհսկելի քաղքենի միջին դասակարգին վրայ: Այս ընթացքը երկարատեւ եղաւ եւ մեծապէս ծրագրաւորուած:

Բ.- ԲԵՄԻ ԵՒ ՀԱՆԴԻՍԱՏԵՍԻ ՏԱՐԱՆՋԱՏՈՒՄ

Ընկերաբան Ռիչարտ Սեննէթ կը մեկնաբանէ լուռ, անխօս ու հնազանդ հանդիսատեսին կազմաւորումը ԺԹ. դարուն.

«Երբ անհատականութիւնը մտաւ հանրային ոլորտ, հանրային մարդուն ինքնութիւնը ճեղքուեցաւ երկուքի: Միայն սակաւաթիւ մարդիկ շարունակեցին ինքզինքնին աշխուժօրէն արտայայտել հանրութեան մէջ՝ շարունակելով հին կանոնը (*ancien régime*) կողմնորոշող դերասան-մարդու պատկերը: ԺԹ. դարու կէսերուն, այս սակաւաթիւ գործունեայ մարդիկ դարձան փրոֆեսիոնէլներ՝ հմուտ կատարողներ: Ասոր համատեղ զարգացաւ ուրիշ ինքնութիւն մը եւս՝ հանդիսատեսի ինքնութիւնը: Այս հանդիսատեսը նուազ չափով մասնակցեցաւ հանրային կեանքին քանզի ինքզինք նախապատրաստած էր դիտելու զայն: Անվստահ իր զգացումներուն նկատմամբ, այլեւ համոզուած թէ այդ զգացում-

---

[12] Amour sacré de la patrie,
Rends-nous l'audace et la fierté;
A mon pays je dois le vie;
Il me devra sa liberté.

[13] Marchons! des armes! des flambeaux!

ները՝ ինչ որ ալ ըլլան անոնք, ամբողջապէս արտայայտուած են իր կամքէն անկախ, այս մարդը, արդարեւ, չլքեց հասարակութիւնը։ Ան կառչեցաւ այն համոզումին, թէ տունէն դուրս՝ բազմազգ ամբոխին մէջ, մարդ կարող էր ունենալ կարեւոր փորձառութիւններ, բայց, ի տարբերութիւն հին կանոնի (*ancien régime*) իր նախորդներէն, իրեն համար այս իրագործումը հանրութեան մէջ պէտք է ըլլար ոչ թէ իր հասարակական գոյութեամբ այլ իր անհատականութեամբ։ Եթէ ընդամէնը կարողանար ինքզինքը պատրաստել եւ նախ եւ առաջ ինքզինքը լռութեան վարժեցնէր հանրութեան մէջ, ապա իր զգացումներուն այնպիսի բաներ պիտի պատահէին որ իբրեւ անհատ անկարող պիտի ըլլար իրականացնել ինքզինքին համար։

«Հասարակութեան մէջ մնալով անցորդիկ, բայց տակաւին հաւատալով հանրային կեանքին, հանդիսատեսը ցոյց կու տայ թէ ինչպէս անցեալ դարու [ԺԹ. դար, Հ.Ա.] կէսերուն նոր աշխարհիկ կարգը կը հատի հին կանոնի (*ancien régime*) յարատեւող համոզումին։ Ներյատուկութեան եւ ներյատուկ անհատականութեան ազդեցութիւններուն մասին բոլոր ըսուածներէն դիւրութեամբ կարելի է տեսնել՝ թէ հանրային մարդը կրնայ աւելի հանգիստ զգալ իբրեւ ուրիշի արտայայտութեան վկայ քան անձամբ իբրեւ արտայայտութիւններու գործունեայ փոխանցող։ Այս վերաբերմունքը տարբեր ձեւերով ի յայտ եկաւ 1840-ականներու եւ 1890-ականներու տարազներու ճաշակին մէջ։ Հետեւաբար, հանրային կեանքի համոզումին պարզորոշ յարատեւութիւնը կը թուի անհրաժեշտութիւն մը ըլլալ, միջոց մը հանդիսատեսին համար ունենալու դիտելու ոլորտ։ Բայց այս հանրային աշխարհագրութեան յարատեւութիւնը՝ երբ կը դաշնակցի անհատականութեան հետ, կ'արտադրէ բան մը աւելի։

«Մեկուսացած դէմք մը, հանդիսատեսը կը յուսար կատարած ըլլալ այն անհատականութեան առաջադրանքները, զորս պիտի չկարողանար կատարել ուրիշներու հետ կենդանի փոխանակումի պարագային։ Հանրային շփումներուն ժամանակ իր զգացումները դարձան շփոթուած եւ անկայուն, մինչդեռ ինքզինքը դարձնելով անցորդիկ՝ ան կը յուսար ինքն իր մէջ արթնցնել յաւելեալ զգացումներ։ Այս յոյսը խտղտանքի ցանկութենէ մը եւ զգայական գրգիռէ մը աւելի բան մըն էր, որ պիտի յառաջանար անշարժ մնալով։ Մարդիկ, յատկապէս տղամարդիկ, հանրութեան մէջ յոյս ունեցած են առ նուազն ականատես ըլլալ թէ իրենց ապրած ընտանեկան խստաբարոյ պատշաճութենէն դուրս ինչ բանի կը նմանէր կեանքը։ Լռութեան մէջ՝ դիտելով անցնող կեանքը, մարդը վերջապէս կը զգար ազատ։ Այսպէս, նոր չափանիշերու վրայ հիմնուած հանրային ոլորտի յարատեւութիւնը սահմանեց արդիական կեանքի հիմնական հակադրոյթ մը. ազատ անհատական զարգացումի եղանակները՝ ի դէմս

եւ ի հակամարտութիւն ընտանիքին մէջ մարմնաւորուած հանրային շփումի եղանակներուն։ Հեգնականօրէն, հանրային կեանքի այս յարատեւութիւնը թոյլ տուաւ անհատականութեան եւ հասարակայնութեան դառնալ փոխադարձաբար թշնամական ուժեր։»[14]

Ռիչարտ Սեննէթ կը շարունակէ.

«Երբ հանրութեան մէջ կը խօսուի տիրական անհատականութեան մասին, եզրը կրնայ ունենալ երեք տարբեր իմաստներ։ Ան կրնայ նշանակել անձ մը՝ որ ուրիշներուն համար կ'ընէ այն ինչ անոնք չեն կրնար ընել ինքզինքնուն համար։ Ասիկա Վեպէրի [Max Weber] ըմբռնումն էր քարիզմայի մասին, երբ կը վերլուծէր հին թագաւորներուն կենսագրութիւնը։ Ան կրնայ նշանակել անձ մը՝ որ կը թուի ուրիշներուն համար ընել այն ինչ ո՛չ ինքը կրնայ ընել ինքզինքին համար եւ ո՛չ ալ անոնք կրնան ընել ինքզինքնուն համար։ Ասիկա Էրիքսոնի [Kai Erikson] ըմբռնումն էր քարիզմայի մասին, երբ կը վերլուծէր Լութէրի կեանքը։ Կամ վերջապէս, տիրական անհատականութիւն մը կրնայ անձ մը ըլլալ՝ որ ուրիշներուն ցոյց կու տայ թէ ինք ինքզինքին համար կրնայ ընել այն ինչ անոնք պէտք է ընեն ինքզինքնուն համար։ Ան ինքզինքը կը զգայ հանրութեան մէջ։ Ճիշդ է, ան կը ցնցէ իր ունկնդիրներուն զգացումները։ Բայց ունկնդիրները ոչ մէկ կերպ կարող են այս զգացումները դուրս հանել թատրոնէն եւ մտցնել իրենց ամէնօրեայ կեանքին մէջ։ Անոնք անկարող են «առօրեականացնել» տիրական դէմքին ուժը, քանզի Վեպէրի հին թագաւորները խստօրէն հիմնարկայնացուած [institutionalized] էին, ոչ ալ կարող են համայնք դառնալ անոր հետ, ինչպէս Էրիքսոնի Լութէրը ըրաւ իր միաբանական եղբայրներուն հետ։ Արդի պայմաններուն, անոնք որոնք կ'իյնան երաժշտական կատարողի կշիռին տակ, զայն կը դիտեն իբրեւ անձ մը՝ որ ընդամէնը «կը գտնուի» հանրութեան մէջ։ Իր արտակարգ ուժերուն շնորհիւ ան կը ստանայ ինքնաբուխ զգացումի եւ ուրիշներու մէջ ժամանակաւոր զգացում արթնցնելու կարողութեան տէր անձի տեսք։ Ինչպէս բոլոր քարիզմաթիք դէմքերը՝ ան նման չէ այս ուրիշներուն։ Բայց միաժամանակ ան մշտապէս մեկուսացած է բոլոր անոնցմէ որոնց մէջ զգացումներ կ'արթնցնէ։ Այս տեսակէտը սուր կերպով կ'երեւի Փականինիին ուղղուած Լիսթի յարգանքի տուրքին մէջ. «...այս մարդը՝ ընդունակ ստեղծելու այնքան մեծ խանդավառութիւն, անկարող էր իր հետեւորդներուն մէջէն ընկերներ կազմել։ Ոչ ոք կրնար կռահել թէ ինչ կը կատարուէր իր սիրտին մէջ, բայց իր սեփական հարուստօրէն օրհնեալ կեանքը երբեք ուրիշներուն չէր ուրախացու-

[14] Richard Sennett, *The Fall of Public Man*, Penguin Books, 2002, pp. 195-196։

ցած… Փականինիի աստուածը… ուրիշ բան չէր եթէ ոչ իր սեփական մռայլ, տխուր «ես»-ը»:

«Այս մեկուսացած բայց իշխող դէմքը անհատականութեան ի՞նչ առաջադրանքներ կը կատարէ արդեօք: Հանդիսատեսին համար ան կը ստեղծէ զգացումներ որոնք թէ՛ անբնական են եւ թէ՛ ապահով: Ան հանրութեան մէջ ցոյց կու տայ զգալ ինքնաբուխ կերպով՝ որ անբնական է, մինչ ցնցելու իր մարտավարութեամբ ուրիշներուն կը մղէ զգալ: Իսկ ժամանակաւոր ցնցումը ապահով է շնորհիւ իր իսկական մեկուսացումին: Այստեղ առկայ է ոչ մէկ զգացական փորձառութիւն որպէսզի ունկնդիրները կարողանան զայն չափակշռել իրենց սեփական ուժերուն հետ: Վերջապէս, ան արտակարգ անձ մըն է:»[15]

Իբրեւ այս անհատականութեան կրողներէն մէկը հեղինակը կը շեշտէ ԺԹ. դարու վիրթուոզ կատարողները, որոնք հանդիսացան «հանրային միակ գործունեայ անձերը:»[16]

«Ժողովուրդը ականատես եղաւ այս կատարողներու ուժերուն հանգստաւէտ բարձրանալուն: Բայց մեծ սխալ մը պիտի ըլլար հետեւցնել թէ լուռ հանդիսատեսը հանգստաւէտ անձ մըն էր: Իր լռութիւնը նշանն էր խոր ինքնավարանումի: Մինչ կ'անյայտանար հանրային անհատականութիւններու առաջին ռոմանթիք սերունդը, տարօրինակօրէն կ'աճէր հանդիսատեսին ինքնավարանումը: […]:

««Կ'ուզե՞ս զզուելի բան մը իմանալ», կը հարցնէ պարոն Փիէռ Վերոն իր *Paris S'Amuse*-ին մէջ, որ 1870-ականներու Փարիզի մասին ժողովրդական ուղեցոյց մըն էր: Théâtre de la Porte St.-Martin-ին մէջ, «ճիշդ այստեղ ԺԹ. դարուն, տակաւին գոյութիւն ունին նախնական արարածներ որոնք անզուսպ արցունքներ կը թափեն երբ կը դիտեն դաւաճանի մը ձեռքով դժբախտացած բեմական հերոս մը: Մի յաճախեր այս թատրոնը լոկ ականատես ըլլալու համար այս անկեղծ աշխատաւորներուն եւ համեստ մանր պուրժուաներուն բացայայտ անաչառութեանը… թող ինքզինքնին զուարճացնեն դառնալով անմխիթար: Անոնք երջանիկ են իրենց վհատութեան մէջ:»

«ԺԹ. դարու կէսերուն պարտաւորիչ դարձած էր ծաղրել ներկայացումի կամ նուագահանդէսի ժամանակ իրենց զգացումները ցոյց տուող մարդոց: Թատերասրահին մէջ զգացումներու զսպուածութիւնը միջին դասակարգի ունկնդիրներուն համար միջոց մը հանդիսացաւ սահմանագիծ նշանակելու իրենց եւ աշխատաւոր դասակարգին միջեւ: 1850-ականներուն, «պատուաւոր» ունկնդիր

[15] Անդ, էջ 201-202:

[16] Անդ, էջ 205:

մը այն էր որ կրնար լռութեան միջոցով իշխել իր զգացումներուն վրայ: Հին ինքնաբուխութիւնը կոչուեցաւ «նախնական»:»[17]

Գ.- ՍԻՆԵՄԱՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՆԴԻՍԱՏԵՍԻ ՁԵՒԱՒՈՐՈՒՄԸ

Համր սինեման իր ամենասկզբնական տարիներէն ուշադրութիւն դարձուց հանդիսատեսի խնդիրին: ԱՄՆ-ի Edison Manufacturing Co.-ն 1902-ին կը ցուցադրէ շուրջ երկու վայրկեան տեւող ֆիլմ մը՝ *Uncle Josh at the Moving Picture Show* (Քեռի Ճոշ շարժական պատկերի ցուցադրութեան): Պատմութիւնը կ'անցնի վօտըվիլի թատրոնի մը մէջ: Քեռի Ճոշ վօտըվիլի թատրոնի օթեակէն կը դիտէ ցուցադրուող ֆիլմ մը (շարժական պատկեր): Պաստառին վրայ (ֆիլմին մէջ) նախ կը յայտնուի պարուհի մը: Քեռի Ճոշ իր օթեակէն կը ցատկէ բեմ եւ կը ջանայ պարուհիին հետ սիրով զբաղուիլ: Պարուհին անմիջապէս կը հեռանայ: Պաստառին վրայ կը յայտնուի արագընթաց շոգեկառք մը՝ որ հեռուէն կը շարժի դէպի առջեւ: Քեռի Ճոշ՝ որ տակաւին կը գտնուի բեմին վրայ, կը դիտէ շոգեկառքին մօտենալը եւ սարսափելով շոգեկառքի հարուածէն կը խոյանայ դէպի իր օթեակը: Պաստառին վրայ ջրհորի մօտ կը յայտնուի գիւղացի զոյգ մը: Քեռի Ճոշ դարձեալ իջնելով իր օթեակէն բեմ կ'ելլէ: Զոյգը կը սկսի սիրով զբաղուիլ: Քեռի Ճոշ կարծելով որ աղջիկը իր դուստրն է, կը յարձակի պաստառին վրայ եւ կը խլէ զայն: Պաստառի վերացումով, Քեռի Ճոշ բեմին վրայ կը տեսնէ շարժադիտակ (kinetoscope) վարողը: Տեսնելով ցուցադրութեան ընդհատումը, վերջինս կը զայրանայ եւ իր ու Քեռի Ճոշին միջեւ տեղի կ'ունենայ կռիւ:

Քեռի Ճոշ ներկայացուած է իբրեւ ֆիլմի անտաշ, կոպիտ հանդիսատես՝ որ չի կրնար իր զգացումներն ու շարժումները զսպել ցուցադրուածին նկատմամբ: Աւելի լայն բնաբանով մը, ֆիլմին նպատակն է ստեղծել անշարժ, անշշուկ եւ ուշադրութեամբ դիտող հանդիսատես մը: Միրիամ Հանսընի մեկնաբանութիւնը աւելի քան զոհացուցիչ է.

«Uncle Josh-ին հաացէագրած դիտորդը անկասկած դասական հանդիսատեսը չէ տակաւին: Փոխարէնը, հաւանական է՝ որ Uncle Josh-ին նման, հանդիսատեսը նստած է վոտըվիլի թատերասրահին մէջ, որ մինչեւ 1906՝ գոնէ քաղաքային շրջաններուն մէջ, կը հանդիսանար ֆիլմերու ցուցադրութեան գլխաւոր վայրը: Նկատի ունենալով այս կարգադրութիւնը, զաւեշտական ազդեցութիւնը հիմնուած է ֆիլմին մէջը գտնուող հանդիսատեսին եւ ֆիլմի հանդիսատեսին միջեւ եղած ենթադրեալ մշակութային անհաւասարութեան վրայ, որ կ'առաջադրէ ճանաչումի յատուկ հասարակական տինամիք մը: Մինչ դիտորդը կը

[17] Անդ, էջ 205-206:

հեռանայ ցուցադրուած ֆիլմերուն հանդէպ Uncle Josh-ի ունեցած փորձառութենէն (քանի որ անոնք քաղուածքներ են եւ քանի որ առիթ կու տան Uncle Josh-ի վատընթաց վարքին), իրմէ կ'ակնկալուի ֆիլմերը, կամ ֆիլմին տիպերը, ճանչնալ ոչ շատ ժամանակ առաջ իր իսկ կողմէ փորձուած հմայքի տեսակներուն հետ միասին։ Քանզի նոյնիսկ եթէ անոնք ծաղրուած են իբրեւ միամիտ եւ տառացի ընթերցումներ, իւրաքանչիւր ֆիլմի հանդէպ Uncle Josh-ի ունեցած վերաբերմունքները կ'արտացոլեն դիտորդային հաճոյքի որոշակի երեւոյթներ՝ միմոսական-նարկիզական, մարմնաշարժական [kinesthetic], գաղտնադիտորդական [voyeuristic]։ Ցուցադրուող առանձին ֆիլմերու ոճին նման, այս հաճոյքները նշանակուած են իբրեւ յետադիմական, կողմնապահ եւ ապակողմնորոշիչ, որոնք անպատշաճ են ֆիլմի դիտորդին կողմէ ակնկալուող ընկալողական վերաբերմունքին։ Ֆիլմին մէջ գտնուող պատումը [narration] յստակ ճնշում կը բանեցնէ հաճոյքներուն վրայ որպէսզի դառնան միաձուլուած՝ ենթադաս ընկալումի աւելի հասուն եղանակի մը։ Սակայն ասիկա կարելի է ընել միայն բացասական նմոյշով։ Յետագային տակաւին պիտի զարգանար միաձուլումի գրակաղապարը [matrix], այսինքն՝ պատումի եղանակ մը, որ դիտորդին պիտի պարգեւէր մտացածին ներկայութիւն եւ ճանաչում, գլխաւոր պայման ունենալով իր իմացական բացակայութիւնը։ Ասիկա առաջ պիտի բերէր ֆիլմի եւ թատերասրահի տարածութեան անջատում։»[18]

Այսպէս՝ օփերան, սինեման, եւ այլն, այսօր կը ներկայացնեն կատարող-հանդիսատեսի կատարեալ օտարացումի, ինչպէս նաեւ կատարողի ինքնօտարացումի գլխաւոր նմոյշներ։

Դ.- ԳԱՂՈՒԹԱՀԱՅ ՓՈՐՁԸ

Գաղութահայ փորձը կրնայ հաստատել բեմ-հանդիսատեսի օտարացումը։ Ցայտուն օրինակ մըն է ցեղասպանական ձեռնարկը։ Հայոց ցեղասպանութիւնը, անկասկած, կը հանդիսանայ գաղութահայ ամենատարածուած ու ամէնօրեայ պատումը՝ զոհուածութիւն, ողբերգութիւն, պահանջատիրութիւն, վրէժխնդրութիւն, թուրքատեացութիւն, եւլն., եւլն.։ Կ'ակնկալուի, որ ցեղասպանական ձեռնարկները եւ տարելիցները առթեն յետ-ձեռնարկային զրոյցի տրամադրութիւն։ Հանդիսութիւններուն ընթացքին կրնան ելոյթ ունենալ «յատուկ հրաւիրուած» ցեղասպանագէտներ՝ որոնք իրենց բարձրաձայնումներով եւ հայրենասիրական կարգախօսներով երեւան կը հանեն իրենց ինքնութիւնը իբրեւ անհատ, մասնագէտ եւ փրոֆեսիոնէլ ճառախօս։ Կրնան բեմ բարձրանալ ասմունքող-

[18] Miriam Hansen, *Babel & Babylon: Spectatorship in American Silent Film*, Harvard University Press, 1991, էջ 28։

ներ՝ որոնք կը յուզուին արցունք թափելու աստիճան: Կրնան յայտնուիլ երաժշտական կատարողներ՝ որոնց խոժոռ դէմքերը տխրայոյզ զգացումներ պէտք է արտացոլեն: Միւս կողմէ՝ հանդիսատեսներ, որոնք զոհերուն յիշատակը յարգած ըլլալնին կ'արտայայտեն ծափահարութենէ հրաժարելով: Իսկ ի՞նչ կը պատահի ձեռնարկէն անմիջապէս ետք: Խնդիրը այն է՝ որ բան մը չի պատահիր: Պաշտօնատար անձեր կը շնորհաւորեն բանախօսն ու կատարողները իրենց յաջող ելոյթներուն համար, իսկ մեկնելու պատրաստուող հանդիսատեսները փոխադարձ ողջագուրանքներով կը հարցնեն, որմէ ետք, ինչպէս մամուլը իր քննախօսականը պիտի աւարտէ՝ «ներկաները գոհունակ սիրտով կը մեկնին սրահէն»: Ո՛չ ոք կը խօսի այն գիտելիքային բովանդակութեան մասին՝ որ ենթադրուած է արտադրած ըլլար ձեռնարկը: Ո՛չ ոք կը քննարկէ ցեղասպանական խնդիրները՝ ողբ (ոչ սուգ), աղէտի գրականութիւն կամ որեւէ ուրիշ գաղափար, ո՛չ ոք կը փորձէ մտածել արտասանուած բանաստեղծութեան կամ կատարուած երաժշտական գործի իմաստներուն մասին: Առաւելագոյնը ժամանակաւորապէս կը քննարկուի ձեռնարկին լաւութիւնը կամ վատութիւնը՝ ըստ ելոյթ ունեցողներու «մակարդակ»-ին եւ ոչ ըստ արտադրուած գիտելիքին: Զանգուածային ոճիրի մը տարելիցային ձեռնարկը կը վերածուի «հոգեւոր պարտք կատարել»-ու կարգախօսին կամ «ազգային պարտականութեան»: Գիտելիքը մնացած է այնտեղ՝ բեմին վրայ, փրոֆեսիոնէլ արտադրողներուն մօտ: Իսկ ի՞նչ կ'ընեն այս «փրոֆեսիոնէլ»-ները իրենց իսկ ներկայացումէն ետք: Նոյնը ինչ հանդիսատեսը: Ո՛չ մէկ խօսք իրենց արտադրած գիտելիքին մասին մինչդեռ առատ խօսակցութիւն իրենց մակարդակին մասին: Չեն զլանար ընդունիլ շնորհաւորանքներ՝ ձեռնարկը պատշաճ մակարդակով կատարելնուն համար: Այնտեղ՝ հարիւր տարի առաջ, մէկ ու մէկ միլիոն մահ, իսկ այստեղ՝ այսօր, սեփական յաջողութեան փառաբանում: Փրոֆեսիոնէլը իր զգացումները բեմէն դուրս չի հաներ: Իր ինքնութիւնն ու ձգողականութիւնը կը գտնուին բեմին վրայ: Ռիչարտ Սեննէթի եւ Միրիամ Հանսընի զգացումներու անփոխանցելիութեան գաղափարը կատարելապէս գործադրուած է այստեղ, եւ ան ալ այնպիսի գիտելիքի մը մասին ինչպիսին է հայկական հիմնահոսանքային մտածելակերպի օրակարգային գրեթէ միակ նիւթը՝ ցեղասպանութիւնը:

Ե.- ԹԵՔՆՈԼՈԺԻ

Ընդհանրապէս, օտարացումի կարեւոր գործիք մըն է թեքնոլոժին: Թեքնոլոժին մարդը կ'օտարացնէ իր շրջապատէն եւ կը կտրէ կենդանի փորձառութենէն, ինչպէս կը բացատրէ Պրուս Ուիլշայր.

«Թեթեւակիօրէն եւ վաղնջականօրէն, բայց հիմնաւորապէս, աշխարհը մեզի կը պարուրէ ոչ միայն տարածական առումով այլեւ ժամանակային: Մենք կը

ներգրաւուինք, հեղինակութիւն կը ստանանք եւ տարածութիւն կը վաստակինք ժամանակի մը մէջ՝ որ կու գայ որոշ աղբիւրէ մը եւ կ'երթայ որոշ տեղ մը։ Այժմ այս փորձառութիւնը վտանգի տակ է թեքնոլոժիացուած ու փրոֆեսիոնալիզացուած մշակոյթի պատճառով, ուր ուշադրութիւնը կեդրոնացած է առարկաներու վրայ՝ որոնք կրնան օգտագործուիլ անմիջականօրէն ըմբռնելի շահարկումներու համար, փոխանակ կեդրոնացած ըլլալու մեզի շարժող շրջապատող աշխարհին վրայ։ Ասիկա ամրացուած ու պրկուած ուշադրութիւն մըն է՝ ուր թիւերը դիւրութեամբ կը կորսնցնեն իրենց կապերը թուագրուած երեւոյթներու իրականութեան եւ ներկայութեան հետ եւ կը ծածանին իրենց փակ տուփերուն մէջ։»[19]

Պրուս Ուիլշայր աւելի կը զարգացնէ իր միտքը.

«Պէտք է հակիրճ կերպով «թեքնոլոժի»-ի ճշգրիտ սահմանումը տանք, քանի որ փրոֆեսիոնալիզմի գնահատուած գործադրութիւններն ու հմտութիւնները աւելի ու աւելի կը ներգրաւուին թեքնոլոժիով, որուն հետեւանքով գիտութիւնը աւելի ու աւելի կը դառնայ իմացականութեան հենքը։ Ենթադրուած է որ աշխարհի հանդէպ ընդհանուր գիտական հայեացքը կազմուած ըլլայ աւելի կամ պակաս ինքնավարութիւն վայելող յատուկ բնագաւառներէ, որոնք ներքաշուած են ծածուկ իրողութիւններու մասնաւոր ոլորտներու մէջ եւ նշանաբան ունին՝ «ոչ ոք կրնայ գիտնալ ամէն բան»։ Թեքնոլոժիին ազդեցութիւնը փրոֆեսիոնալիզմի աւանդական գաղափարականներուն վրայ հսկայական է։ Առ այժմ, համառօտակի կերպով թուենք հետեւեալ երեք կէտերը. 1.-Մինչդեռ թեքնիքական փորձագիտութիւնը [expertise] հետզհետէ կը նեղնայ եւ փորձագիտութիւնը իբրեւ անհատական հարստութեան եւ ուժի աղբիւր կը դառնայ շեշտուած, փրոֆեսիոնալիզմի հանրային ոլորտը կը հակի քայքայման։ 2.-Մինչդեռ փրոֆեսիոնէլները կը կլանուին երբեւէ աւելի մասնագիտացուած խումբերով եւ աւելի ու աւելի շատ խումբեր կ'աջակցին տուեալ արդիւնքի մը իրականացումին համար, կը նուազի իւրաքանչիւր մասնագէտի պատասխանատուութեան զգացողութիւնը ընդհանուրին նկատմամբ։ 3.-Ընդհանուր առմամբ, բարոյական դատողութիւնները կը ձգտին բացատրուիլ երբեւէ աւելի թեքնիքական իմաստներով, վտանգի ենթարկելով իրենց ընդարձակ մարդկային տարրողութեան իմաստը, ինչպէս նաեւ բնածին ձեւով իրենց սեփական մարդկային կեանքի *իրականութիւնը* արտայայտելու հնարաւորութիւնը։

[19] Bruce Wilshire, *The Moral Collapse of the University: Professionalism, Purity, Alienation*, State University of New York Press, 1990, p. xxi:

«Աւելի ստոյգ կերպով, «թեքնոլոժի» ըսելով ես նկատի ունիմ այն գործիքները որոնք անհրաժեշտ են աշխատանքի համար, աշխատանք՝ որ սերած է հետազօտական յատուկ ասպարէզներու մէջ կատարուած գիտական յայտնագործութիւններէ, աշխատանք՝ որ կ’արտադրէ հարստութիւն եւ ուժ։ Օրինակ, բժշկութեան մասնագիտութիւնն այսօր կապուած է բուժումներ ու հարստութիւն արտադրելու թեքնոլոժիին հետ, որովհետեւ փրոֆեսիոնէլ բժիշկը կը տիրէ, օրինակ, պաքթերիայի փորձագիտական գիտելիքին։ Նմանապէս, ճարտարագէտի մասնագիտութիւնը կապուած է շոգեշարժիչներու ճարտարարւեստական թեքնոլոժիին հետ, որովհետեւ ճարտարագէտը կը տիրանայ կազերու շարժական օրէնքներու փորձագիտական գիտելիքին՝ որ կը վերաբերի ճնշումի, ծաւալի եւ ջերմաստիճանի հետ։ [...]

«Անկասկած, թեքնոլոժիի կիրառութիւնը կրնայ յուշել աշխարհի մէջ ներգրաւուելու նախնական զգացողութիւններ։ Բայց, ինչպէս կանխատեսանք, խնդիր մը կայ այստեղ։ Սովորաբար, իւրաքանչիւր աշխատանքային օրուայ ճիգը բաժնուած է բազմաթիւ առաջադրանքներու եւ թեքնոլոժիներու, որոնցմէ իւրաքանչիւրը կը բովանդակէ իր մասնագէտներու խումբը եւ որոնք յաճախ կը կիրառուին արտադրութեան զանազան ժամանակներու ընթացքին։ Վտանգը այն է, որ աշխատաւորները կտրուած են ճիգի պատմական եւ մարդկային մղումէն, ինչպէս նաեւ չեն զգար պատմութեան կենսական մաս մը, այսինքն՝ այն տրոփուն յարաբերութիւնը, որ կը կազմէ լայն համայնքին հանդէպ գոյութիւն ունեցող անհատական պատասխանատուութեան իմաստը։ Սովորաբար գոյութիւն ունի ոչ մէկ *պատմուածք* որ աշխատաւորները կը միահիւսէ ամբողջական աշխարհի փորձառութեան հետ եւ կ’արտայայտէ ու կ’արդարացնէ ճիգը, եւ մինչ առաջ կու գայ ուժը՝ տեղի կ’ունենայ ոչ մէկ հզօրացում եւ ոչ մէկ իմաստաւորում «ես ինքս իբրեւ ամբողջական աշխարհի կենսական մասը» դրոյթին։»[20]

Զ.- ԿՐԹՈՒԹԻՒՆ

Օտարացումը կը հանդիսանայ արդի կրթական համակարգի ուսուցիչ-աշակերտ յարաբերութեան գլխաւոր յատկանիշը։ Պրուս Ուիլշայր կը թուէ փոքր վիճակագրութիւն մը.

«Մասնատուած, չճանչցուած իբրեւ ամբողջական անձեր, բազմաթիւ համալսարանական ուսանողներ օտարացած [alienated] կը զգան իրենց փրոֆեսորներէն։ Քարնէկի Հաստատութիւնը կատարած է ուսումնասիրութիւն մը՝ հարցափորձելով 5000 ուսանող։ 52%-ը նշած են՝ թէ փրոֆեսորները իրենց հետ

[20] Անդ, էջ 48-50։

«կը վերաբերին գիրքի մը համարներուն նման», 42%-ը չեն հաւատար՝ թէ փրոֆեսորները անձնապէս հետաքրքրուած են իրենց յառաջդիմութեամբ։ Ես համոզուած եմ որ այս հարցաքննութիւնը կը թերագնահատէ օտարացումը, քանի որ բազմաթիւ ուսանողներ տեղեակ չըլլալով լաւ կրթական փորձառութեան՝ ստեղծագործական, խրախուսական, խթանիչ եւ հետախուզականութեամբ ճարճատող, ոչինչ ունին որուն հետ կարողանան համեմատել իրենց փորձառութիւնը։ Իսկ ուսանողները անկարելի է օտարանան իրենց փրոֆեսորներէն առանց նախ եւ առաջ փրոֆեսորները օտարացնելով ուսանողներէն։»[21]

Օտարացումը մտած է թէ՛ բնագաւառներուն միջեւ եւ թէ՛ բնագաւառներուն մէջ՝ փրոֆեսիոնալիզմի զրաւիչ, անառարկելի եւ անձեռնմխելի անունին տակ։ Արդի համալսարաններուն եւ աքատէմիին մէջ «մասնագիտութիւններ»-ու անջատումը բացարձակ է։ Մէկ բնագաւառը բոլորովին անճանաչելի է միւսին։ Փրոֆեսիոնալիզմը հիմքն է օտարացումին, ինչպէս կը բացատրէ Տէյվիտ Էտուարտս.

«Մենք մեր կեանքը կը կառուցենք մտապատկերային կաղապարներու հիմքերու վրայ, եւ ապա մեր կեանքի մեծ մասը կ՚անցընենք զանոնք պաշտպանելու բախումնային դէպքերէ, փորձառութիւններէ եւ գաղափարներէ։ Շնորհիւ մեր ընկերութեան մասնագիտացումի պաշտամունքին, դիւրացաւ ինքնախաբէութիւնը։ Մարդիկ ուզեցին համոզուիլ՝ որ իրենք միայն լրագրողներ կամ զինավաճառներ կամ քարիւղի գործադիրներ են։ Իրենց պաշտօններն են որոնք սահմանեցին իրենց կեանքը։ Իւրաքանչիւր պարագայի, իրենց պաշտօնն է գործարարութեան համար դրամ կերտել։ Մասնագիտութենէն անդին անցնող որեւէ երեւոյթ կը մերժուի իբրեւ բան մը որ «ոչ մէկ կապ ունի ինծի հետ»։ Ասիկա անընդհատ մեր մէջ կը սերմանուի դպրոցէն սկսեալ մինչեւ աշխատանքը։ Փրոֆեսիոնէլ, փորձագէտ, տաղանդաւոր եւ խելացի ըլլալ մեզի համար կը նշանակէ ըլլալ մասնագիտացած։ Եւ անշուշտ մասնագիտացումի պարագային գլխաւոր կորուստը կ՚ըլլայ մարդկայնութիւնը։ Ինչպէս Ռուսօ ըսած է՝ մենք ունինք բազմաթիւ քիմիագէտներ, բնագէտներ եւ այլն, բայց չունինք նոյնիսկ մէկ քաղաքացի մը։»[22]

«Մարդկայնութեան կորուստ», կամ՝ Մարքսի «տմարդկայնութիւն»-ը։ Երկուքն ալ նոյն իմաստը կ՚արտայայտեն։

---

[21] Անդ, էջ xxiv։

[22] 'David Edwards: Interview conducted by telephone 1.11.00', Derrick Jensen, *How Shall I Live My Life?: On Liberating the Earth From Civilization*, PM Press, 2008, p. 18։

«Իւրաքանչիւր մասնագիտութիւն այլասերուեցաւ եւ դարձաւ ասպարէզ», կ'ըսէ Մոհանտաս Կանտի: «Մենք փաստաբաններ, բժիշկներ եւ դաստիարակներ կը դառնանք ոչ թէ մեր հայրենակիցները օգնելու համար, այլ դրամ վաստկելու:»[23]

«[Մ]էկը որ հմտօրէն կը նախագծէ երկաթուղիի մը համակարգը՝ որուն միջոցով որքան կարելի է արագ եւ հարթ կերպով զոհերը կը փոխարդուին Աուշվից, կը մոռնայ թէ անոնց ինչ կը պատահի այնտեղ», դառնութեամբ կը գրէ Թէոտոր Ատորնօ:[24] Այստեղ կայ թեքնոլոժի՝ որ մարդը կը բաժնէ փորձառութենէն, փրոֆեսիոնալիզմ՝ որ մարդը կը կապէ այդ թեքնոլոժիին հետ, եւ մարդկային փորձառութիւնը՝ Աուշվիցը կամ ցեղասպանութիւնը, որմէ օտարացած կը մնայ այդ ահռելի փորձառութեան համար անհրաժեշտ գործիքը հնարող անձը: Ցեղասպանութեան գործադրութեան համար ամբողջական շրջագիծ մը:

Է.- ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐ

Նշանակալի օտարացում կայ հայկական աւանդական կազմակերպութիւններուն միջեւ: Օտարացումը չի վերանար պաշտօնական որոշումներ կայացնելու համար քով-քովի աթոռներու վրայ նստելով, մամուլին մէջ իրարու դէմ չգրելով, համագործակցութիւններ ձեւակերպելով եւ միացեալ յայտարարութիւններ տարածելով, մէկ միութեան ներկայացուցիչը պաշտօնապէս միւս միութեան պաշտօնական ձեռնարկներուն ներկայ գտնուելով: Օտարացումը չի վերանար երբ միութիւններուն յարաբերութիւնները մրցակցային են՝ ո՛վ աւելի ուժեղ է, ո՛վ աւելի լաւ է, ո՛վ աւելի զարգացած է: Միութիւններուն օտարացումը կրնայ վերջանալ միայն տիալեքթիքական յարաբերութեան գոյացումով, երբ ամենահակասական թուացող կարծիքներուն մէջ գերիշխէ համընդհանուր շերտը: Ընդհանրութիւնները կը կազմեն մարդկային կեցութեան մեծամասնութիւնը, տարբերութիւնները՝ փոքրամասնութիւնը: Բայց փոքրամասնական տարբերութիւնը աստղայնացնելով դիտաւորեալ կը ջնջուին ընդհանրութիւնները, աւելի ճիշդ, այդ ընդհանրութիւնները՝ որոնք գոյութիւն ունին եւ պիտի շարունակեն գոյութիւն ունենալ, կը դառնան գաղափարապէս թապու եւ անգործածական: Հնչակեան եւ Դաշնակցական կուսակցութիւնները սկիզբէն եղած են ընկերվարականներ, բայց սկիզբէն գրաված են ընդդիմադիր դիրքեր:

---

[23] *Young India*, 7 August 1924: Քաղուածքը կատարած եմ հետեւեալ հրատարակութենէն. M. K. Gandhi: *Towards New Education*, edited by Bharatan Kumarappa:

[24] Theodor W. Adorno, 'Education after Auschwitz', *Can One Live after Auschwitz?: A Philosophical Reader*, edited by Rolf Tiedemann, translated by Rodney Livingstone and others, Stanford, California: Stanford University Press, 2003, p. 29:

Ինչո՞ւ ընդդիմադիր՝ եթէ իրենց հարթակային ընդհանրութիւնները կը կազմեն մեծամասնութիւն։ Պարզապէս որովհետեւ անոնք ի սկզբանէ մերժած էին տիալեքթիքը իրենց միջեւ։

Բայց զարմանալի ոչինչ կայ այստեղ։ Արդի ամբողջ ժողովրդավարական համակարգը հիմնուած է գաղափարական հաստատակամ օտարացումի վրայ։ Կը բաւէ դիտել ԱՄՆ-ի մէջ չորս տարին անգամ մը կատարուող նախագահական ընտրելարշաւին մաս կազմող երկու թեկնածուներուն երեք հանրային բանավէճերը։ Երկու բանավիճողները ունին իրենց կանխապէս որոշուած միտքերը («միտք» հասկացողութիւնը գործածելով խիստ վերապահօրէն), զորս կը փորձեն պաշտպանել մինչեւ վերջ, անկախ դիմացինի կարծիքին։ Այսինքն, երկու կարծիք, կամ անվերջանալիօրէն երկու կարծիքներ, որոնք երբեք չեն հանդիպիր իրարու։ Մէկ կարծիքը չի բխիր միւսէն, մէկ խօսքը չի յառաջանար միւսէն, ընդհանուր հարթակներ պէտք չէ գոյութիւն ունենան կամ ընդհանուր հարթակները պէտք չէ տեսանելի ըլլան։ Կը յաղթէ այն բանավիճողը՝ որուն ձայնը աւելի բարձր է։ Դարձեալ ԱՄՆ-ի պարագային, ընտրութիւններէն ետք, պարտուող զանգուածը (48 տոկոս, 49 տոկոս, եւ այլն) պարզապէս պարտաւոր է ընդունիլ յաղթող զանգուածին (52 տոկոս, 51 տոկոս, եւ այլն) յաղթանակը։ Ընդունելով պարտութիւնը, ժողովուրդի 48 տոկոսը ընդունած չ'ըլլար յաղթողի միտքն ու կարծիքը, այլ պարզապէս ենթարկուած կ'ըլլայ «ժողովրդավարութեան» օրէնքներուն։ Ընդունելով պարտութիւնը, իր գաղափարները մօտեցած չեն ըլլար յաղթողի գաղափարներուն։ Երկու տարբեր գաղափարները կը մնան օտարացած, մինչեւ չորս տարի ետք կատարուելիք յաջորդ բանավէճերը, որպէսզի նորոգուի եւ թարմանայ օտարացումը։ Մինչդեռ ամերիկեան երկու կուսակցութիւններուն վարած ներքին ու արտաքին քաղաքականութիւնները շատ քիչ կը տարբերին իրարմէ։ Այսինքն, ընդհանրութիւնները կը կազմեն մեծամասնութիւն։

Ընկեր Փանջունիի տիպարը ներկայացնող երեք գրութիւններուն մէջ (*Ընկ. Բ. Փանջունի ի Ծապլվար*, *Ընկ. Բ. Փանջունի ի Վասպուրական*, *Ընկ. Բ. Փանջունիի տարագրութեան մէջ*), Երուանդ Օտեան կը ներկայացնէ ԺԹ. դարու վերջաւորութեան եւ Ի. դարու սկզբնաւորութեան հայկական յեղափոխական պատումին եւ գործողութեան միջեւ եղած անջրպետը՝ օտարացումը։ Այս կէտը խորապէս կը դպչի աւանդական միութիւններուն՝ որոնք այս պատում-գործողութեան կրողներն են։ Հետեւաբար, Օտեանի մասին անդրադառնալու ժամանակ, յաճախ կ'անտեսուի իր գրութիւններուն իրական փորձառութեան վրայ հիմնուած ըլլալու հանգամանքը, զանոնք տեղաւորելով երգիծական գրականութեան մը անվնաս անկիւնը։

Թէ՛ յիշեալ ամերիկեան եւ թէ՛ հայկական օրինակներուն կապակցութեամբ կարելի է առարկել, որ քաղաքական խօսքի եւ գործողութեան անջատում գոյութիւն ունէր նոյնիսկ հին Յունաստանի մէջ, օրինակ, յոյն սոփեստները՝ որոնց այնքան կը հակակրէր Պղատոն։ Սկզբունքային հիմքը նոյնն է, բայց տարբերութիւնը շատ մեծ։ Նախ, սոփեստներու խօսքի բարձրաձայնութիւնը շատ հեռու էր գաղափարախօսութիւն ըլլալէ, գրականութիւն դառնալէ, մշակոյթի մը նախապայմանը ըլլալէ։ Երկրորդ, հեռու էր ֆեթիշական ըլլալէ, քանզի սոփեստները իրենց խօսքի իմաստին բարձրաձայնութիւնը կը վերցնէին որոշ ընդունուած արժէքային համակարգէ՝ շեշտելով, գունազարդելով մէկը կամ միւսը, առանց դրամատիրական շրջանին բնորոշ անհամակցելի համակցութիւններու գերիրական ներառումով։

Ը.- ՀԻՄՆԱՐԿՆԵՐ

Այսօր, օտարացումը դարձած է հիմնարկային։ Օրինակ, մամուլի հաստատութիւն մը։ Այստեղ կ'աշխատին տասնեակ, հարիւրաւոր թղթակիցներ։ Իւրաքանչիւր թղթակիցի նշանաբանն է իրականութիւնը «փոխանցել» իրականութիւնը չգիտցողներուն։ Անոնցմէ իւրաքանչիւրը գրասենակի, առանձնասենեակի կամ առանձնաբաժինի մը մէջ նստած՝ հազուադէպ լրագրական-գիտելիքային հարցերու մասին կը զրուցէ երկու մեթր անդին նստած իր գործընկերոջ հետ։ Լրագրողը իրականութիւնը փնտռող մըն է, բայց անտեղեակ է իր գործընկերոջ գիտցած իրականութիւններէն։

Լրագրային հիմնարկի մը մարդկային անջատուած տեղաբաշխումին նման տեղաբաշխուած են լուրերը լրագիրի մը էջերուն մէջ։ *Նիւ Եորք Թայմզ*ի, *Լը Մոնտ*ի, *Ալ-Ահրամ*ի մէջ կարելի է կարդալ լուրերու անվերջանալի տարափ մը, իւրաքանչիւրը տեղադրուած յատուկ սահմանուած ու բաժնուած անջատ սիւնակի մը մէջ։ Մէկ թղթակիցի մը սիւնակին մէջ կարելի է կարդալ, օրինակ, ֆրանսական խորհրդարանի հայկական ցեղասպանութեան հերքումը քրէականացնող բանաձեւի քուէարկութիւնը, իսկ քովի սիւնակին մէջ կարելի է կարդալ Իրաքի մէջ կատարուած ահաբեկչական գործողութեան մը դէպքային վերարտադրութիւնը՝ զոհերու քանակ եւ աւերներու տարողութիւն։ Երկու լուրերը պէտք չէ հանդիպին իրարու։ Այս երկու լուրերուն միջեւ չկա՞ն արդեօք ընդհանրական գիծեր։ Իրականութեան մէջ, ընդհանրութիւնները աւելի շատ են քան տարանջատումները, եթէ դէպքէն բարձրանանք դէպի իրադարձութիւն։ Կայ երկու իրադարձութիւն, երկու սպանութիւն՝ ցեղասպանութիւն եւ ահաբեկչութիւն։ Այս երկու իրադարձութիւնները գործադրողները (թուրք իշխանութիւնը եւ իսլամիսթ ծայրայեղականները) կը ձգտէին իրականացնել գաղափարախօսութիւն մը բայց ոչ գաղափար մը։ Ուրեմն, առաջին ընդհանրութիւնը՝

գաղափարախօսութիւնը, իբրեւ ոճրագործութիւններու ծածկ։ Այս գաղափարախօսութիւններու անմիջական կրողներուն (թուրք իշխանութիւնը եւ իսլամիստ ծայրայեղականները) ետեւը կանգնած էին իմփերիալիզմի եւ իրեն յաջորդող Կայսրութեան շարժիչ ուժերը։ Իմփերիալիզմը հայկական ցեղասպանութեան նախօրէին քանդեց օսմանեան կայսրութիւնը՝ իր անջատուած ու չանջատուած տարածութիւնները վերածելով ամենատարբեր աստիճաններու կեդրոնական ու ծայրամասային դրամատիրութեան օրրաններու։ Այս նոյն իմփերիալիստական ուժերուն շարունակողը՝ Կայսրութիւնը (իր անդրազգային ընկերութիւններով), Իրաք ներխուժեց որպէսզի երկիրը դարձնէ ընկերութիւններու գերշահոյթներուն բնակավայրը։ Երկուքն ալ դրամատիրական յարձակողական գործողութիւններ էին, որոնք ծնունդ պիտի տային յարձակողականութեան անվերջանալի շրջապտոյտներու՝ ցեղասպանութիւն, ահաբեկչութիւն, եւ այլն։ Ուրեմն՝ երկրորդ ընդհանրութիւնը՝ իմփերիալիզմը եւ անոր շարունակութիւնը։ Եւ այլն։ Բայց այսօրուայ ի վերուստ պարտադրուած մտածողութեան համար նման էական ու խորքային ընդհանրութիւններու մասին հանրայինօրէն խօսողը կը դառնայ իրականութիւնը չտեսնող, իրականութիւնը չհասկցող, իրականութեան մէջ չապրող տարօրինակ անձ։ Հայոց ցեղասպանութիւնն ու Իրաքի ահաբեկչութիւնը պէտք չէ տիալեքթիքի մէջ մտնեն իրարու հետ։ Անոնք պէտք է մնան օտարացած առարկաներ, որպէսզի կարելի ըլլայ անոնց ֆեթիշիզացումը եւ այդ ֆեթիշիզացումին միջոցով կարելի ըլլայ տիրապետել անոնց գիտելիքային բովանդակութեան վրայ։

Լրատուական մասնատուածութեան եւ բռնազբօսիկ տրոհումի շարունակութիւնն են հեռատեսիլի հարցամրցոյթները։ Միմիայն տեղեկութեան վրայ հիմնուած անվերջանալի հարցումներ՝ ե՞րբ, ո՞վ եւ ո՞ւր, բայց երբեք՝ ինչո՞ւ։ Հարցումներուն պատասխանելու համար պէտք է *գիտնաս* եւ ոչ թէ *հասկնաս*։ Գիտնալու համար պէտք չէ իրերու յարաբերութիւնները հասկնաս, կը բաւէ տեղեակ ըլլաս իրերու անջատ վիճակներէն։

Կամ, երաժշտական քոնսերվաթուար մը՝ երաժշտանոց մը։ Հակառակ որ երաժշտանոց մը ունի բազմաթիւ բաժանմունքներ՝ դաշնակ, ջութակ, երգ, նուագավարութիւն, երաժշտագիտութիւն, եւ այլն, հազուադէպ կը պատահի որ խումբ երաժիշտներ միանան համատեղաբար ու ինքնուրոյնաբար երաժշտութեամբ զբաղուելու համար։ Անոնք կը միանան միայն քննութիւններու հիմնարկայնացուած պարտադրանքին տակ՝ սենեկային երաժշտութիւն, աշակերտական նուագախումբ կամ նուագակցութիւն։ Հակառակ որ արուեստի եւ մշակոյթի հիմքը ինկած է հաճոյքը, երաժշտանոցի մէջ երբեք չես տեսներ որ երկու նուագող միանան արտա-քննութիւնային արուեստ հնչեցնելու, արուեստով

ժամանցելու, արուեստի միջոցով մարդկային ոչ-ժամկէտային յարաբերութիւններ մշակելու գիտակցութեամբ եւ բնազդական մղումով: Մէկ սենեակին մէջ փորձող դաշնակահարը կրնայ լսել քովի սենեակի ջութակահարին նուագը, առանց ենթակայական ցանկութիւն մը ունենալու յարաբերիլ անոր հետ: Քննութեան նիշն է որ պիտի որոշէ անոնց յարաբերութիւնը՝ նիշի տարբերութիւնը պիտի որոշէ անոնց «փրոֆեսիոնէլ» մակարդակի յարաբերութիւնը: Երաժշտանոցի մէջ այսպէս վարժուած երաժիշտը իր ամբողջ կեանքի ընթացքին կը մերժէ արուեստով հաճոյք ստանալու սկզբունքը, խմբային-կատարողական հաճելի ժամանցի միջոցով բացայայտելու երաժշտութեան մը այն անսահման ու անսահմանելի մանրուքները՝ որոնք ընդունելի չեն արդի կատարողական «փրոֆեսիոնէլ» պարտադրաքներուն:

Փրոֆեսիոնէլ ինքնապատկերի վերարտադրութեան համար նոյնիսկ անընդունելի է լուրջ ժամանցային երաժշտական կատարողականութիւնը:

Թ.- ԲՋԻՋԱՅԻՆ ԸՆՏԱՆԻՔ

Օտարացումի նպաստաւոր հանգամանք մըն է բջիջիային ընտանիքը (nuclear family)՝ հակառակ մօտիկութիւն ցուցաբերող իր անուանումին: Շատ քիչ ծնողքներ իրապէս կը սիրեն մտիկ ընել իրենց զաւակները, մտիկ ընել սիրով, ախորժելով եւ յօժարութեամբ: Յաճախ ծնողքները իրենց սեփական զաւակները կը գնահատեն արտաքին դրդապատճառներով՝ դպրոցական նիշեր, յաջողութիւններ, հանրային ներկայանալիութիւն, հասարակական դիրք, բայց անպատրաստ են առնչակից ըլլալու անոնց մտաւոր պահանջներուն եւ հոգեկան ապրումներուն: Ասիկա առիթ կու տայ զաւակներուն հեռանալ իրենց ծնողքներէն ըլլայ ֆիզիքապէս կամ բարոյապէս:

Ժ.- ԻՆՔՆՕՏԱՐԱՑՈՒՄ

Ֆրից Փափփենհայմ կը թուէ արդի մարդու ինքնօտարացումի օրինակներ.

««Ուղեկից կինը»՝ որ, մտահոգուած ըլլալով իր ամուսինին ասպարէզով, ընկերուհիները կ'ընտրէ «ճիշդ մարդոց» ընդմէջէն, փոխանակ դիմելու այն մարդոց՝ որոնց հետ ձգողականութիւն կը զգայ. անհատները՝ որոնք ընկերային հեղինակութեան պատճառներով կամ մասնագիտական կամ գործարարական շահերու նկատառումներով, կը միանան այն եկեղեցիին՝ որ իրենց կու տայ պատկառելիութեան համեմատաբար բարձր աստիճան, փոխանակ միանալու այն եկեղեցիին՝ որ կը ներկայացնէ իրենց կրօնական պատկանելիութիւնը եւ հաւատքը. քաղաքական առաջնորդը՝ որ նկատելով թէ ոչ-ժողովրդական դատի մը համար մղած իր պայքարը կրնայ վերընտրութեան հնարաւորութիւնները ջախջախել, իր քաղաքական ապագային համար կը լքէ իր համոզումները. նկարիչը՝ որ յանձնառու է ստեղծագործական բայց ոչ ընդհանրապէս

ընդունելի գաղափարներու, կը հրաժարի միայնակ արուեստագէտի իր պայքարէն եւ կ'ընդունի ծանուցողական ընկերութեան մը գրաւիչ վարձատրութիւնները եւ ապահով պաշտօնը. այս բոլոր մարդիկ ցոյց կու տան թէ ինչպէս բոլոր անոնք որոնք օտարացած են իրականէն այլեւս չեն կրնար ըլլալ ինքզինքնին։»[25]

Յակոբ Պարոնեանի գրութիւնները՝ որոնք քննադատութիւններ են պոլսական նոր քաղքենիացած դասակարգին, կը պարունակեն ինքնօտարացումի անվերջանալի օրինակներ։ Վերցնենք Պաղտասար աղբարը։

Մեծահարուստ Պաղտասարին կինը՝ Անոյշ, սիրաբանութեամբ կը զբաղուի Կիպարին հետ։ Կիպար՝ իր խօսքը ուղղելով Անոյշին, կ'ըսէ. «Անբարոյականութեան նշոյլն անգամ չեմ նշմարեր ես. աստուած մի՛ արասցէ, սրբոց իրաւո՞ւնքն յափշտակած ես, այլոց ժառանգութի՞ւնն կորզած ես, գողութի՞ւն ըրած ես, մա՞րդ սպաննած ես… բնաւ երբեք, քաւ լիցի… այլ պարզապէս էրիկդ չես սիրեր եւ անոր տեղ զիս կը սիրես, այս չէ՞ բոլոր թերութիւնդ, եթէ երբեք կրնայ թերութիւն համարուիլ այսպիսի վարմունք մը» (Ա. արար, Տեսիլ Ա.)։ Կիպար գիտէ որ կատարուածը անբարոյականութիւն է բայց ինքզինքին ու Անոյշին պարտադրաբար կը համոզէ՝ որ կատարուածը անբարոյականութիւն չէ։

Տեսնելով Անոյշի անբարոյական վարքը, Պաղտասար դատարան կը դիմէ ամուսնալուծութեան համար։ Բայց Անոյշին համար այս ամուսնալուծութիւնը պէտք չէ կատարուի, քանզի չ'ուզեր կորսնցնել ամուսինին հարստութիւնը։ Կիպար կը խօսի Անոյշին հետ. «Փաստաբաններու մեծ մասն արդարութիւնն եւ իրաւունքը հոն կը գտնէ, ուր շատ ոսկի կը տեսնէ, սակայն չեմ կարծեր, որ Օգսէնն այս մասին վերաբերի։ Եթէ յաջողիմ իրեն հետ համաձայնութիւն մը գոյացնել, աղէկ. եթէ ոչ՝ դատիդ պաշտպանութիւնն ես պիտի ստանձնեմ ու պիտի շարունակեմ խաղալ մեր խաղերը» (Ա. արար, Տեսիլ Ը.)։ Դարձեալ Կիպար գիտէ որ փաստաբանութիւն կը նշանակէ արդարութիւն բայց պարտադրաբար կը համոզէ՝ որ փաստաբանական արդարութիւնը կը գտնուի դրամի մէջ։

Ինքնահամոզելով իր իսկ կողմէ հաւատացած անբարոյական ու անարդար չափանիշներուն բարոյականութիւնն ու արդարութիւնը, Կիպար օտարացած կ'ըլլայ ինքն իր մէջ։ «Այսպէս, այն անձը որ իրականութիւնը կը տարանջատէ երկու մասի, կը դառնայ բաժնուած իր սեփական ինքնին [self] մէջ», դիտել կու տայ Փափփենհայմ։[26]

---

[25] Fritz Pappenheim, *The Alienation of Modern Man: An Interpretation Based on Marx and Tönnies*, New York and London: Modern Readers Paperbacks, 1968, p. 13։

[26] Անդ, էջ 12։

ԺԱ.- ՄԻՇԷԼ ՕՆՖՐԷ ԵՒ ԱԶԸՐՊԷՅՃԱՆ

Ժամանակակից ամենէն հետաքրքրական փիլիսոփաներէն մէկն է ֆրանսացի Միշէլ Օնֆրէ (Michel Onfray)։ Փիլիսոփայ մը՝ որ դէմ է հիմնարկային-աքատէմիք կրթութեան, ինքն իր կողմէ ստեղծելով ժողովրդական համալսարան (université populaire) մը Քաէնի մէջ։ Անարշիստ մըն է՝ որ ֆրանսական նախագահական ընտրութիւններուն իր քուէարկութեան ձայնը կու տայ համայնավար կուսակցութեան։ Աթէիստ մըն է՝ աթէիզմի ձեռնարկի (*Traité d'athéologie: Physique de la métaphysique*) հեղինակ, ուր խորապէս ուսումնասիրած է բոլոր կրօնական բնագիրները։ Փիլիսոփայական եօթը հակա-պատմութիւններու հեղինակ է, ուր կը մեկնաբանէ մոռցուած միտքերը, լուսանցքատրուած ուղղութիւնները, մեկուսացուած մտածողները։ Հաճոյապաշտութեան (hedonism) կողմնակից մըն է, գրելով անոր նուիրուած չորս փիլիսոփայական մեկնաբանութիւններ։ Օնֆրէի համոզիչ կարծիքով, այսօր շուկան է որ կը պարտադրէ օրէնքը՝ հիւանդանոցներուն, դպրոցներուն, հրատարակչատուններուն, մշակոյթի մէջ, եւ այլն։ «Կը կարծեմ որ այսօր դիմադրութիւնը պէտք է ըլլայ լիպերալիզմի եւ շուկաներու դէմ՝ որոնք օրէնք կը պարտադրեն ամէնուրեք,» ըսած է ան։[27] «Փորձեցէք ազատատենչ ընկերվարութիւն [socialisme libertaire] մը եւ կը տեսնէք որ կարելի է յեղափոխութիւն կատարել առանց իշխանութիւնը ձեռք անցընելու», կը հանդիսանայ իր կարեւոր համոզումներէն մէկը։[28]

2015-ին Օնֆրէ կ'այցելէ Ազըրպէյճան։ Վերադառնալով Փարիզ, *Nouvelles d'Arménie* հարցազրոյց մը կը կատարէ իր հետ, ուր իրական ընդվզումով կ'ըսէ՝ թէ «Ազըրպէյճանի մէջ հակահայկական ցեղապաշտութիւնը [racsim] տեւական է ու հիսթերիք»[29] Երբ Օնֆրէ կ'արտայայտէր այս գաղափարը, զայն լիապէս կը տեսնէր իր ընդհանուր համոզումներուն ընդմէջէն, որոնք բոլորն ալ հակառակ են հայկական հիմնահոսանքային իշխանականութեան գաղափարախօսութիւններուն։

Զանգուածային ատելութիւնը՝ ինչպէս Օնֆրէ ականատես եղաւ Ազըրպէյճանի մէջ, առաջին քայլն է ընդդէմ անարշիզմի։ Վերնախաւերը իրենց ենթակայ ամբոխներուն մէջ սերմանելով զանգուածային ատելութիւն հակառակորդ ամբոխին դէմ, ամրացուցած կ'ըլլան իրենց իշխանակութիւնը։ Հակառակորդի

---

[27] *Michel Onfray manifeste hédoniste*, հարցազրոյց Միշէլ Օնֆրէի հետ, YouTube-ի մէջ տեղադրուած 2012 Օգոստոս 21-ին։

[28] Անդ։

[29] *Nouvelles d'Arménie magazine*, Octobre 2015։

զանգուածային ատելութիւնը ազգայնապաշտութեան (բայց ոչ ժողովրդային ազգայինի) հիմքերէն մէկն է, որուն շնորհիւ իշխանութիւններուն կը դիւրանայ սեփական ժողովուրդի հնազանդումը, քանզի ատելութեան գաղափարախօսու- թեամբ՝ իշխանութիւններու շահագործումներուն դէմ կատարուող որեւէ հա- կաշարժում կը բացատրուի իբրեւ դաւաճանութիւն, հայրենիքի ատելութիւն, հայրենիքի ապահովութեան վտանգում։ Հայկական կուսակցութիւնները երբ 1950-60-ականներուն արդէն բացայայտօրէն կը հակաճառէին ու կը հերքէին իրարու եւ իրենց միջեւ փոխադարձ ատելութիւնը կը հասնէր իր գագաթնակէ- տին, կրնային լիովին վստահիլ իրենց ենթականերու հաւատարմութեան եւ յենուիլ անոնց վրայ։ Ասիկա կ'ուժեղացնէր վերը՝ վերնախաւը, վերնատունը։ Ատելութիւնը անհամատեղելի է Օնֆրէի անարշիզմին հետ, քանի որ իր նպա- տակը ոչ թէ իշխանութեան ուժեղացումն է, այլ ժողովուրդին։ Օնֆրէ կ'ընդվզէր ազէրիական զանգուածային ատելութեան դէմ քանի որ վերջինս կը քանդէր անարշիզմի որեւէ կարելիութիւն, կը վերացնէր ժողովուրդէն (վարէն) բխած ժողովրդավարութեան որեւէ հեռանկար։ Կա՞յ արդեօք Հայաստանի կամ սփիւռքի իշխանութիւն մը՝ որ առաջնորդութիւնը կու տայ ժողովուրդին։ Դպրոցներ կը փակուին առանց հանրային քննարկումի իսկ խորքային քննար- կումի համարձակութիւն ունեցողները ուղղակիօրէն կը ջախջախուին կամ պարզապէս կը մեկուսացուին (Կիպրոսի Մելգոնեանի փակումը ցայտուն օրի- նակ մըն է), կուսակցական դպրոցներ կը բացուին առանց ժողովուրդին հարցնելու իր կրթական նախասիրութիւններուն մասին, գաղութները հսկայա- կան դրամներ կը ծախսեն առանց ժողովրդային վերահսկողութեան։ Սփիւռքի կառոյցներուն գործունէութիւնները բացարձակապէս չեն քննարկուիր մամու- լին մէջ, բացի որոշում կայացնողներու եւ անոնց արբանեակ մտաւորականնե- րուն անվերջանալի ինքնագովասանական յօդուածներէն եւ հաղորդագրու- թիւններէն, եւ, ըստ հարկին, անվնաս, աննշան եւ լիովին վերահսկուած ինքնաքննադատութիւններէն՝ որոնք դիտաւորեալ կերպով ընթերցողին հեռու կը պահեն խորքային հարցերէն։ Ճիշդ այս բոլորին հակառակ են Օնֆրէի գաղափարները, որոնցմէ կը բխի ատելութեան դէմ իր հակակրանքը։ Օնֆրէի գաղափարական հենքը անարշիզմն է՝ մարմնաւորուած ժողովուրդին մէջ, տնօրինուած վարէն դէպի վեր։

Օնֆրէի միւս համոզումներէն մէկն է աթէիզմը։ Կրնա՞յ ըլլալ Օնֆրէի ազըրպէյճանական ատելութեան «բացայայտում»-ը տարածող հայկական մամուլը աթէիզմի մասին երբեւէ որեւէ ակնարկում ունեցած ըլլայ։ Օնֆրէի աթէիզմը հիմնուած է Թորայի, Նոր Կտակարանի եւ Քորանի ընթերցանութեան վրայ, ընթերցանութիւն՝ աթէիզմի դիրքերէն, բայց միշտ սիրելով այդ

բնագիրները եւ փորձելով զանոնք հասկնալ փոխյարաբերութիւններու ընդմէջէն։ Այսինքն, աթէիզմ՝ առանց ատելու աթէացուած կրօնքները։ Այս հիմքին վրայ աւելորդ չէ հարցնել՝ թէ Օնֆրէի յայտարարութենէն խանդավառուած քանի՞ հայ կարդացած է Քորանը, գիտակցաբար տարբերելով բնագիրը ներկայ ծայրայեղականներու տարօրինակ ու անհասկնալի (ան)իսլամութենէն։ Ներկայիս, աշխարհի մէջ իսլամական շարժումներուն դիտաւորեալ ու վերէն կազմակերպուած անբաղձալի վերելքին հետ եւ իսլամի հանդէպ համատարած ու դարձեալ վերէն ծրագրաւորուած ատելութեան պայմաններուն, բնաւ չլսեցինք հայ բարեպաշտ ձայներ՝ որոնք գիտակցաբար քարոզէին տարբերել իսլամը իսլամիզմէն։ Օնֆրէ բազմիցս խօսած է այս տարբերութեան մասին։ Մենք՝ համաբարեպաշտ քրիստոնեաներս, իսլամը դիտեցինք դուրսէն, իր մասին տարածուած ամբոխավարական պատումներէն, եւ ոչ թէ ներսէն, փորձելով անձամբ կարդալ եւ մեկնաբանել Քորանը իբրեւ գրուած բնագիր։ Համատարած բարեպաշտութեան պայմաններուն ո՞ր մէկ հայկական մամուլը կ’ընդունի բոլոր կրօնքները դնել հաւասար հարթութեան վրայ, ըլլայ աթէիսթական կամ ոչ-աթէիսթական տեսանկիւնէն։ Սեդա Տատոյեան երեք անգլերէն հատորներու մէջ[30] հետազօտած է հայկական միջնադարը իսլամական աշխարհին մէջ՝ սերտօրէն ուսումնասիրելէ ետք իսլամական միտքն ու շրջապատը։ Հայկական շրջանակներու մէջ այս աշխատութիւնը գրեթէ բացակայութիւն մըն է։ Քրիստոնէութիւնն ու իսլամը անհամատեղելի պէտք է մնան։ Օնֆրէի ճիշդ հակառակ մօտեցումը։ Արդ, երբ ֆրանսացի փիլիսոփան խռոված էր Ազըրպէյճանի ատելութենէն, իր քննադատութիւնը նախ եւ առաջ ուղղած էր *ատելութեան* գաղափարին դէմ, ատելութիւն մը՝ որ իր աթէիսթական թէզերուն ընդմէջէն կ’ուզէր վերացնել, կրօնքները մեկնաբանելով ըստ իրենց միջեւ եղած բնագրային փոխյարաբերութիւններուն։

Գալով Օնֆրէի հակա-պատմութիւններուն՝ անոնք դիմադրութիւններ են համատարած սովորամոլութիւններուն եւ անշարժացած միտքերուն։ Օնֆրէի բնաբանին մէջ, զանգուածային ատելութիւնը կարելի է հասկնալ իբրեւ հակա-պատմութիւններու մեծ արգելք մը, քանի որ ան կը դիրքաւորէ պնդութիւններն ու մտաւոր անկումները եւ առիթ չի տար տեսնելու ուրիշները։ Պէտք է ըսել՝ որ հայերը ունեցած են եւ ունին հակա-պատմութիւններ։ Պատմութեան բնագաւառին մէջ կարելի է յիշել Լէոյի *Անցեալից* (Թիֆլիս, 1925) եւ *Թիւրքահայ յեղափոխութեան գաղափարաբանութիւնը* (Փարիզ, 1935), Սեդա Տատոյեանի բազմա-

[30] Seta B. Dadoyan, *The Armenians in the Medieval Islamic World*, New Brunswick (U.S.A.) and London (U.K.): Transaction Publishers, 3 Volumes, 2011, 2013 and 2014:

թիւ յօդուածները եւ վերոյիշեալ անգլերէն գիրքերը, Համլէտ Դաւթեանի *Մեզ անծանօթ Վարդանանց պատերազմը* (Երեւան, 2012) եւ այլ աշխատութիւններն ու յօդուածները, Աշոտ Աբգարեանի *Ինչո՞ւ ցեղասպանութիւն* գիրքը (Երեւան, 2013), Մարք Նշանեանի, Հայր Լեւոն Զէքիեանի եւ շատ ուրիշներու գրութիւնները, որոնց գաղափարները չեն անցնիր նոյն ինքը Օնֆրէի ազրպէյճանական ատելութիւնը յայտարարող հայկական մամուլի ընդմէջէն, եւ ի հարկին, կը քննադատուին ուժեղօրէն։

Կու գայ Օնֆրէի հետոնիզմը։ Ատելութիւն եւ հետոնիզմ անհամատեղելի ըմբռնումներ են։ Հարցազրոյցի մը ընթացքին, Օնֆրէ կը համառօտագրէ հետոնիզմի իր ըմբռնումը. «Հետոնիզմը այն փիլիսոփայութիւններէն մէկն է՝ որ անհամատեղելի է հրէա-քրիստոնէութեան հետ եւ հետեւաբար անտեսուած իշխող պատմագիտութեան կողմէ։ Ի հակադրութիւն միտքի իշխող դպրոցի ջատագոված ճգնաւորական [ascetic] գաղափարականութեան, հետոնիզմը կ'առաջարկէ բարձրագոյն բարիքը նոյնացնել քու անձնական եւ ուրիշներու բարիքներուն հետ։ Հետեւեալ հաւասարակշռութեան ձեռք բերումը՝ իմ հաճոյքս նոյնն է ինչ ուրիշի հաճոյքը, կ'ենթադրէ որ նիւթին մօտենանք տարբեր անկիւններէ՝ քաղաքական, բարոյական, գեղագիտական, տարփական [erotic], կենսաբարոյական [bioethical], մանկավարժական, պատմագիտական...։»[31] Մինչ Օնֆրէ կը քննադատէր ազրպէյճանական ատելութիւնը, ան նկատի ունէր այն հաճոյքը զոր ազրպէյճանցին կրնար ստանալ այդ ատելութենէն, որ մէկ կողմէն կեղծ հաճոյք մըն էր, միւս կողմէն ուրիշը հերքող, ալ ուր մնաց ուրիշին հաճոյքը բաժնող։ Գալով հայկական կողմին, ի թիւս բազմաթիւ օրինակներու, կարելի է վերյիշել ապրիլեան «պատերազմ»-ը, երբ պետականօրէն վերահսկուած պաշտօնական խողովակներուն միջոցով տարածուեցաւ լուր մը՝ թէ իբր հայ ժողովուրդը բուռն եւ ինքնաբուխ փափաք մը ունի պատերազմին վերջնաւարտը տեսնելու Պաքուի մէջ։ Հայկական իշխող մտածողութիւնը ոչ մէկ հակադարձութիւն ունեցաւ (ինչպէ՞ս կրնար ունենալ եթէ այդ իշխողն էր լուրը տարածողը եւ կրնայ ըլլալ նոյնիսկ ստեղծողը) այս ահռելի հայրենասիրութեան դէմ, հայրենասիրութիւն մը՝ որ իր նպատակին հասնելու համար պիտի անցնէր հարիւր հազարաւոր դիակներու վրայէն։ Պատճառաբանուեցաւ, որ այս ենթադրեալ քայլը պատճառա-հետեւանքային արդիւնքն էր ազրպէյճանական նմանատիպ յայտարարութեան՝ թէ Ղարաբաղի լուծումը կը կայանայ Երեւանի գրաւումին մէջ։ Ազրպէյճան կատարեց իր ահռելի յայտա-

[31] 'Michel Onfray: A Philosopher of the Enlightenment', Interview by Jasmina Šopova, *The Unesco Courier*, 2007, Number 9, p. 6:

րարութիւնը, մենք հաստատեցինք այդ աhռելիութիւնը՝ հակառակ կողմնացոյ-ցով։ Իրենք յայտարարեցին, մենք հակադարձեցինք։ Սպանութեան կիրքը չվերացաւ։ Երեւանին կամ Պաքուին տիրանալու հաճոյքները՝ *կեղծ* հաճոյքնե-րը, պիտի իրականանային ուրիշի դժբախտացումով։ Հակա-օնֆրէական հա-ճոյք մը։

Վերջապէս, Օնֆրէի հակա-լիպերալ (լիպերալիզմ՝ դրամատիրութեան իմաստով) կեցուածքը եւ շուկային հանդէպ ունեցած քննադատութիւնը սակա-ւաթիւ երեւցող նիւթեր են թէ՛ սփիւռքեան եւ թէ՛ հայաստանեան մամուլին մէջ, որուն մեծամասնութիւնը, ներառեալ Օնֆրէի ազըրպէյճանական ատելութիւնը բացայայտողները, աջակողմեան ներկայացուցիչներ են՝ գործարարութիւնը գովաբանող, մեծահարուստները գովերգող, նէօլիպերալիզմը քաջալերող եւ յաճախ անձամբ կիրառող։

Ի դէպ, Օնֆրէի համոզումներէն ոչ մէկը կ'անցնի հայկական մեծամասնա-կան մամուլէն։ Բայց տակաւին, իր ազըրպէյճանական ատելութիւնը, օտարա-ցած օնֆրէական մեկնաբանութիւններէն, կը ներկայացուի ամենէն աւելի հակա-օնֆրէական մամուլին ընդմէջէն։ Միայն օտարացումի միջոցով կարելի էր ասիկա իրականացնել։

ԺԲ.- ԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ ՕՏԱՐԱՑՈՒՄԸ ԴԻՄԱԴՐՈՂԻՆ ԴԷՄ

Այսօր, օտարացումը մեր առօրեայ կենցաղին անբաժան ու սիրելի մասն է։ Օտարացումը մեր մտածողութեան անընդհատ ուղեկցողն է, զայն հաստատողն ու ամրապնդողը։ Արդի հասարակութիւնը կը գնահատէ այն անձը, խումբը կամ կազմակերպութիւնը որ կ'արտադրէ նոր օտարացումներ։ Գնահատուած ու փառաբանուած չեն այն անձերը՝ որոնք կը մտածեն ուրիշներու մասին, կ'օգնեն անոնց եւ կապուած կը զգան անոնց հետ։ Գնահատուած չեն այն անձե-րը՝ որոնք կը ձգտին ներքին ներդաշնակութեան, մերժելով իրենց ինքնի տարաբաժանումները։ Գնահատուած չեն այն անձերը՝ որոնք կը հերքեն բոլոր վերոյիշեալները եւ կը մաքառին անոնց դէմ։ Ընդհակառակը, օտարացումին դէմ պայքարողը կը դառնայ տուեալ հասարակութեան անբաղձալի անդամը, կ'օտարացուի հասարակութենէն։

ԺԳ.- ՆԻՑՉԷ ԵՒ ԱՍՏՈՒԾՈՅ ՄԱՀԸ

ԺԹ. դարուն սեւեռած օտարացումին վտանգը ոչ միայն մարքսիսթներն ու անարշիսթները նկատած էին, այլեւ յառաջադէմ փիլիսոփայութիւնն ընդհան-րապէս։

1880-ականներուն, Ֆրիտրիխ Նիցչէ *Զուարթ գիտութիւն* հատորին մէջ կը խօսէր Աստուծոյ մահուան մասին։

Իմաստունը խորհրդանշող Խենթը կը վազէ շուկայ եւ կը սկսի գոչել. ««Ես փնտռո՛ւմ եմ Աստծուն: Ես փնտռո՛ւմ եմ Աստծուն»: Քանի որ այնտեղ հաւաքւածների մէջ շատ էին հէնց նրանք, ովքեր Աստծուն չէին հաւատում, նա մեծ քրքիջ յարուցեց: Ինչ է, Աստուած կորե՞լ է ասաց մէկը: Չլինի՞ թէ նա մոլորուել է, ինչպէս երեխայ ասաց միւսը: Կամ թաքնուե՞լ է: Նա մեզանից վախենո՞ւմ է: Չլինի՞ նաւ է նստել, այստեղից արտագաղթել է, - այսպէս խառնիխուռն գոչում էին նրանք եւ հռհռում: Խենթը նետուեց նրանց մէջտեղը եւ իր հայեացքով շամփրեց նրանց: «Ո՞ւր է Աստուած, - գոչեց նա, - ես ձեզ կ՚ասեմ: Մենք նրան սպանե՛լ ենք՝ դուք եւ ես: Մենք ամէնքս նրան սպանողնե՛րն ենք: Բայց ինչպէ՛ս արեցինք մենք այդ: Ինչպէ՞ս կարողացանք խմելով դատարկել ծովը: Ո՞վ մեզ սպունգը տուեց ջնջելու ողջ հորիզոնը: Ի՞նչ արեցինք մենք, երբ այս երկիրը արձակեցինք իր արեւին կապող շղթայից: Ո՞ւր է երկիրը հիմա գնում: Ո՞ւր ենք գնում մենք: Հեռու բոլոր արեւների՞ց: Արդեօք մենք շարունակ ցած չե՞նք գահավիժում: Եւ ետ, մի կո՛ղմ, առաջ, դէպի բոլոր կողմերը: Կա՞յ դեռեւս վերեւ ու ներքեւ: Մի՛թէ մենք մոլորուած չենք խարխափում, ասես անվերջնական ոչնչում: Մի՞թէ դատարկ տարածութեան շունչը չի փչում մեզ վրայ: Մի՛թէ աւելի չի ցրտել: Մի՞թէ շարունակ չի իջնում գիշերը եւ աւելի գիշեր: Արդեօք չպէ՞տք է օրը ցերեկով լապտերները վառուեն: Դեռ ոչինչ չե՞նք լսում գերեզմանափորների գոռում-գոչիւնից, որ Աստծուն են թաղում: Աստուածային նեխումի հոտը չե՞նք առնում դեռ, - աստուածները նոյնպէ՛ս նեխում են: Աստուած մեռա՞ծ է: Աստուած մեռած էլ կը մնա՛յ: Եւ մե՛նք ենք նրան սպանել: Ինչպէ՞ս սփոփուենք մենք բոլոր մարդասպաններից ամենամարդասպաններս: Սրբազնագոյնն ու հզօրագոյնը, ինչ աշխարհը ցարդ ունեցել է, արնաքամ եղաւ մեր դանակների տակ, - ո՞վ այդ արիւնը կը սրբի մեզնից: Ո՞ր ջրով մաքրագործուենք: Քաւութեան ի՞նչ տօներ, ի՞նչ սրբազան խաղեր պէտք է մենք յօրինենք: Արդեօք այդ արարքի մեծութիւնը չափից աւելի մեծ չէ՞ մեզ համար: Արդեօք մենք ինքներս չպէ՞տք է աստուածներ դառնանք դրան լոկ արժանի երեւալու համար: Երբեք աւելի մեծ արարք չի եղել, - եւ այլեւս ով էլ մեզանից յետոյ ծնուի՝ այս արարքի շնորհիւ նա կը պատկանի էլ աւելի բա՛րձր մի պատմութեան, քան ողջ պատմութիւնն է եղել մինչ հիմա»: - Այստեղ խենթը լռեց եւ դարձեալ նայեց իր ունկնդիրներին, նրանք նոյնպէս լուռ էին եւ ապուշ կտրած նրան էին նայում: Վերջապէս նա նետեց իր լապտերը գետին, այնպէս որ այն փշուր-փշուր եղաւ եւ յանգեց: «Ես չափազանց վաղ եմ եկել, - ապա ասաց նա, - իմ ժամանակը դեռ չի եկել: Զարհուրելի իրադարձութիւնն այդ դեռ ճանապարհին է եւ թափառում է. այն դեռ չի հասել մարդկանց ականջներին: Ժամանակ է պէտք շանթ ու որոտին, ժամանակ է պէտք աստղերի լոյսին, ժամանակ է պէտք արարքներին,

անգամ իրենց գործունէլուց յետոյ, տեսնուելու եւ երեւալու համար: Այս արարքը նրանց համար տակաւին աւելի հեռու է, քան ամենահեռաւոր աստղերը, - բայց, միեւնոյն է, նրանք գործեցի՛ն այդ»: Նաեւ պատմում են, որ խենթը այդ նոյն օրը ներխուժել է տարբեր եկեղեցիներ եւ այնտեղ իր aeternam deo ռեքվիէմն է երգել: Դուրս վռնդուելիս եւ պատասխան տալիս նա շարունակ սոսկ սրանով է առարկել. «Տակաւին ուրիշ ի՞նչ են այս եկեղեցիները, եթէ ոչ Աստծոյ դամբարան եւ մահարձան:»[32]

Իսկ ի՞նչ Աստուծոյ մասին է խօսքը: Անկասկած, դաւանանքային վարդապետական Աստուածը չէ անիկա: Անդրանիկ Ստեփանեան կը բացատրէ. «Նիցշէի «Աստուած մեռած է» խօսքը վերաբերւում է այսպէս կոչուած «փիլիսոփաների Աստծուն», այն Աստծուն կամ Աստծոյ այն «պատկերին», այն հասկացութեանը, որը ստեղծել էին փիլիսոփաները արեւմտեան ռացիոնալ փիլիսոփայութեան աւանդոյթի համատեքստում: Այստեղ խօսքը վերաբերւում է այդ փիլիսոփայութեան յատկապէս այն տարատեսակին, որը հիմնուած է եղել պլատոնականութեան վրայ, ըստ որի, գոյութիւն ունի երկու աշխարհ՝ իրական, ճշմարիտ աշխարհը, որը բացարձակ կեցութիւն է եւ թուացեալ աշխարհը, որը բացարձակ կեցութեան ստուերն է:»[33]

Կը նշանակէ, մարդ անջատուեցաւ իր իսկ կեցութենէն, բաժնուեցաւ ինքն իրմէ եւ իր շրջապատէն: Այս կէտին կը հասնի Ստեփանեան իր յետագայ մեկնաբանութեան մէջ.

«Իսկապէս, «Աստծոյ մահը» քաոս առաջացրեց մարդկանց կեանքում, նրանց աշխարհայեացքում, բարոյական ու արժեքանական համակարգերում, այն ամէնում, ինչը իմաստաւորում ու կենսական բովանդակութեամբ էր լցնում մարդկային կեանքն այս աշխարհում: Այս մէկ՝ «Աստուած» բառում ամփոփուած էր այն ամէնը, ինչն անհրաժեշտ էր մարդուն, ինչը նրա կեանքի հիմքն էր, կեանքի իմաստը եւ վերջնանպատակը: Աստծոյ մահուամբ մարդու ոտքերի տակից կարծես թէ փլուզուեց նրա հիմքը, այն հիմքը, որի վրայ նա իրեն ապահով, հաստատուն ու վստահ էր զգում, քանի որ գիտէր ու գիտակցում էր, որ կանգնած էր ամուր հիմքի, կայուն հենքի վրայ: Չկայ այլեւս որեւէ հիմք, որեւէ հաստատուն մեծութիւն, որի վրայ մարդը կը կարողանայ

---

[32] Ֆրիդրիխ Նիցշէ, *Զուարթ գիտութիւն*, գերմ. թարգմ.՝ Յակոբ Մովսէս, Երեւան, Վան Արեան, 2005, էջ 153-155:

[33] Անդրանիկ Ստեփանեան, ««Մեռած Աստծոյ» ուսմունքի փիլիսոփայական տեսանկիւնները», *Կանթեղ*, գիտական յօդուածների ժողովածու, Երեւան, 2009, թիւ 4, էջ 197-198:

ապահով կանգնել եւ որից նա կը կարողանայ կառչել այս բովանդակ տիեզերքում սեփական վերջաւոր կեցութեան նոյնքան էլ վերջաւոր ու սահմանափակ գիտակցմամբ: «Աստծոյ խաւարումը, - նշել է Մարտին Բուբէրը, - ահա իրական առանձնայատկութիւնը համաշխարհային պատմութեան այն ժամանակի, որի մէջ մենք ապրում ենք: Սակայն դա այնպիսի գործընթաց չէ, որը կարելի է որոշ չափով բաւարար կերպով հասկանալ, դատելով այն փոփոխութիւններից, որ տեղի են ունենում մարդկային ոգում»: Աստծոյ մահը մարդու օտարման պատճառն է, օտարում ինքն իրենից, ուրիշներից, բնութիւնից եւ Աստծուց:»[34]

Աստուծոյ սպանողը մարդն էր: «Մենք նրան սպանե՛լ ենք՝ դուք եւ ես», կը գոռար Նիցչէի Խենթը: Եւ սպաննելով Աստուծոյ, մարդը օտարացաւ կեցութենէն, այսինքն՝ ամէն բանէ:

Մարդն է որ իր կամքով ընտրեց օտարացումը, մարդն է որ ինքզինք օտարացուց իր իսկ կեցութենէն, մարդն է որ մարդուն դարձուց տմարդկային: Մարդն է որ իր ձեռքով ստեղծած օտարացած մարդուն՝ տմարդկային մարդուն ընդմէջէն գործեց ցեղասպանութիւնները եւ զանգուածային սպանութիւնները: Օտարացումը վերանցական ու գերմարդկային ուժերու արդիւնքը չէ: Մարդը՝ որ իր կամքով ընտրեց օտարացումը, միայն իր կամքով կարելի է վերացնել զայն եւ վերականգնել Նիցչէի Աստուածը: Բայց մարդը այդպէս չըրաւ:

## ՑԵՂԱՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԻՆՔՆՕՏԱՐԱՑՈՒՄԸ

Արդարեւ, հայոց ցեղասպանութիւնը տեղի ունեցաւ: Գործածելով Փիթըր Սլոթէրտիյքի ուրիշ առիթով գործածած բառերը՝ այլեւս «անմեղութիւնը կարելի չէ վերականգնել»:[35] Յետցեղասպանական վիճակը անկարող էր վերականգնել նախացեղասպանական վիճակը: Վնասուածքն ու ճեղքուածքը գործըւած էին, այնքան ուժեղ ու կազմակերպուած՝ որ կարելի է խօսիլ նախա- եւ յետ- երկուութեան մասին: Նախացեղասպանական շրջանի մը հնարաւոր փոքրատառ աղէտը՝ սահմանելին, յետցեղասպանական ընկալողականութեան մէջ դարձաւ գլխագիր Աղէտ՝ անսահմանելի: Անսահմանելի, որովհետեւ, ինչպէս Մարք Նշանեան կը մեկնաբանէ, աղիտալի ոճիրին ետեւը կանգնած է տառապանքներու հանրագումարը (the sum of sufferings). «Տառապանքներուն

---

[34] Անդրանիկ Ստեփանեան, նշ. յօդ.ը, էջ 198-199:

[35] Peter Sloterdijk, *Critique of Cynical Reason*, translation by Michael Eldred, Minneapolis, London: University of Minnesota Press, 2001e (1987), p. 7:

*համրագումարը* ճշգրտօրէն անըմբռնելի է իբրեւ ամբողջութիւն։ Թերեւս կը գտնուին այս կամ այն տառապանքի, ոճիրի եւ ցաւի «պատկերներ»։ Այսուամենայնիւ Աղէտը մեզի կը պարտադրէ պատկերել աւելի քան ոճիր, ցաւ եւ մահ։ Ան կը հրաւիրէ, կը պահանջէ ամբողջութեան պատկեր մը՝ *համրագումարը*։ Այս հրաւէրը եւ այս պահանջը դժուար է ըմբռնել։»[36]

Մարք Նշանեանին հետեւելով, տառապանքներուն հանրագումարը կ՚արգիլէր սուգը։ Եւ շուրջ յիսուն տարի այս արգելումը արգելք հանդիսացաւ ստեղծելու Աղէտի գրականութիւն կամ սուգի գրականութիւն.

«Գրականութիւնը, այն իմաստով որ սովորաբար սահմանուած է, կը ջնջէ սուգի արգելումը։ Հետեւաբար, ան անհրաժեշտաբար կը ջնջէ այն վտանգաւոր տարածութիւնները ուր մարդկային լեզուին մէջ պատկերումը կը հասնի իր սահմանները։ 1915-էն ետք, անհրաժեշտ էր սպասել յիսուն տարի որպէսզի Ի. դարու հայ մեծ գրողները (Զարեհ Որբունի Ֆրանսայի մէջ, Գուրգէն Մահարի Հայաստանի մէջ) բարձրացնէին իրենց գրական կոթողները իբրեւ սուգի կոթողներ։»[37] Խօսքը վաթսունականներու կէսերու մասին է։

Վաթսունականներու կէսերը, կամ Եղեռնի յիսնամեակի ժամանակաշրջանը, գիտակցաբար փորձեց ջնջել սուգի արգելումը, ոչ միայն գրականութեան ասպարէզին մէջ։

Վաթսունականները Խորհրդային Հայաստանի մշակութային արդիականութեան (modernism) շրջանն էր։ Բայց նաեւ անիկա արեւմտեան արուեստի եւ գրականութեան նոր աւանկարտիզմի եւ փորձառական (experimental) ուղղութիւններու շրջանն էր։ Միաժամանակ, անիկա աւանդական սփիւռքի յետքայլի շրջանն էր, երբ այլեւս շրջանցած ըլլալով հանդերձ գաղթական-պանդուխտ տրամաբանութեան իրավիճակը, սփիւռքը մերժեց թէ՛ արդիականութիւնը եւ թէ՛ աւանկարտիզմը։ Աւանդական սփիւռքը մերժեց, եւ տակաւին կը մերժէ, հայապահպանումէն անցնիլ դէպի հայազարգացում։

Վաթսունականները հասարակական շարժումներու շրջանն էր։ Հայաստանի մէջ Եղեռնի յիսնամեակին առիթով 1965-ին տեղի ունեցած ինքնաբուխ ցոյցերը շփոթութեան մատնեցին իշխանութիւնները, հաւանաբար զարմացնելով նոյն ինքը ցուցարարներուն։ Բայց նաեւ այդ տարիները համաշխարհային ըմբոստութեան տարիներն էին՝ որոնք իրենց գագաթնակէտին հասան 1968

[36] Marc Nichanian, ‘Catastrophic Mourning’, *Loss: The Politics of Mourning*, edited by David L. Eng and David Kazanjian, Berkeley, Los Angeles, London: University of California Press, 2003, p. 111:

[37] Անդ, էջ 111:

Մայիսի ֆրանսական յայտնի ցոյցերով։ Աւանդական սփիւռքը դարձեալ հեռու մնաց նման որեւէ շարժումէ, որ կրնար տանիլ դէպի ներքին իշխանափոխութիւն կամ սերնդափոխութիւն հակաիշխանական լուծումով։

Վերջապէս, վաթսունականները «հայկական հարց»-ին վերափոխումն էր «հայ դատ»-ին, իր հետ վերափոխելով ցեղասպանական աղէտի ամբողջ ըմռնողականութիւն մը, ինչպէս կը փորձեն բացատրել Անահիտ Քասապեան եւ Տաւիտ Գազանճեան.

«1915-ի ցեղասպանութենէն ետք, միջազգային հայկական համայնքը խօսեցաւ գլխաւորապէս «հայկական հարց»-ի առումով, նախադասութեան դարձուածք մը որ տակաւին գործածութեան մէջ է այսօր։ Բայց 1960-ականներուն սփիւռքի մէջ կատարուած բարդ զարգացումներէ ետք, Դաշնակցական կուսակցութիւնը աւելի հետեւողականօրէն խօսեցաւ հայկական *հարց*ին մասին եւ իրենց պահանջներն ու հարթակները արտայայտելու համար գործածեց դատական հետապնդումի եւ փոխհատուցումի տրամախօսութիւնը [discourse]։ Հայկական *հարց*էն կերպարանափոխուելով հայկական *դատ*ի, ցեղասպանութեան եւ սփիւռքի պատմութիւնը ներկայացաւ իբրեւ դատական-քաղաքական պատմութիւն մը՝ ուր միակ կուսակցութիւն մը (հայերը) հետամուտ եղաւ վճռական եւ հատուցողական դատավճիռի օրինական եւ բարոյական անարդարութեան (ցեղասպանութիւն) համար։ Մինչ այս կերպարանափոխութիւնը 1960-ականներուն ունէր իր ուժեղ մարտավարական արդարացումները, իր գինը եւ սահմանափակումները այնքան աչքառու դարձան այսօր որ անկարելի է զանոնք անտեսել։ Հարց մը վերածելով դատի, «հայեցիութեան» տեւականօրէն անսահման, ազգագրա-քաղաքական հիւսուածքը կը մխուի սահմանագծուած, հաշուարկելի եւ փորձականութեամբ սահմանելի իրադարձութեան մը մէջ։ Իբրեւ հետեւանք, հիւսիսային եւ արեւմտեան սփիւռքը կ'ողողուի տրամախօսութեամբ [discourse] մը՝ որ կը թուի մոռնալ վերափոխութեան մարտավարական բնոյթը։ Այս տրամախօսութիւնը կը հաւատայ՝ թէ ցեղասպանութիւնը սգալու աշխատանքը *վերջապէս* կրնայ իր աւարտին հասնիլ եւ ցեղասպանական արդարութեան կոչը կրնայ *ամբողջապէս* երաշխաւորուիլ դատական ճանաչումով եւ փոխհատուցումով։»[38]

Այս վաթսունականներուն, երբ մէկ կողմէ՝ ինչպէս Նշանեան նշեց, գրականութեան համար կարելի եղաւ արգիլել սուգի արգելումը (Որբունի, Մահարի),

[38] Anahid Kassabian, David Kazanjian, 'Melancholic Memories and Manic Politics: Feminism, Documentary, and the Armenian Diaspora', *Feminism and Documentary*, edited by Diane Waldman, Janet Walker, p. 204-205:

միւս կողմէ՝ անսահմանելին սահմանելի դարձնելու, անսահմանը սահմանագիծի մէջ տեղաւորելու, աղէտի փորձառութիւնը օրէնսդրական հաշուարկումներու վերածելու, ազգային իրադարձութիւնը մարտավարական գիտութեամբ փոխարինելու շրջանին, մեծակշիռ դարձաւ հիմնահոսանքային ցեղասպանական ուղղութիւն մը՝ ցեղասպանութիւնը դնելով ինքնօտարացումի ճամբուն վրայ։

Ցեղասպանական ինքնօտարացումը կարելի է բացատրել օրինակներով։ Կանգ պիտի առնեմ լոկ քանի մը նմոյշի վրայ.

1. Կարեւոր օրինակ մը արդէն մանրամասն ներկայացուցած եմ «Ֆրանսան՝ իբրեւ նմոյշ հայոց ցեղասպանութեան ճանաչումին» գլուխին մէջ։ Ֆրանսան անձամբ կատարած է զանգուածային սպանութիւններ Ալճերիոյ ինչպէս նաեւ ափրիկեան բազմաթիւ գաղութացուած երկիրներու մէջ, անձամբ պատասխանատու է Ռուանտայի ցեղասպանութեան, իրականացուցած է Քոմիւնի կոտորածը, անձամբ շահագործած է հայ լեգէոնականները գրաւելու համար Կիլիկիան եւ ապա զայն յանձնելու Թուրքիային՝ ասպարէզ բանալով կիլիկեան ցեղասպանութեան։ Այս բոլորը բաւարար է որպէսզի Ֆրանսան յանձնուի «միջազգային» դատարաններուն։ Բայց ահաւասիկ, այս նոյն Ֆրանսան է որ կը ստանձնէ ուրիշ ոճիրի մը՝ հայոց ցեղասպանութեան, պաշտպանի դերակատարութիւնը, հայերուս ամենայն յօժարութեամբ եւ մասնակցութեամբ։

Ֆրանսայի իմփերիալիսթական մօտ անցեալը ու նոր-իմփերիալիսթական ներկան կը ներկայացնեն երկիրի արդիական դիմագիծի ամենակարեւոր, գրեթէ գերիշխող, քաղաքական յատկանիշներէն մէկը։ Որքան ալ փորձենք անտարբեր մնալ, ֆրանսական քաղաքական գործունէութիւններուն եւ որոշումներուն մէջ իմփերիալիսթական եւ նոր-իմփերիալիսթական իմաստները ակներեւ են, կենդանի ու բացայայտ։ Ոչ միայն պատմական իմաստը առկայ է, այլեւ իր ներկայ գործողութիւնները ուղղուած են վերարտադրելու ինքնապատկեր մը՝ որ հակապատկերն է նոր-գաղութատիրական նկրտումներուն։ Հայոց ցեղասպանութեան ընդունումը եւ անոր անընդհատ կրկնութիւնը կը հանդիսանան ֆրանսական այդ բարի ու մարդասէր ինքնապատկերին պահպանումն ու ամրացումը։ Հայոց ցեղասպանութիւնը ընդունելով ֆրանսական «հոգատարութիւնը», իր մէջ ընդունած կ՚ըլլայ իրմէ բոլորովին օտար իմաստ մը՝ որ կը հաստատէ իմփերիալիզմը եւ կը գործադրէ նոր-իմփերիալիզմը։ Իսկ մենք՝ հայերս, ցեղասպանութեան համար մեր մղած պայքարին համար գործածած կ՚ըլլանք այն նոյն իմփերիալիսթական գործիքները որոնք պատճառ հանդիսացած էին միեւնոյն ցեղասպանութեան։

Կայ նաեւ դատական-լռպպիական խնդիրը, որուն հիմքը կը կազմէ դրամագլուխը։

Մշակութային արդիւնաբերութեան (culture industry) մէջ իմաստային տեղափոխութիւններու երեւոյթը մտահոգած է նէօ-մարքսիսթ մտածողներ Մաքս Հորքհայմէրին եւ Թէոտոր Ատորնոյին, որոնք կը գրեն՝ թէ արդի շրջանին, «[ա]յն ինչ որ կարելի է կոչել սպառողական [use value] մշակութային արժէքներու ընկալման համար՝ կը փոխարինուի փոխանակային արժէքով [exchange value]»։[39] Ատորնօ ուրիշ տեղ մը կը բացատրէ. «Եթէ ընդհանուր առմամբ ապրանքը կը ներառնէ փոխանակային արժէք եւ սպառողական արժէք, ապա զուտ սպառողական արժէքը՝ որուն պատրանքը մշակութային ապրանքները պէտք է պահպանեն մեր կատարեալ դրամատիրական հասարակութեան մէջ, այլեւս փոխարինուած է զուտ փոխանակային արժէքով, որ շարունակելով մնալ փոխանակային արժէք՝ խաբուսիկօրէն կը ստանձնէ սպառողական արժէքի դերակատարումը։»[40]

Մարքսի վրայ հիմնուած Ատորնոյի դրոյթը կը տարածուի կեանքի բոլոր ոլորտներուն վրայ՝ արուեստ, մշակոյթ, տնտեսութիւն, քաղաքականութիւն, օրէնսդրութիւն, լրատուութիւն եւ այլն։

Սպառողական արժէքը այն արժէքն է որ կը գտնուի գիտելիքի մէջ, կը բխի անոր ներսէն եւ կը ներկայացնէ անոր բնորոշիչ ներյատկութիւնը։ Հայոց ցեղասպանութեան սպառողական արժէքներէն մէկը, կամ գլխաւորը, կարելի է համարել Աղէտը։ Մինչդեռ փոխանակումի արժէքը սպառողականէն անդին կերտուած արժէք մըն է եւ տնտեսական առումով հոմանիշն է մեր ամէնօրեայ խօսակցութեան մէջ դիտաւորեալ անհասկացողութեամբ գործածուող «շուկայի (կամ շուկայական) արժէք» խօսքին։ Դրամատիրութեան ներկայ շրջանին, գիտելիքը իր արժէքը կը ստանայ փոխանակային արժէքէն։

Հայոց ցեղասպանութիւնը դատարանական եւ խորհրդարանական ընդունումներու եւ ճանաչումի առարկայ դարձնելու համար անհրաժեշտ են փաստաբաններ, քաղաքագէտներ եւ մանաւանդ լոպպիսթներ։ Շատ քիչ կը յայտարարուի այն կէտը՝ որ բոլորին շարժող հիմնասիւնը դրամն է։ Իրաւական,

---

[39] Max Horkheimer and Theodor W. Adorno, *Dialectic of Enlightenment: Philosophical Fragments*, edited by Gunzelin Schmid Noerr, translated by Edmund Jephcott, Stanford: Stanford University Press, 2002, p. 128։

[40] Theodor W. Adorno, 'On the Fetish Character in Music and the Regression of Listening', *The Culture Industry: Selected Essays on Mass Culture*, edited with introduction by J. M. Benjamin, Routledge, 2000, p. 35։

դիւանագիտական եւ լոպպիական աշխատանքները կը պահանջեն հսկայ դրամական ներդրումներ։ Ասիկա չի նշանակեր լոպպիական կողմին անկարեւորութիւնը կամ վաղանցիկութիւնը, այլ պարզապէս կը նշանակէ՝ որ առանց դրամագլուխի մնացած բոլորը կը դառնայ անգործունեայ ու անկարող։ Այս դրամագլուխն է որ կը ներկայացնէ փոխանակային արժէքը ցեղասպանական ճանաչումին մէջ, իր հետ բերելով նաեւ դրամագլուխի հետ կապուած բոլոր արժէքային առնչութիւնները (ինչպէս վերը նշեցի՝ անսահմանելին սահմանելի դարձնել, անսահմանը սահմանագիծի մէջ տեղաւորել, աղէտի փորձառութիւնը օրէնսդրական հաշուարկումներու վերածել, ազգային իրադարձութիւնը մարտավարական գիտութեամբ փոխարինել), տանելով մինչեւ ցեղասպանութեան հնարաւոր արդիւնաբերութիւնը։ Աղէտը՝ իբրեւ սպառողական արժէք, այլեւս անկարող է ինքզինք արժեւորել։ Փոխանակային արժէքի տարողութեան եւ ուժի միջոցով է որ հիմք կը դրուի ցեղասպանական արժեւորումի ճամբան, մինչդեռ ցեղասպանութեան բուն ու ներյատուկ արժէքը՝ սպառողական արժէքը, արտայայտուած Աղէտի եւ նման յատկութիւններու մէջ, կ՚ենթադրուէր բացայայտօրէն տեսանելի ըլլալ ցեղասպանութեան մէջ։

Ֆրանսայի օրինակը առանց դժուարութեամբ կարելի է տարածել միւս երկիրներուն վրայ։

2. Ներկայ դարասկիզբը Թուրքիոյ Եւրոմիութիւն մուտք գործել-չգործելու բուռն շրջանն էր։ Թուրք իշխանութիւնները ամէն կերպ կը փորձէին «քաղաքակիրթ» Եւրոպային փաստել որ իրենք եւս «քաղաքակիրթ» են։ Ճիշդ այդ շրջանին էր որ Եգիպտոս եկաւ թուրք մը (Ա.)՝ գնելու եգիպտահայ նկարիչներու գործերը։ Եգիպտահայ ազգային մը (Բ.) ստանձնեց միջնորդութեան պարտականութիւնը, անշուշտ տոկոսային շահ մը ունենալով իւրաքանչիւր վաճառքէն։ Բ.-ը առաջարկեց այցելել բնակարանս նկարներ գնելու։ Մերժեցի։ Ըսաւ՝ որ Ա.-ը շատ կրթուած ու զարգացած անձ մըն է։ Արդարեւ, ոչ մէկ պատճառ կայ որ թուրքը անպայմանօրէն հակառակը ըլլայ։ Ըսաւ նաեւ՝ որ Ա.-ը հայերուն շատ կը սիրէ եւ իր նպատակն է հայկական նկարներ հաւաքել եւ պահպանել... Թուրքիոյ մէջ։ Անշուշտ, Բ.-ը անկարող եղաւ հաստատել Ա.-ի հայասիրութեան հարցը, ոչ ալ կարողացաւ ապացուցանել նկարներու պահպանումի վարկածը։ Կրնայ ըլլալ այս բոլորը ճիշդ է։ Բայց մինչեւ այդ ճշդութիւնը տեսանելի գործողութիւններով ցուցադրուած չըլլայ, մինչեւ Ա.-ին ինքնութիւնը բացայայտուած չըլլայ, խնդիրը կը մնայ առկախ։ Ինչպէ՞ս կրնանք վստահ ըլլալ որ ան թրքական իշխանութիւններուն ներկայացուցիչը չէր։ Ինչպէ՞ս կրնանք վստահ ըլլալ որ Թուրքիան Եւրոմիութեան անդամակցելու զանգուածային լրատուամիջոցային բանակռիւներու ամենաթէժ պահուն, յանկարծ յայտնուի

հայկական նկարներով մտահոգուած թուրք մը։ Դարձեալ այս բոլորը կրնայ անհիմն ըլլալ։ Բայց քանի որ հակառակը հիմնաւորուած չէ, զգուշութիւնը պարտադիր է։ Հակառակ այս բոլորին, բազմաթիւ նկարներ ծախուեցան ու գացին Թուրքիա։

Ես, անձամբ, կոմնակից եմ լուրջ ու տիալեքթիքական յարաբերութիւններ մշակել թուրք մտաւորականներու հետ, այն մտաւորականներուն՝ որոնք իրազեկ են ցեղասպանութեան ողբերգական ելքերուն մասին բայց պետական բռնադատութենէն խուսափելու համար կը վախնան բացայայտօրէն արտայայտուիլ, կամ այն մտաւորականներուն՝ որոնք տեղեկութիւններու պակաս ունին բայց պատրաստ են լսելու, մտածելու, խորհրդակցելու եւ բանակցելու։ Ասիկա էր Հրանդ Տինքի բռնած ճամբան։ Բայց բոլորովին ուրիշ հարց է յարաբերիլ անծանօթներու հետ՝ որոնց բուն նպատակները անյայտ են եւ որոնց հետ կայ միայն առեւտրային կապ։

Նկարներու այս դէպքը կը բացայայտէ օտարացումներու շարք մը, որոնցմէ յիշեմ քանի մը հատ.

ա. Ազգայինի եւ հայապահպանումի պատումը մշտաներկայ է եգիպտահայ գաղութին մէջ՝ մամուլ, ձեռնարկ, հանդիսութիւն, ակումբ, եկեղեցի, շնորհանդէս։ Նկարներու վաճառքը դէպի Թուրքիա՝ այնտեղ վերջնական բնակութիւն հաստատելու համար, անհամատեղելի է այս պատումին հետ։ Հակառակ որ վաճառքը կատարուեցաւ առանց գաղտնապահութեան եւ եգիպտահայ վերնախաւի բազմաթիւ անդամներու գիտակցութեամբ, խնդիրը ոչ մէկ յուզում կամ իրարանցում յառաջացուց։ Անձամբ խօսեցայ հայապահպանումի պատումը անընդհատ կրկնող քանի մը անձի հետ։ Խօսքս ունեցաւ երեք հակազդեցութիւն՝ բոլորն ալ սպասելի։ Առաջինը ցաւ յայտնեց եւ անմիջապէս մոռցաւ դէպքը։ Երկրորդը ինծի դարձուց տարօրինակ անձ՝ որ զբաղուած եմ մանր ու անիմաստ բաներով եւ կը խոչընդոտեմ ուրիշներու (Բ.-ին) անձնական շահերը։ Երրորդը ուղղակի ըսաւ՝ թէ իր ձեռքը ոչինչ կը գտնուի։ Յիշենք՝ որ այս նոյն հայապահպանողները նաեւ հողային պահանջատիրութեան առաջամարտիկներն են։ Արեւմտահայաստանը ազատագրել կարելի է, բայց այստեղ, քանի մը մեթր հեռու գտնուող նկարներու կասկածելի վաճառքին կասեցումը անկարելի է։ Պահանջատիրութիւնը՝ իբրեւ ցեղասպանական լուծումի գործընթացի վերջին փուլ, բնական երեւոյթ է, իսկ այդ նոյն ցեղասպանութեան լուծումին խոչընդոտ հանդիսացող դէպքին (հայկական նկարներու վերջնական հանգրուանումը Թուրքիոյ մէջ, ուր հնարաւոր է զանոնք օգտագործուին Եւրոպային փաստելու համար թուրք իշխանութիւններուն մարդասիրական եւ ոչ թէ ցեղասպա-

նական դէմքը, դժուարութիւն մը եւս յարուցած ըլլալով պահանջատիրութեան գործադրութեան) խոչընդոտումը, տարօրինակ երեւոյթ է։

բ. Բ.-ը՝ որ որոշ գումար վաստակեցաւ այս գործընթացէն, գաղութին մէջ գործող շատ ծանօթ անձ մըն է, որուն յաճախ կը յանձնուի հայերը «օտարներ»-ուն ծանօթացնելու դերակատարութիւնը։ Օտարներուն ներկայացնելու այս գործընթացը եւ անձերուն ընտրութեան իրաւունքը խստօրէն վերապահուած է քանի մը անձերու։ Բ.-ը ոչ թէ ընտրելու իրաւունք ունեցողներէն է այլ ընտրուելու թոյլտուութիւն ունեցողներէն։ Ցեղասպանութեան 100-ամեակին առիթով ան երկիցս ընտրուեցաւ ցեղասպանեալ հայութիւնը եգիպտացիին ներկայացնելու գործին։ Ոչ ոք փորձեց հարցնել՝ թէ ինչպէ՞ս մէկ կողմէ ցեղասպանական պահանջատիրութեան գործընթացը հնարաւոր խանգարող մը կը մասնակցի ցեղասպանական ճանաչումի գործընթացին։ Կեանքի կոչուեցաւ ցեղասպանական ինքնօտարացումը։

գ. Բ.-ի միջոցով Ա.-ը կը մտնէ շատ եգիպտահայերու տուներ։ Ի միջի այլոց, կը մտնէ Գ.-ին բնակարանը։ Գ.-ը տարիքաւոր մեծահարուստ անձ մըն է, որ իր ամբողջ կեանքի ընթացքին եգիպտահայկական բեմերէն գոռացած է ցեղասպանութիւն եւ պահանջատիրութիւն։ Ան բարձր շքանշանակիր մըն է։ Գ.-ին երեսանց ճակատեցի Ա.-ին այցելութեան մասին։ Գ.-ը պատասխանեց՝ որ թէեւ գնելու մտադրութեամբ Ա.-ը եկաւ իր մօտ, բայց բացայայտելով որ ան գող-աւազակ մըն է (Գ.-ը սկսաւ շատ սուր բառերով գրեթէ հայհոյել թուրք ցեղն իր ամբողջութեամբ) զայն ճամբեց իր բնակարանէն։ Այսինքն, սկզբունքօրէն խնդիր չունէր անյայտ թուրքին իր նկարները ծախել։ Առեւտուրը տեղի չունեցաւ միայն երբ Գ.-ը բացայայտեց Ա.-ի «աւազակութիւնը», որ շուկայական լեզուով պէտք է հասկնալ՝ թէ Ա.-ի դրամական առաջարկը չէր բաւարարած մեծահարուստ Գ.-ին (ի դէպ, Գ.-ը իր հարստութեան մէկ մասը կուտակած է հայ նկարիչներու գործերու առեւտուրով)։ Իսկ Գ.-ը անխռով կերպով շարունակեց իր գործունէութիւնը եւ ցեղասպանութեան 100-ամեակի կարեւոր կազմակերպողներէն մէկը եղաւ։

Բ.-ի, Գ.-ի եւ իրենց շրջապատներուն վարքագիծը անգամ մը եւս կը հաստատէ ցեղասպանական ինքնօտարացումը, երբ մենք՝ հայերս, առաջ նետելով ցեղասպանական հռետորական մեծ պատում մը, չենք փափաքիր դիմագրաւել ու արգիլել այդ նոյն պատումին վնաս հասցնող որոշ գործարքներ, չըսելու համար որ յաճախ այդ պատումը մէկ հարթակի վրայ առաջ նետողները նոյն անձերն են որոնք ուրիշ հարթակի մը վրայ կը գործեն իրենց իսկ առաջ նետած պատումին հակառակ ուղղութեամբ։ Ինքնօտարացում՝ անկասկած։

3. 2008 Յունուար 18-ին, Իսթանպուլի Պողազիչի Համալսարանին մէջ կայացած Հրանդ Տինքի Յիշատակի Դասախօսութեան, հնդիկ մտաւորականուհի եւ ակտիւիստ Արունտհաթի Ռոյ կը կարդայ անգլերէն լեզուով զեկուցում մը՝ *Լսել մարախներուն՝ ցեղասպանութիւն, ուրացում եւ հռչակում*:[41]

Ռոյ յստակ քննադատական պատգամ մը կ'ուղղէ հայկական, եւ բոլոր, ցեղասպանութիւնները ուրացողներուն, իսկ Հրանդ Տինքի սպանութեան պատճառը կը դնէ թրքական պետական չվիճարկուող գաղափարախօսութեան ծիրին մէջ: Ռոյ հայկական ցեղասպանութիւնը կը կապէ բազմաթիւ այլ ցեղասպանութիւններու հետ, ինչպէս՝ մահմետականներուն ցեղասպանութիւնը Կուճըրաթի (Gujarat) մէջ (2002), Սուհարթոյի, Փոլ Փոթի, Սթալինի, Մաոյի զանգուածային սպանութիւնները Ինտոնեսիայի, Քամպոտիայի, Խորհրդային Միութեան եւ Չինաստանի մէջ, նախքան 2003-ի իրաքեան արշաւանքը՝ ՄԱԿ-ի պատժամիջոցներուն պատճառած միլիոնաւոր իրաքցիներուն մահը, Քոլումպուսի ամերիկեան «գիւտ»-էն ետք բնիկ բնակչութեան 90 տոկոսին ոչնչացումը, 30 միլիոն ափրիկեցիներու ստրկացումը ամերիկացիներուն կողմէ՝ պատճառելով շուրջ 15 միլիոն մահ, Նացիներու ցեղասպանումը ոչ միայն հրեաներուն, այլ գնչուներուն, համայնավարներուն, միասեռականներուն եւ միլիոնաւոր ռուս բանտարկեալներուն, Իսրայէլի ցեղասպանութիւնը պաղեստինցիներուն, եւ այլն, եւ այլն: Ան անուղղակի կերպով կը հերքէ նաեւ հայկական ցեղասպանութիւնը իբրեւ Ի. դարու առաջին ցեղասպանութիւն, նշելով 1904-ի Հերերօ ժողովուրդին բնաջնջումը գերմանացիներուն կողմէ:

Ուրեմն, Ռոյ իր համակողմանի մեկնաբանութիւններով կը յիշատակէ ցեղասպանութիւններ, որոնց անունը անգամ չենք ուզեր լսել մենք՝ հայերս: Ապա կը յիշէ Հերերոյի ցեղասպանութիւնը՝ որ կը խախտէ հայկական ինքնասիրութիւնը իբրեւ Ի. դարու առաջին ցեղասպանութեան կրող: Հակառակ այս բոլորին, այս դասախօսութեան առիթով, Փետրուար 2-ին, հայկական հիմնահոսանքային մամուլ մը հեռախօսային հարցազրոյց մը կը վարէ Ռոյի հետ, հարցումներ յղելով միայն, միայն ու միայն հայկական ցեղասպանութեան մասին:[42] Ինչպէս կ'երեւի պատասխաններէն, թէեւ Ռոյ կը փորձէր միակողմանի

---

[41] Զեկուցումին բնագիրը կարելի է կարդալ Հրանդ Տինք Հիմնարկի կայքէջին մէջ՝ http://www.hrantdink.org/picture_library/arundhati-2008-eng.pdf: Զեկուցումը տպագրուած է հեղինակի յօդուածներու ժողովածուին մէջ՝ Arundhati Roy, *Field Notes on Democracy: Listening to Grasshoppers*, Chicago: Haymarket Books, 2009, pp. 141-168:

[42] 'Of Grasshoppers and Men: An Interview with Arundhati Roy', *Asbarez*, 15 February 2008, http://asbarez.com/56685/of-grasshoppers-and-men-an-interview-with-arundhati-roy/:

հարցումներուն պատասխանել վերը յիշուած իր գաղափարներուն ընդմէջէն, բայց, միեւնոյնն է, հեռախօսային հարցազրոյցը կը պարտադրէր իր սահմանափակումները, չյիշելու համար բուն հարցումներուն հրամայականը։

Կը խանդավառուինք՝ որ հնդկուհին հետաքրքրուած է մեր ցեղասպանութեամբ, առանց ոչ մէկ հետաքրքրութիւն ցուցաբերելու *հնդկուհիին* (Կուճըրաթ) ցեղասպանութեան հանդէպ։ Մինչ Ռոյ կը շեշտէր *բոլոր* ցեղասպանութիւնները, եւ այդ բոլորին մէջ կը տեսնէր մերը, մենք Ռոյի ընդմէջէն կը տեսնէինք *մեր* ցեղասպանութիւնը, չտեսնելով բոլոր ցեղասպանութիւնները։ Ռոյի համակեցութիւնը կը վերածէինք միակեցութեան, Ռոյի խօսքերուն ընդմէջէն հասնելով իր ցանկացածի ճիշդ հակառակին։

Եւ ճիշդ այս է օտարացումը։ Մեզի չի հետաքրքրեր Ռոյի *միւս* գաղափարները, թէեւ Ռոյին կը հետաքրքրէր *բոլոր* գաղափարները։ Մենք չենք յուզուիր *ուրիշ*ներու ցեղասպանութեամբ (այդ ուրիշները հասկնալով շատ լայն իմաստով եւ ոչ թէ քանի մը սահմանափակ ցեղասպանութիւններով), թէեւ Ռոյ յուզուած է *մեր* ցեղասպանութեամբ։

Ասիկա կարելի է ընել հետեւելով երեք քայլերով.

ա. Վերացնել բնաբանը՝ մտաւոր ծածկը, եւ ընդհանուր ուղղուածութիւնը։

բ. Վերանալով մտաւոր ծածկը, կարելի կ՚ըլլայ բովանդակային գիտելիքները ընդունիլ իբրեւ առարկայականացուած անջատ տեղեկութիւններ՝ առանց ենթակայական եւ տիալեքթիք կապի։ Այսինքն, գիտելիքները դիւրութեամբ կ՚օտարանան իրարմէ։

գ. Անջատ գիտելիք-տեղեկութիւններէն ընտրել նպաստաւորները եւ զանոնք տեղաշարժելով փոխադրել բոլորովին այլ բնաբանի մէջ։

Ցեղասպանական ինքնօտարացումի այս երեք օրինակները լոկ նմոյշներ են։ Անոնց նմանները, կրկնօրինակները եւ տարբերակները դիւրութեամբ կարելի է գտնել հիմնահոսանքային մտածողութեան ու գործելակերպին մէջ։

Վերջապէս պէտք է ընդունինք, որ մէկ մը որ ընդունեցինք մեր օտարացումը ուրիշներէն, պէտք է ակնկալենք նաեւ ուրիշներուն օտարացումը մեզմէ։

# ՎԵՐՋԱԲԱՆ

Կարելի՞ էր արդեօք արգիլել հայոց ցեղասպանութիւնը եւ բոլոր ցեղասպանութիւնները։

Թէոտոր Ատորնօ հաւատացած էր՝ որ կարելի էր կանխել Աուշվիցը, եթէ վերանար մարդոց միջեւ գոյութիւն ունեցող պաղութիւնը, ուրեմն՝ օտարացումը.

«Եթէ պաղութիւնը մարդաբանութեան [anthropology] հիմնական յատկանիշ մը չըլլար, այսինքն՝ մարդոց կազմաւորումը ըլլար ինչպէս որ իրօք մարդիկ գոյութիւն ունին հասարակութեան մէջ, եթէ մարդիկ խորապէս անտարբեր չըլլային ոեւէ անձի հետ տեղի ունեցած որեւէ պատահարի հանդէպ եւ իրենց հոգատարութիւնը չսահմանափակէին միայն սերտ, ձեւով մը շօշափելի շահով կապուած մարդոց նկատմամբ, ապա Աուշվիցը պիտի դառնար անկարելի, մարդիկ պիտի մերժէին զայն ընդունիլ։ Հասարակութիւնը իր ներկայ (եւ անկասկած այնպէս ինչպէս արդէն քանի մը դար է գոյութիւն ունեցող) ձեւով, փոխանակ հիմնուած ըլլալու, ինչպէս Արիստոտէլէն ի վեր գաղափարախօսապէս կ'ենթադրուէր, հրապուրանքի կամ գրաւչութեան վրայ, հիմնուած է անձնական շահու հետապնդումի վրայ՝ ընդդէմ մնացած բոլորի շահերուն։ Ասիկա տեղաւորուեցաւ մարդոց նկարագիրի ամենախոր կեղրոնը։ Դիտարկութեանս հակասող այսպէս կոչուած *միայնակ բազմութեան* ամբոխավարական մղումը կը ներկայացնէ այս ընթացքին հակազդեցութիւնը։ Ան կազմուած է իրար հետ միացած կատարելապէս պաղ մարդոցմէ՝ որոնք չեն կարող տոկալ իրենց սեփական պաղութիւնը բայց եւ այնպէս չեն կարող փոխել զայն։ Այսօր, իւրաքանչիւր անձ՝ առանց բացառութեան, շատ քիչ չափով սիրուած կը զգայ որովհետեւ իւրաքանչիւր անձ անկարող է բաւարար չափով սիրել։ Ուրիշներու հետ նոյնանալու անկարողութիւնը անվիճելիօրէն հանդիսացաւ այն ամենակարեւոր հոգեբանական պայմանը՝ որուն շնորհիւ կարելի եղաւ Աուշվիցի նման երեւոյթի մը իրագործումը աւելի կամ պակաս քաղաքակրթուած եւ անմեղ մարդոց մէջ։ Այն ինչ կը կոչուի համակիր ուղեկցող [fellow traveler] հիմնուած է նախ եւ առաջ գործարարական շահու վրայ՝ մարդ ամէն բանէ

առաջ կը հետապնդէ իր սեփական օգուտը եւ, պարզապէս ինքզինք վտանգի չենթարկելու համար, շատ չի խօսիր: Ասիկա հաստատուած կարգավիճակի [status quo] ընդհանուր օրէնքն է: Սարսափին տակ տարածուած լռութիւնը կը հանդիսանար ընդամէնը աւոր հետեւանքը: Ընկերային համաստեղութեան պաղութիւնը՝ մեկուսացած մրցակցողը, իբրեւ անտարբեր ուրիշներու ճակատագիրին, նախապայմանն էր այն իրողութեան՝ թէ միայն շատ քիչ մարդիկ հակազդեցին: Դահիճները գիտեն ասիկա, եւ պատրաստ են զայն վերստին փորձարկել:»[1]

«Աուշվից» բառը փոխարինեցէք «Հայոց ցեղասպանութեամբ» կամ որեւէ ցեղասպանութեամբ եւ կը ստանաք ցեղասպանութեան մը գաղափարական կորիզը՝ օտարացումը, հետեւաբար, անոր դեղատոմսը՝ օատարացումին վերացումը:

Իսկ կարելի՞ է արդեօք վերացնել օտարացումը գագաթնակէտային վիճակի հասցուցած Կայսրութիւնը: Անշուշտ, կարելի է: 1968-ի ուսանողական պոռթկումները, Պաղեստինի երկու ինթիֆատաները, 1994-ի Զափաթիսթաներուն դիմադրութիւնը ՆԱՖԹԱ-ին հարաւային Մեքսիքոյի մէջ, 1999-ի Սիաթըլի ցոյցերը ընդդէմ Առեւտուրի Համաշխարհային Կազմակերպութեան, Հայաստանի աքթիւիզմը՝ որ նոր շունչ ստացաւ 2008 Մարտ 1-ի դէպքերէն ետք, 2011-ի արաբական աշխարհի յեղափոխութիւնները, Գրաւէ Ուոլ Սթրիթ շարժումը, ինչպէս նաեւ աշխատաւորական բացառացիօրէն ամէնօրեայ ցոյցերն ու գործադուլերը ամբողջ աշխարհի մէջ, դիմադրութեան մը անհրաժեշտութեան գիտակցութիւնն են հասարակական լայն խաւերու մօտ:

Լուծումը աւելի քան դիւրին է, ինչպէս մեր առջեւ կը դնէ Տէյվիտ Քորթըն.

«Մենք կը դիմագրաւենք դիւցազնական ընտրութիւն մը.

«Ժողովուրդի իշխանութիւն կամ ընկերութենական իշխանութիւն:

«կենդանի համայնքներ կամ ընկերութենական գաղութներ:

«ժողովրդավարութիւն կամ ընկերութաբանութիւն,

«Աւելի կեանք բոլորին կամ աւելի դրամ քիչերուն:»[2]

Մարդիկ չէի՞ն արդեօք Փարիզի Քոմիւնը ստեղծողները՝ ուր օտարացումը հասած էր իր նուազագոյն վիճակին...:

[1] Theodor W. Adorno, 'Education after Auschwitz', *Can One Live after Auschwitz?: A Philosophical Reader*, edited by Rolf Tiedemann, translated by Rodney Livingstone and others, Stanford, California: Stanford University Press, 2003, p. 30:

[2] David C. Korten, *When Corporations Rule the World*, Oakland: Berrett-Koehler Publishers, Inc., 2015, p. xi: